ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

4

ԱՊՐԻԼ

ԵՐԵՎԱՆ ◆ 1974

## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱՅԻ ՊՐԵԶԻԴԵՆՏ Ժ. ՊՈՄՊԻԴՈՒԻ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի և Ֆրանսիայի Հանրապետության պրեզիդենտ Ժ. Պոմպիդուի հանդիպման արդյունքները, լիովին հավանություն տվեցին և բարձր գնահատեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի արդյունավետ աշխատանքը սովետա-ֆրանսիական ավանդական բարեկամության հետագա ամրապնդման, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների փոխհարաբերություններում խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման ասպարեզում:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի և Ժ. Պոմպիդուի հանդիպումը հավաստեց բարեկամական հարաբերությունները ու փոխշահավետ համագործակցությունը զարգացնելու Սովետական Միության և Ֆրանսիայի ընտրած կուրսի կենսունակությունը և արդյունավետությունը:

Կարևոր նշանակություն ունի այն փաստը, որ երկու կողմերը ընդգծեցին իրենց վճռականությունը՝ է՛լ ավելի զարգացնելու և խորացնելու սովետա-ֆրանսիական հարաբերությունները:

Հանդիպման արդյունքները խթան են ծառայում երկու երկրների միջև քաղաքական կոնսուլտացիաների, առևտրա-տնտեսական, գիտա-տեխնիկական, կուլտուրական և այլ կապերի հետագա ընդլայնման համար՝ այն փաստաթղթերին լրիվ համապատասխան, որ երկու կողմերը իրենց փոխհարաբերությունների զարգացման հիմքում են դրել, այն է՝ «ՍՍՀՄ-ի ու Ֆրանսիայի համագործակցության սկզբունքները» և կոնսուլտացիաների վերաբերյալ սովետա-ֆրանսիական արձանագրությունը:

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի և Ժ. Պոմպիդուի զրույցների կարևոր

արդյունքը նրանց համաձայնությունն է՝ ուժեղացնելու ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի փոխգործողությունը Եվրոպայում լարվածության թուլացումը կայունացնելու, համաեվրոպական խորհրդակցությունը հաջողությամբ ավարտելու նպատակով: Դրական նշանակություն ունեն Սովետական Միության և Ֆրանսիայի պայմանավորվածությունը ակտիվացնելու կոնսուլտացիաները՝ հօգուտ Մերձավոր Արևելքի կայուն և արդարացի խաղաղության ապահովման, հենվելով իրենց դիրքերի մոտիկության վրա:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը մեծ նշանակություն են տալիս Սովետական Միության և Ֆրանսիայի միջև բարձր մակարդակի սիստեմատիկ կոնտակտները շարունակելու ձեռք բերված պայմանավորվածությանը:

Պիցունդայի հանդիպումը, անկասկած, ավանդ կներդնի երկու ժողովուրդների փոխադարձ վստահության և հարգանքի զգացմունքների ամրապնդման գործում, որոնք այս տարի նշելու են ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի միջև դիվանագիտական հարաբերությունների հաստատման 50-ամյակը:

Սովետական ժողովուրդը խոր գոհունակությամբ ընդունեց ընկեր Լ. Ի. Բրեժնևի և Ֆրանսիայի պրեզիդենտ Ժ. Պոմպիդուի հանդիպման արդյունքները, որովհետև դրանք համոզիչ կերպով վկայում են սովետա-ֆրանսիական համագործակցության հաջող զարգացումը՝ ի բարօրություն երկու երկրների ժողովուրդների, հանուն խաղաղության ու միջազգային անվտանգության ամրապնդման:

---

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՈՒ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՍԽՐԱՆՔԸ

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ԱՐՏԱՍԱՆԱԾ ԱԼՄԱ-ԱԹԱՅՈՒՄ ԽՈՊԱՆԻ ՅՈՒՐԱՑՄԱՆ 20-ԱՄՅԱԿԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ, 1974 Թ. ՄԱՐՏԻ 15-ԻՆ

Հարգելի ընկերնե՛ր:
Թանկագին խոպանցինե՛ր:
Բարեկամնե՛ր:

Ինձ մեծ գոհունակություն է պատճառում այսօր լինել այստեղ, ձեր մեջ, նրանց շրջանում, ովքեր հերկել են խոպանը: Թույլ տվեք մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի և Կենտկոմի քաղբյուրոյի անունից ձեզ և բոլոր խոպանցիներին ի սրտե ողջունել ու շնորհավորել այդ մեծ, կարևոր աշխատանքի սկսման 20-ամյակի առթիվ:

Խոպանի վետերանները լավ են հիշում այդ ժամանակը: Տափաստանային թափանցող քամին, բուքերն ու սառնամանիքները, ձյան վրա տարածված վրանները, դաշտերում բացված առաջին ակոսները և նոր ավանների առաջին փողոցները, աշխատանքով առլեցուն օրերը և հաճախ անքուն գիշերները: Երկու տասնյակ տարի է անցել այն ժամանակներից... Բայց անկարելի է մոռանալ, թե մենք ինչպես էինք նվաճում խոպան հողերի առաջին հեկտարները և խոպանի հացահատիկի առաջին տոննաները: Անկարելի է մոռանալ այն, ինչի մեջ հոգիդ ես դրել:

Մեր սոցիալիստական հայրենիքի պատմությունը կերտվել է և կերտվում է աշխատանքի մարդկանց կողմից: Նա կերտվել է ու կերտվում է նրանց կողմից, ովքեր կառուցում էին Դնեպրոգէսը և Մագնիտկան, գցում էին Թուրքսիբը և Կարակումի ջրանցքը, ովքեր ծաղկուն օազիս դարձրին Սովյալ տափաստանը Ուզբեկստանում, ովքեր այժմ բարձրացնում են Կամազի մասնաշենքերը և արդյունահանում Տյումենի նավթը: Հերոսական մեծագործությունների փառահեղ շարքում արժանի տեղ է գրավում խոպանը նվաճողների աշխատանքային սխրանքը:

Ղազախստանում, Ալթայի և Կրասնոյարսկի երկրամասերում, Նովոսիբիրսկի և Օմսկի մարզերում, Պովոլժիեում, Ուրալում և Հեռավոր Արևելքում, երկրի մյուս շրջաններում խոպան ու խամ հողերի յուրացումը սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքի տարեգրության ամենապայծառ էջերից մեկն է: Դարեր ի վեր ամայի հողերում աճեցին հարյուրավոր սովխոզներ, կառուցվեցին արդյունաբերական ձեռնարկություններ, կազմակերպվեցին ժամանակակից գիտական կենտրոններ: Դա ոչ միայն թույլ տվեց հացահատիկի նոր, խոշոր բազա ստեղծել երկրի արևելքում, այլև արմատապես փոխեց հսկայական շրջանների էկոնոմիկան, կուլտուրան, նրանց ամբողջ դեմքը:

Ռուսաց լեզվի մեջ, սովետական երկրի մյուս ժողովուրդների լեզուների մեջ ամուր կերպով մտավ մի նոր բառ՝ «խոպանցի»: Իսկ դա նշանակում է, թանկագին ընկեր խոպանցիներ, որ ձեր աշխատանքը հավերժացված է ժողովրդի հիշողության մեջ: Չկա և, թերևս, չի կարող լինել ավելի բարձր պարգև:

Պատմական իրադարձությունների, քաղաքական խոշոր վճիռների իս-

կական նշանակությունը, որպես կանոն, երևան է գալիս ոչ թե միանգամից, ոչ թե թարմ հետքերով, այլ ավելի ուշ, երբ կարելի է մտադրությունները համադրել ստացված արդյունքների հետ, գնահատել այդ իրադարձությունների և վճիռների փաստական ներգործությունը կյանքի այս կամ այն կողմի վրա: Պատմական հեռավորությունը, քիչ նշմարելի դարձնելով դետալները, մանրամասնությունները, դրանով իսկ թույլ է տալիս ավելի լավ, ավելի ցայտուն կերպով տեսնել գլխավորն ու հիմնականը: Իսկ գլխավորը, ընկերներ, եթե նկատի ունենանք խոպանի յուրացումը, այն է, որ կուսակցությունը առաջ քաշեց կարևոր, հրատապ խնդիր և որ կոմունիստները, մեր ժողովուրդը հաջողությամբ լուծեցին այդ խնդիրը:

Մտովի տեղափոխվենք 50-ական թվականների սկզբներին տիրող իրադրությունը: Հացի վիճակը այն ժամանակ լուրջ անհանգստություն էր առաջացնում: Հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից 9 ցենտներից չէր անցնում: 1953 թվականին մթերվեց 31,1 միլիոն տոննա հացահատիկ, իսկ բնակչության պարենային մատակարարման և մյուս պետական կարիքների համար ծախսվեց 32,4 միլիոն տոննա: Հարկ եղավ մասնակիորեն օգտագործել պետական ռեզերվները:

Դժվարությունները հաղթահարելու համար հարկավոր էին արմատական, ընդ որում, բավականին շտապ միջոցներ: Այդ պայմաններում կուսակցությունը, չնվազեցնելով ուշադրությունը բոլոր գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման նկատմամբ, առաջին պլանի վրա դրեց ցանքատարածությունների նշանակալի և արագ ընդլայնման խնդիրը:

Այդ պրոբլեմը ինքնըստինքյան նոր չէ: Վլադիմիր Իլյիչ Լենինը բազմիցս ընդգծել է ամայի հողերի յուրացման անհրաժեշտությունն ու հնարավորությունը: Հայտնի է, որ նախահեղափոխական Ռուսաստանում հսկայական տերիտորիաներ, հատկապես ծայրամասերում, մնում էին անօգտագործելի: Բուրժուական հետազոտողները պնդում էին, թե բնական առանձնահատկությունների բերումով դրանք չեն կարող օգտագործվել: Լենինը հերքեց այդ պնդումները: Նա նշում էր, որ այդ հողերը պիտանի չեն «...ոչ այնքան ԲՆԱԿԱՆ հատկությունների բերումով..., որքան տնտեսության ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ հատկությունների հետևանքով..., որոնք տեխնիկան դատապարտում են անշարժության, բնակչությանը՝ իրավազրկության, ծեծկվածության, տգիտության, անզորության»:

Հոկտեմբերյան հեղափոխությունը արմատապես փոխեց գյուղատնտեսության «հասարակական հատկությունները» և, դրանով իսկ, պայմաններ ստեղծեց նոր հողերի օգտագործման համար: Մինչև 1940 թվականը ցանքատարածությունը 1913 թվականի համեմատությամբ աճեց 32,4 միլիոն հեկտարով: ՍՍՀՄ-ի հողային պաշարի յուրացման հաջորդ էտապը սկսվեց 50-ական թվականների կեսերին: Հենց այդ տարիներին խոպան հողերից հացահատիկ ստանալու պահանջմունքը միացավ այդ պատմական խնդիրը կատարելու ռեալ հնարավորության հետ:

1953 թվականի վերջերին, 1954 թվականի սկզբներին Ռուսաստանի Ֆեդերացիայի երկրամասերում ու մարզերում, Ղազախստանում, մյուս հանրապետություններում անցկացված խորհրդակցությունները ցույց տվեցին, որ կոմունիստները հավանություն են տալիս և պաշտպանում խոպան ու խամ հողերի յուրացման կուսակցության գիծը: Ընդ որում, ուշադրություն էր հրավիրվում ոչ միայն ժամանակ շահելու, նյութական ծախսումների արագ փոխհատուցման վրա, այլև ընդգծվում էր նոր հողերի համակողմանի տնտեսական յուրացման կարևորությունը:

1954 թվականին, ինչպես հիշում եք, ՍՄԿԿ Կենտկոմի փետրվար-մարտյան պլենումը ընդհանրացրեց հանրապետությունների, երկրամասերի, մարզերի առաջարկությունները և որոշում ընդունեց «Երկրում հացահատիկի արտադրության հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին»: Թեև, ինչպես հայտնի է, խոպանում աշխատանքը սկսվել էր դեռ դրանից առաջ, պլենումի որոշումից հետո խոպան ու խամ հողերի յուրացման



համար մարտը ծավալվեց լրիվ թափով: Կուսակցությունը շահեց այդ մարտը: Նա այն շահեց, որովհետև սովետական մարդիկ Կենտրոնական կոմիտեի կոչը ընդունեցին որպես իրենց հարազատ, կենսական գործը:

Ընկերնե՛ր, ես պատահաբար չօգտագործեցի «մարտ» բառը: Խոպանի առաջին նվաճողներից, ինչպես որ ռազմաճակատայիններից, պահանջվում էին թե՛ արիություն, թե՛ ինքնազոհաբերում, թե՛ սխրանքի պատրաստակամություն, թե՛ անսահման նվիրվածություն կուսակցությանը, հայրենիքին: Խոպանի յուրացման առաջին տարիները կտրուկ շուռ տվեցին հարյուր հազարավոր մարդկանց՝ կոմունիստների և անկուսակցականների, տարեց ու երիտասարդ մարդկանց, բոլոր նրանց ճակատագիրը, ովքեր թողեցին բնակահարմար վայրերը, հրաժարվեցին քաղաքային հարմարություններից, հրաժեշտ տվեցին հարազատներին ու մերձավորներին, որպեսզի երբևիցե չհերկված հողին ստիպեն հաց տալ: Եվ նրանք վճռեցին գործի հաջողությունը:

Այստեղ՝ այս դահլիճում, շատ կան ինձ ծանոթ դեմքեր: Մենք հանդիպել ենք դաշտերում ու կառույցներում, վրաններում և դաշտային արհեստանոցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում, կուսակցական ակտիվներում և ժողովներում: Քսան տարի առաջ, 1954 թվականի փետրվարին, կուսակցությունը ինչպես գիտեք, ընկերներ, ինձ աշխատանքի ուղարկեց Ղազախստան: Եվ ես հպարտանում եմ, որ ինձ վստահվեց այդպիսի մեծ գործ: Ջերմությամբ եմ վերհիշում անմոռանալի օրերը՝ շատ դժվարին, բայց միաժամանակ, հիրավի, երջանիկ օրերը:

Լինում էին թե՛ նորաբնակների աղմկալի հանդիպումներ, թե՛ նոր երգեր, որոնք ծնվում էին կյանքի բուն եռուզեռի մեջ, թե՛ սխրանքի ռոմանտիկա և թե՛ ռահվիրաների իսկական մոլեռանդություն: Առկա էր վստահության հոյակապ զգացումը, որն առաջանում է, երբ հաղթահարվում, նահանջում են դժվարությունները: Իսկ այդպիսիք հաղթահարել քիչ չվիճակվեց: Հաշված ամիսների ընթացքում հարկավոր էր ընդունել հարյուր հազարավոր նորաբնակների, նրանց ապահովել օթևանով, կազմակերպել կենցաղը, ծավալել սովխոզների, էլևատորների, ճանապարհների, կամուրջների շինարարությունը: Սկզբում շատ բան գլուխ չէր գալիս, առաջանում էին թերացումներ և թյուրիմացություններ, լինում էին նաև սխալներ:

Կարող են հարցնել՝ իսկ ի՞նչ կարիք կա ուրախ տոնի օրը վերհիշել դըժվարությունները, մանավանդ որ դրանք վաղուց անցյալ են դարձել: Այդպիսի տրամաբանությանը չի կարելի համաձայնել: Եթե մենք լռության մատնենք դժվարությունները, փոքրացնենք դրանք, ապա դրանով իսկ, կամա թե ակամա, կնսեմացնենք խոպանցիների սխրագործության նշանակությունը: Իսկ դա սխրագործություն էր բառիս ամենանաճշգրիտ իմաստով: Լավ է գրել խոպանի վետերաններից մեկը՝ Ֆյոդոր Տրոֆիմովիչ Մորգունը. «Համառորեն դիմադրում էր հողի դարավոր պինդ զանգվածը... Բայց մարդկային պնդությունը հողի պնդությունից ամուր դուրս եկավ»: Իհարկե, պատահում էին նաև վախկոտներ, նրանք դասալքում էին, փախչում դժվարություններից: Ի՞նչ կարելի է ասել այդպիսիների մասին, թեև նրանք փոքրաթիվ էին: Խոպանը մաքրվում էր թուլակամներից, և գործը ավելի լավ էր գնում:

Արդեն երեք տարի անց խոպան ու խամ հողերի յուրացման հիմնական շրջաններում հերկվեց ավելի քան 32 միլիոն հեկտար: Երկրում հացահատիկի համախառն բերքը 1953 թվականի 32,5 միլիոն տոննայից 1956 թվականին հասավ 125 միլիոն տոննայի, իսկ հացահատիկի մթերումները՝ 31 միլիոն տոննայից 54 միլիոն տոննայի:

Այդպիսի տեմպերը հնարավոր եղան միայն այն բանի շնորհիվ, որ խոպանի հերկումը, հիրավի, համաժողովրդական գործ դարձավ: Ինչպես միշտ, այստեղ էլ վճռական խոսքը պատկանում էր բանվոր դասակարգին: Նա խոպանցիների շարքերին միաձուլեց իր լավագույն կադրերը, մտցրեց կազմակերպվածություն և պրոլետարական կարգապահություն: Երկրի արդյունաբերական կենտրոններում, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, արհմիությունների և կոմերիտմիության ակտիվ մասնակցությամբ,

հայրենասիրական շարժում ծավալվեց՝ նոր հողերի նվաճման համար անհրաժեշտ տեխնիկան ժամկետից շուտ թողարկելու նպատակով: Ավանդական հողագործական շրջանները խոպան էին ուղարկում փորձված հողագործների և մեխանիզատորների: Կուսակցության կոչին արձագանքեցին մտավորականության ներկայացուցիչները, հսկայական դեր կատարեցին սովետական բանակի զորացրված ռազմիկները, բուհերի և տեխնիկումների ուսանողները, պրոֆտեխնիկական ուսումնարանների սովորողները: Խոպան հողերի յուրացման միայն առաջին տարիներին այնտեղ եկան մոտավորապես մեկ միլիոն կամավորներ:

Դժվարին գործին մասնակցելու համար իր լավագույն ներկայացուցիչներն ուղարկեց կոմերիտմիությունը: Կոմերիտական ուղեգրերով, սրտի թելադրանքով խոպան հողերի յուրացմանը մասնակցելու եկան ավելի քան 500 հազար պատանիներ և աղջիկներ: Խոպանի յուրացման գործում մուծած մեծ ավանդի համար լենինյան կոմերիտմիությունը պարգևատրվեց հայրենիքի բարձրագույն պարգևով՝ Լենինի շքանշանով:

Խոպանի սովխոզների հետագա զարգացման գործում, հիրավի, հոյակապ էջ գրեց սովետական ուսանողությունը: Առաջին տարին չէ, որ դաշտերում և շինարարական ջոկատներում աշխատում են բազմահազար ուսանողներ, և աշխատում են խղճի մտոք: Եվ մեզ համար, ընկերներ, կարևոր է ոչ միայն այն, ինչ նրանք տալիս են խոպանին, այլև այն, ինչը խոպանն է տալիս այդ պատանիներին և աղջիկներին: Նրանք այստեղ անցնում են աշխատանքային և ֆիզիկական կոփվածության դպրոց, հաղորդակից են լինում իսկական պետական գործին, կատարում քաղաքական և կուլտուրական մեծ աշխատանք:

Չէ՞ որ դա, ընկերներ, նրանց կմնա ամբողջ կյանքում:

Խոպանի յուրացմանը ակտիվորեն մասնակցեցին բոլոր միութենական հանրապետությունները, մեր երկրի բոլոր մարզերը: Խոպանը դարձավ ինտերնացիոնալ դաստիարակության իսկական դպրոց, որի մեջ մեր երկրի բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները միավորեցին հողագործների իմաստուն փորձը, աշխատանքային հմտությունները, հաղթանակելու վճռականությունը: Հենց խոպանի շատ սովխոզների անունները՝ «Մոսկովյան», «Լենինգրադյան», «Կիևյան», «Մինսկյան», «Դնեպրոպետրովսկյան», «Գորկիյան», «Խարկովյան», իբրև ծննդականներ վկայում են այն մասին, թե ովքեր են դրանք ստեղծել: Նկամենայի առանձնապես նշել Մոսկվայի, Լենինգրադի, Ուկրաինայի, Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունների ավանդը: Միայն ղազախական հողում նրանք օգնեցին ստեղծելու հարյուրավոր նոր սովխոզներ:

Ընկերնե՛ր, այս օրերին Մոսկվայի քաղաքային կուսակցական կազմակերպությունը անցկացնում է իր կուսակցական կոնֆերանսը: Հուսով եմ, որ դուք կպաշտպանեք իմ առաջարկությունը՝ մեր հայրենիքի մայրաքաղաքի կոմունիստներին հաղորդելու աշխատանքային մեծ հաջողությունների բարեմաղթություններ և նրանց շնորհակալություն հայտնելու խոպան հողերի յուրացման գործում մուծած անգնահատելի ավանդի համար:

Նոր հողերում բնակվելու են ընտելանում նոր մարդիկ: Բայց երբ խոսում են խոպանը նվաճողների մասին, ապա նկատի ունեն ոչ միայն նրանց, ովքեր այդ շրջաններն են եկել մեր երկրի բոլոր կողմերից: Մենք խորին հարգանքի զգացումով ենք խոսում նաև Ղազախստանի, Սիբիրի, Ուրալի, Պովոլժիեի, հնադարյան տափաստանների հիմնական բնակիչների, հյուրընկալների ու հնաբնակների անձնվեր աշխատանքի մասին: Նրանք սրտաբաց ու հյուրընկալորեն ընդունեցին նորաբնակներին, նրանց հետ աշխատեցին ձեռք-ձեռքի տված, իրենց բոլոր ուժերը նվիրելով ընդհանուր նպատակին՝ երկրի նոր բազմահարուստ շտեմարանի ստեղծմանը:

Խոպանի յուրացումը հանդիսացավ մեր երկրում բնակվող ժողովուրդների բարեկամության ու փոխօգնության լենինյան քաղաքականության տեսանելի մարմնավորումը, այն քաղաքականության, որը կուսակցությունը հետևո-



ղականորեն վարում է ահա արդեն ավելի քան կես դար: Հայրենիքը ըստ արժանվույն գնահատեց յուրաքանչյուր սովետական հանրապետության ավանդը այդ քաղաքականության իրականացման գործում. մեր մեծ Միության 50-ամյակի տարում նրանք բոլորը պարգևատրվեցին Ժողովուրդների բարեկամության շքանշանով: Ինձ պատիվ վիճակվեց բարձր պարգևը հանձնել Սովետական Ղազախստանին: Եվ այսօր ուզում եմ մեկ անգամ ևս ասել, որ ղազախների ու երկրի գրեթե բոլոր մյուս ազգերի ներկայացուցիչների ընդհանուր ջանքերով հերկված խոպանը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հոյակապ օրինակ է:

Նշելով խոպանի փառապանծ հոբելյանը, մենք պատշաճն ենք հատուցում մեր երկրի բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, սովետական մտավորականությանը, բոլոր նրանց, ովքեր իրենց ավանդն են մուծել խոպանի հողերի յուրացման գործում: Մենք պատշաճն ենք հատուցում հերոսական էպոպեայի բոլոր մասնակիցներին՝ նրանց, ովքեր հերկել են հողը, ցանել և հավաքել են հացահատիկը, նրանց, ովքեր կառուցել են տներ, հացահատիկի պահեստներ, արհեստանոցներ, կցել են էլեկտրահաղորդման գծեր, նրանց, ովքեր ուսուցանել ու դաստիարակել են երեխաներին, հոգ տարել խոպանցիների առողջության մասին: Խորին, համաժողովրդական շնորհակալություն ձեզ բոլորիդ:

Ընկերնե՛ր, ամեն անգամ, երբ մեր երկրի առջև, մեր ժողովրդի առջև ծառացել են նոր պատասխանատու խնդիրներ, կոմունիստները առջևից են գնացել: Այսպես էր նաև խոպանում: Կուսակցության կոչը շարժման մեջ դրեց տարբեր տարիքի, տարբեր ազգության, կրթության, որակավորման, տարբեր կենսափորձի տեր մարդկանց հսկայական մասսաների: Նրանց միավորելու, նրանց աշխատանքը կազմակերպելու, դեպի հիմնական նպատակը ուղղելու, նրանց հարյուրավոր համերաշխ և մարտունակ կոլեկտիվների մեջ համախմբելու համար հարկավոր էր գտնել նաև կուսակցական, կազմակերպչական և գաղափարական աշխատանքի համապատասխան ձևեր: Եվ դրանք գըտնըվեցին:

Այն տարիների բարդ պայմաններում առանձնահատուկ պարզորոշությամբ դրսևորվեցին մեր կուսակցության համար բնորոշ գծերը՝ անխզելի կապը մասսաների հետ, մշտապես նրանց ձայնը լսելու, նրանցից սովորելու, առաջավոր փորձը յուրացնելու և պաշտպանելու, ամեն տեսակ խոչընդոտների դեմ անհաշտ պայքար մղելու, թերությունները համարձակորեն, բացեիբաց քննադատելու կարողությունը: Խոպանի նվաճման տարիներին կուսակցության ամբողջ գործունեությունը հսկայական, իր արդյունքներով ակնառու նորարարական աշխատանքի օրինակ է:

Խոպանի հոբելյանի օրը տեղին և արդարացի կլինի պատշաճը հատուցել խոպան հողերի մարզերի ու շրջանների կուսակցության մարզկոմներին ու շրջկոմներին, սովխոզների և կոլտնտեսությունների սկզբնական կուսակցական կազմակերպություններին, բոլոր այն կոմունիստներին, ովքեր անփոփոխ կերպով գտնվել են խոպանի մեծ հացի համար մղվող պայքարի առաջնագծում:

Ընկերնե՛ր, այս կամ այն տնտեսական միջոցառման արդյունքները օբյեկտիվորեն, գործարար կերպով գնահատելու համար պետք է դիմել թվերին: Կարծում եմ, դա օգտակար կլինի անել նաև այսօր: Դուք գիտեք, որ տնտեսական շրջանառության մեջ ընդամենը մտցվել է մոտավորապես 42 միլիոն հեկտար հող: 20 տարում խոպան հողերը տվել են մոտավորապես 31 միլիարդ փութ հացահատիկ և ուրիշ շատ գյուղատնտեսական մթերքներ: Հատկապես կարևոր է, որ այստեղ մենք ստանում ենք հիմնականում ապրանքային հացահատիկ: Բավական է ասել, որ նոր յուրացված հողերը այժմ տալիս են երկրում մթերվող հացահատիկի 27 տոկոսը:

Անցած տարիներին ամրապնդվեցին, առնականացան խոպանի բոլոր շրջանների կոլտնտեսություններն ու սովխոզները: Դա բնականաբար վերաբերում է նաև Ղազախստանին: Վերջին երեք տարում հանրապետության կոլ-

տնտեսությունները ու սովխոզները պետությանն են վաճառել 2 միլիարդ 831 միլիոն փութ հացահատիկ: Հիշեցնեմ, որ խոպան հողերի յուրացմանը նախորդած երեք տարում հանրապետությունում հացահատիկի գնումները կազմել են միայն 321 միլիոն փութ: Տարբերությունը, ինչպես տեսնում եք, խիստ էական է: Նոր հողերի յուրացումը արագացրեց այդ շրջանների էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր ճյուղերի վերելքը: Օրինակ, Ղազախստանում վերջին 20 տարում արդյունաբերական արտադրության ծավալը ավելացել է 7,2 անգամ: Խոպանը այժմ նշանակում է տասնյակ նոր քաղաքներ և հարյուրավոր բնակավայրեր, որոնցում ստեղծված են միլիոնավոր մարդկանց կենցաղի և ապրելու բոլոր ժամանակակից պայմանները:

Այնպես որ, ընկերներ, այժմյան խոպանը ոչ միայն հաց է, ոչ միայն կաթ և միս է, դա ժամանակակից սոցիալիստական ապրելակերպն է, որն արմատավորվել է առաջներում ամայի ընդարձակ տերիտորիաներում: Եվ, իհարկե, դա նախ և առաջ այստեղ աճած ու դաստիարակված հրաշալի մարդիկ են:

Խոպանը շատերին է կյանքի ուղեգիր տվել: Տասնյակ և հարյուրավոր տրակտորիստներ, կոմբայնավարներ, շինարարներ դարձել են սովխոզների դիրեկտորներ, գլխավոր մասնագետներ, կուսակցական և սովետական աշխատողներ: Բայց երբ մենք ասում ենք, որ խոպանը բարձրացրել է մարդկանց, մենք նրանց աճը չափում ենք ո՛չ միայն պաշտոնացուցակով: Կա աճի նաև մի այլ ձև, որը նույնքան մարդկայնորեն նշանակալի և ազնիվ ձև է: Ես նկատի ունեմ հոգևոր կոփվածքը, վարպետության բարձրացումը, բարոյական առնականացումը:

Խոպանը, պատկերավոր ասած, տվել է այդպիսի մարդկանց բազմահարուստ բերք՝ Նիկոլայ Սեմյոնովը Ղազախստանից, Վասիլի Զադոյնին Օրենբուրգի մարզից, Եվգենիա Կոբեծիկովան Կրասնոյարսկի երկրամասից, Վասիլի Ուստյուժանինը Նովոսիբիրսկի մարզից, Ալեքսանդր Սոկոլովը և Վասիլի Ռուբանը Վոլգոգրադի մարզից, Վասիլի Գոլովացկին Սարատովի մարզից, Պյոտր Նուժնովը Ռոստովի մարզից, Սեմյոն Պյատնիցան, Վարվառա Բախոլդինան, Ֆյոդոր Չաբանովը Ալթայից, Պյոտր Բաշտովոյը Ստավրոպոլի երկրամասից, Սաֆա Խստամգալինը Բաշկիրիայից, Պյոտր Զարոդիշը և Իվան Կոբզարը Օմսկի մարզից և շատ ու շատ ուրիշներ:

Կարելի է հիշատակել խոպանի էլի բազմաթիվ հրաշալի մարդկանց. նրանք հերոսական խառնվածքի տեր մարդիկ են, մարդիկ իսկական խոպանցու բնավորությամբ: Ինձ թույլ կտամ ասելու հենց միայն երեք ընկերների մասին, որոնք մարմնավորում են այդ բնավորությունը:

Առաջինների թվում խոպան եկավ ուկրաինացի կոմերիտական Միխայիլ Դովժիկը և անմիջապես գլխավորեց տրակտորային բրիգադը, սկսեց աշխատել հարվածային կերպով: Նրա աշխատանքային ուղին նշանավորված է բազմաթիվ հիանալի նախաձեռնություններով, որոնք գտնում էին և գտնում են հազարավոր հետևորդներ: Նա հիմա էլ բրիգադավարի պաշտոն է զբաղեցնում: Բայց ինչպես որ նրա շատ հասակակիցներ, քսան տարում Միխայիլ Դովժիկը դարձել է պետական լայն մտահորիզոն ունեցող մարդ, իր գործի վարպետը, հմուտ դաստիարակ ու կազմակերպիչ: Միխայիլ Եգորովիչ Դովժիկը ընտրվել է Ղազախստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի անդամ: Հայրենիքը նրան արժանացրել է սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:

Նոր հողերի յուրացման արդեն առաջին աշնանը լայնորեն հայտնի դարձավ տրակտորիստ և կոմբայնավար Ժանսուլտան Դեսենի անունը: Լինելով ամենափորձառու մեխանիզատորներից մեկը, խոպանի վետերան, սոցիալիստական աշխատանքի հերոս, նա այսօր էլ գտնվում է իր պատվավոր պոստում՝ կոմբայնի ղեկանիվի մոտ:

Չեմ կարող չասել խոպանի նաև մի հայրենասերի՝ Իվան Իվանովիչ Իվանովի մասին: Նա ծնվել է Լենինգրադում: Պատերազմի ժամանակ լինելով 19-ամյա պատանի, պաշտպանում էր հայրենի քաղաքը: Ծանր վիրավորվեց, կորցրեց երկու ոտքը: Երկարատև բուժումից հետո եկավ Ղազախստան, հաստատվեց այդ երկրամասին և արդեն ավելի քան 20 տարի է, ինչ աշխատում է որպես մեխանիզատոր և գերազանց է աշխատում: Նրա մարտական պարգևներին ավելացան խոպան հողերում կատարած աշխատանքային սխրանքների համար տրված պարգևները՝ Լենինի երկու շքանշան և Հերոսի ոսկե աստղը:

Հայրենիքը արժանավայել գնահատեց շատ խոպանցիների անձնվեր աշխատանքը: Սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման են արժանացել 272 խոպանցիներ: Շքանշաններով ու մեդալներով պարգևատրվել է 96.965 մարդ: Խոպանի նվաճման գործում սովետական մարդկանց մասսայական ակտիվ մասնակցության մասին է վկայում այն փաստը, որ «Խոպան հողերի յուրացման համար» մեդալ է ստացել 1 միլիոն 340 հազար մարդ:

Փա՜ռք ու պատիվ սովետական երկրի անվանի մարդկանց, որոնց դաստիարակել ու բարձրացրել է լենինյան կուսակցությունը:

Ինչպես դուք արդեն գիտեք, արտադրական մեծ հաջողությունների համար և խոպան ու խամ հողերի յուրացման 20-ամյակի կապակցությամբ խոպանի 30 սովխոզներ, կոլտնտեսություններ և գիտական հիմնարկներ պարգևատրվել են շքանշաններով:

Թույլ տվեք ի սրտե շնորհավորել պարգևատրվածներին և նրանց մաղթել նոր հաջողություններ:

Ընկերնե՛ր: Մենք լավ ավանդույթ ունենք՝ յուրաքանչյուր հոբելյան դիտել որպես առիթ այն բանի համար, որ, գնահատելով արվածը, խորհենք այն խնդիրների մասին, որոնք պետք է լուծվեն առաջիկայում: Եվ միանգամայն հասկանալի է, որ խոպանի 20-րդ տարեդարձը լավ առիթ է ամբողջ գյուղատնտեսության վիճակի ու հեռանկարների մասին լուրջ խոսակցության համար:

Եթե դիմելու լինենք մեր կուսակցության պատմությանը, ապա մենք կտեսնենք, որ ագրարային քաղաքականությունը միշտ գտնվել է նրա ուշադրության կենտրոնում: Եվ դա բնական է: Խոսքը վերաբերում է կուսակցության քաղաքական կուրսի կարևոր բաղկացուցիչ մասին, այն կուրսի, որ ապահովում է բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը և ուղղված է պրոլետարական հեղափոխության հաղթանակի, սոցիալիստական վերափոխումների իրականացման և նոր հասարակարգի կառուցման նպատակին:

Իհարկե, պատմության յուրաքանչյուր փուլ առաջ է քաշել իր յուրահատուկ խնդիրները, որոնք որոշվում են սոցիալական և քաղաքական իրադրության առանձնահատկություններով, երկրի պահանջմունքներով և հնարավորություններով: Այդպիսի խնդիրներ է առաջ քաշել նաև արդի փուլը: Սովետական հասարակության՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջան թևակոխելը հատկապես ակնհայտ դարձրեց անհամապատասխանությունը սոցիալիստական արդյունաբերության, կուլտուրայի, գիտության ու տեխնիկայի բուռն աճի և գյուղատնտեսության ետ մնալու միջև: Երկար ժամանակ՝ մասամբ օբյեկտիվ պատճառներով, մասամբ էլ անցյալում թույլ տրված սխալների պատճառով, գյուղում կուտակվել էին չլուծված շատ պրոբլեմներ: Դրանք արգելակում էին գյուղատնտեսական արտադրության առաջադիմությունը, կասեցնում ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության զարգացումը:

Այս ամենը կուսակցության և նրա Կենտրոնական կոմիտեի վրա հատուկ պատասխանատվություն էր դնում, մեզանից պահանջում մշակել այնպիսի ագրարային քաղաքականություն, որն ապահովեր գյուղատնտեսության հաստատուն վերելքը, գյուղատնտեսական աշխատանքի բնույթի վերափոխումը, գյուղի բուն կերպարանքի վերափոխումը: Սկսած ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից, մենք ընդհուպ զբաղվեցինք այդպիսի քաղաքականության մշակմամբ, քայլ առ քայլ լուծելով նրա հանգուցային հարցերը՝ արտադրության աճը խթանող տնտեսական պայմանների ստեղծումը, ներառյալ մթերումների նոր կարգը, կապիտալ ներդրումների խիստ ավելացումը, գյուղատնտեսության մեքենայացման, քիմիացման և հողերի մելիորացման

երկարաժամկետ կոմպլեքսային ծրագրի իրականացումը, գյուղատնտեսական գիտության զարգացումը, կազմակերպման ու կառավարման ձևերի կատարելագործումը: Այդ քաղաքականությունը, որը զարգացվեց և վավերացվեց Կենտկոմի մի քանի պլենումներում, կուսակցության XXIII և XXIV համագումարներում, դարձավ միլիոնավոր սովետական մարդկանց գործունեության հիմքը:

Մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ կուսակցության և ժողովրդի նպատակասլաց աշխատանքը տալիս է իր արդյունքները: Սիստեմատիկաբար աճում են հողագործական և անասնապահական մթերքների արտադրությունն ու գնումները: Բարձրանում են աշխատանքի արտադրողականությունը և գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը: Ավելանում են կոլտնտեսականների ու սովխոզների աշխատողների եկամուտները: Բարելավվում են գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը և սոցիալական ապահովությունը:

Վերջին տարիների արդյունքները պարզ կերպով ցույց են տալիս, որ թեև մենք դեռ կախում ունենք բնությունից, բայց արդեն ոչ այնպես, ինչպես 10 կամ 15 տարի առաջ: Նախանցյալ տարի կլիմայական տեսակետից ամենադաժան տարում մեզ հաջողվեց հավաքել այնպիսի բերք, որը գերազանցում էր նախորդ հնգամյակի հացահատիկի ամենամյա միջին բերքը: Անցյալ տարի եղանակն ավելի լավ էր: Սակայն Ուրալում, Սիբիրում և երկրի մի քանի այլ շրջաններում ստեղծվեցին կլիմայական դժվարին պայմաններ: Բայց և այնպես, ինչպես հայտնի է, հավաքվեց ռեկորդային բերք, որը երկրի ամբողջ պատմության մեջ ամենաբարձր բերքն է:

Իհարկե, մենք բնավ էլ չենք հասել այն բանին, ինչին կկամենայինք: Հասարակության դեռևս ոչ բոլոր պահանջմունքներն են լրիվ չափով բավարարվում: Բայց սկսվել է բեկում, այն էլ՝ արմատական բեկում: Դա, ընկերնե՛ր, վերջին ժամանակամիջոցում կուսակցության և ժողովրդի գործունեության գլխավոր արդյունքներից մեկն է, մեր կարևորագույն նվաճումներից մեկը:

Գոհունակությամբ նշելով կատարված աշխատանքի արդյունքները, մենք, ընկերներ, դրա հետ մեկտեղ, պետք է ելնենք այն բանից, որ մեր առջև կանգնած են ոչ պակաս կարևոր խնդիրներ՝ համեմատած այն խնդիրների հետ, որոնք մենք արդեն լուծել ենք:

Բավական է ասել միայն մի խնդրի մասին, որը կանգնած է եղել, կանգնած է և ակներևաբար դեռ երկար կանգնած կլինի: Դա յուրաքանչյուր հեկտարի բերքատվության բարձրացումն է: Եթե անկեղծորեն ասելու լինենք, ապա շատ տնտեսություններում և ես կասեի նույնիսկ շրջաններում, մենք դեռևս ցածր բերք ենք ստանում: Իսկ չէ՞ որ յուրաքանչյուր հեկտարի բերքատվության բարձրացումը նշանակում է հացահատիկի բարձր համախառն բերք, գյուղատնտեսական մթերքների գնումների աճ, ուրեմն և՝ ժողովրդի կենսամակարդակի հետագա բարձրացում: Մենք բերքատվության բարձրացման հարցերը կապում ենք քիմիացման, հողերի մելիորացիայի իրականացման, ագրոտեխնիկական աշխատանքների ամբողջ կոմպլեքսի լուծման հետ:

Ուզում եմ այդ կապակցությամբ մեկ անգամ ևս անդրադառնալ արդի փուլում մեր կուսակցության ագրարային քաղաքականության գլխավոր ուղղություններին:

Դրանցից մեկը տնտեսական հարաբերությունների այնպիսի սիստեմի, այնպիսի պայմանների ստեղծումն ու կատարելագործումն է, որոնք ապահովեին գյուղատնտեսության աշխատողների նյութական շահագրգռվածությունը արտադրության բարձրացման ասպարեզում, կոլտնտեսությունների և սովխոզների հետագա տնտեսական ամրապնդումը: ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի պատմական նշանակությունը հենց այն է, որ նա դրեց այդ խնդրի լուծման հիմքը:

Տարիներ առաջ էլ շատերը հասկանում էին, որ գյուղատնտեսության աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացումը կօգնի ար-



տադրության աճին: Բայց այդ հարցը երկար ժամանակ չէր լուծվում: Ստեղծվել էր մի տեսակ ներփակ շրջան՝ արտադրությունը բավարար տեմպերով չէր աճում, քանի որ բավական միջոցներ չէին հատկացվում նյութական խթանմանը, իսկ միջոցները չէին բավականացնում, որովհետև դանդաղ էր աճում արտադրությունը: Այդ ներփակ շրջանից ելք գտնելու համար հարկավոր էր վճռականորեն փոխել ստեղծված պրակտիկան, և Կենտրոնական կոմիտեն արեց այդ: Ժամանակը ցույց տվեց, թե որքան տեղին և ճիշտ էին այն ժամանակ ընդունված որոշումները:

Դրանց էությունը գնումների՝ մի շարք տարիների համար հաստատուն պլանների սահմանումն էր և գյուղատնտեսական մթերքների գերպլանային վաճառքի խթանումը գնման գների բարձրացման միջոցով: Այդ և ուրիշ միջոցառումներ ամրապնդեցին կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական դրությունը և պայմաններ ստեղծեցին արտադրության աճի ու աշխատանքի վարձատրության բարձրացման համար:

Անցած տարիների փորձը լիովին հաստատեց տնտեսական լծակների արդյունավետությունը, հատկապես, երբ դրանք խելացիորեն զուգորդվում են բարոյական խթանների հետ: Հարկավոր է այսուհետև ևս դրանք կատարելագործել, կողմնորոշվելով դեպի առանձին աշխատողների ու ամբողջ կոլեկտիվների վարձատրության և նրանց գործունեության վերջնական արդյունքների միջև ավելի ու ավելի ուղղակի կախումը: Միայն այդ ճանապարհով կարելի է հասնել հողի և տեխնիկայի արդյունավետ օգտագործման, աշխատանքի արտադրողականության առավել արագ աճի:

Այդ բնագավառում արվում են ոչ քիչ թվով նոր առաջարկություններ, կիրառվում հետաքրքրական նախաձեռնություններ, որոնք լուրջ ուսումնասիրության են արժանի: Կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսական բազայի ամրապնդման, գյուղատնտեսության աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման հարցերը շարունակում են մնալ կուսակցության և պետության ուշադրության կենտրոնում:

Կուսակցության ագրարային քաղաքականության մյուս կարևոր ուղղությունը գյուղատնտեսության փոխադրումն է ժամանակակից ինդուստրիալ բազայի վրա, էկոնոմիկայի այդ ոլորտում գիտատեխնիկական առաջադիմության վճռական արագացումը: Կուսակցության մշակած լայն ու բազմակողմանի ծրագրի հիմնական օղակները հանրահայտ են՝ գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացում, քիմիացում և հողերի մելիորացման խոշոր մասշտաբի աշխատանքների իրագործում:

Վերջին տարիներս այս ասպարեզում քիչ բան չի արվել: Գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումներն այս հնգամյակում կհասնեն 129 միլիարդ ռուբլու՝ անցյալ հնգամյակի 32 միլիարդի դիմաց: Գյուղի աշխատավորները դեռ երբեք չէին ստացել այսքան մեքենաներ ու մեխանիզմներ, այսքան պարարտանյութեր ու վնասատուների ու մոլախոտերի դեմ պայքարի քիմիական միջոցներ, դեռ երբեք երկիրը չէր իմացել հողերի ոռոգման, գերխոնավ հողերի ցամաքեցման և գյուղատնտեսական հողատարածությունների բարելավման այդպիսի թափ:

Մենք այսուհետև ևս զգալի միջոցներ կներդնենք գյուղատնտեսության բնագավառում: Սակայն ավելի ու ավելի ակնհայտորեն է առաջին պլան մղվում գործի որակական կողմը՝ ինչպես, ինչ ճանապարհով առավելագույն արդյունավետությամբ օգտագործել ժողովրդական փողերը:

Օրինակ, մեզ ավելի ու ավելի շատ մեքենաներ են հարկավոր գյուղատնտեսության համար: Բայց ոչ թե պարզապես մեքենաներ: Մեզ հարկավոր է նոր և նորագույն տեխնիկա, որը համապատասխաներ մասնագիտացված խոշոր արտադրության պահանջներին, թույլ տար արմատավորել առաջադիմական տեխնոլոգիան: Քիչ է ասել, թե այստեղ կյանքը մեզ շտապեցնում է, նա անողոք կերպով առաջ է մղում, ոչ մի ժամ դադար չտալով:

Այսպես, դեռ վերջերս 95—100 ձիաուժը տրակտորի համար համարվում էր ավելի քան բավարար: Այժմ մեր արդյունաբերությունը Լենինգրադի Կի-

բովյան գործարանում թողարկում է 220 ձիաուժ կարողությամբ տրակտոր և գյուղի համար սկսել է յուրացնել 300 ձիաուժ կարողությամբ Կ—701 տրակտորը: Իսկ մասնագետները պնդում են, որ մոտ ապագայում կպահանջվի է՛լ ավելի մեծ կարողությամբ հերկի տրակտոր: Այս կապակցությամբ ես կուզենայի մի քանի խոսք ասել Պավլոդարի տրակտորի գործարանի մասին: Կուզենայի Ղազախստանի կոմկուսի Կենտկոմին, կուսակցության Լենինգրադի մարզային կոմիտեին, Կիրովյան գործարանի ինժեներներին խնդրել, որ նրանք մտածեն, թե արդյոք նպատակահարմար չէ՞ աստիճանաբար, առանց կորուստների Պավլոդարի գործարանը փոխադրել մեծ կարողություն ունեցող տրակտորների, ասենք Կ—700 տիպի տրակտորների թողարկման: Ըստ երևույթին, դա օգտակար կլինի գործի համար:

Կարողության մեծացման պրոցեսը վերաբերում է նաև գյուղատնտեսական տեխնիկայի բազմաթիվ այլ տեսակների: Ես հիշում եմ փառաբանված բրիգադավար Ալեքսանդր Գիտալովի խոսքերը, որին ճանաչում է ամբողջ երկիրը: Ինձ համար հաճելի էր Ժողովուրդների բարեկամության շքանշանը հանձնել Ուկրաինական ՍՍՀ-ին: Դրանից առաջ Կիևում տեղի ունեցավ հանրապետական կուսակցական ակտիվ: Այնտեղ Ալեքսանդր Գիտալովն ասաց, որ այժմ թողարկվող կոմբայնների «ուժն արդեն չի պատում» առաջավոր տնտեսությունների բարձր բերքին: Իսկ այդպիսի բերք պետք է աճեցնեն մեր երկրի բոլոր տնտեսությունները: Ուստի, այդպիսի ձայներին պետք է ունկընդրեն արդյունաբերական ձեռնարկություններն ու կոնստրուկտորական բյուրոները: Մենք պարտավոր ենք հոգ տանել ամբողջ գյուղատնտեսական տեխնիկայի կատարելագործման մասին, հաշվի առնելով աշխատանքների բազմազանությունը և այդ տեխնիկան օգտագործելու պայմանները:

Այդ ամենը կօգնի մեզ նկատելիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ: Զուգահեռաբար հարկավոր է հոգ տանել նաև մեխանիզատորների բավականաչափ մեծ ու որակյալ բանակ ստեղծելու մասին, որոնց պրոֆեսիոնալ վարպետությունը համապատասխաներ տեխնիկայի նոր մակարդակին:

Ընկերնե՛ր: Մենք բազմիցս քննարկել ենք անասնապահության վերելքի հարցերը: Հարկ չկա կրկնելու այն, ինչը հանրահայտ է: Այժմ խոսքն այն մասին է, որ գյուղատնտեսության այդ կարևոր ճյուղը փոխադրվի արդիական ինդուստրիալ հիմքի վրա, խորացվեն արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը:

Կենտկոմի անցյալ տարվա դեկտեմբերյան պլենումում սուր կերպով դըրվեց այն հարցը, որ անհրաժեշտ է ստեղծել անասնապահական խոշոր ֆերմաների և կոմպլեքսների պայմաններին համապատասխանող մեքենաներ ու սարքավորումներ, զգալիորեն մեծացնել համակցված կերի արդյունաբերության կարողությունները:

Հենց վերջերս կազմվեց անասնապահության և կերի արտադրության մեքենաշինության մինիստրություն: Նա պետք է արագ ոտքի կանգնի և սկսի անասնապահներին ապահովել այն ամենով, ինչ նրանց պետք է:

Դա, իհարկե, ամենևին չի նշանակում, թե կարելի է նստել ձեռքերը ծալած և սպասել, մինչև նոր մինիստրությունը իրեն լրիվ ուժով դրսևորի: Կյանքը ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները նախաձեռնություն են ցուցաբերում, հաշվենկատորեն և հմտորեն օգտագործում իրենց ունեցած ռեսուրսները, ապա հենց այժմ ստացվում են լավ արդյունքներ:

Կենտրոնական կոմիտեն վստահություն է հայտնում, որ միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները, մարզկոմները և երկրկոմները, համապատասխան սովետական և գյուղատնտեսական մարմինները պատշաճ հետևություններ կանեն Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում կարծիքների փոխանակությունից և մեկ անգամ ևս ամենամանրակրկիտ կերպով կկշռադատեն անասնապահության վերելքի իրենց հնարավորությունները, ներառյալ, իհարկե, նաև կերի պրոբլեմի՝ շատ կարևոր, ես կասեի գլխավոր



պրոբլեմի լուծումը: Յուրաքանչյուր հանրապետություն, յուրաքանչյուր մարզ ռեզերվներ ունի և դրանք պետք է օգտագործել գործի շահերի համար:

Վերջերս ես այդ թեմայով զրույց ունեցա ընկեր Կունաևի հետ: Ինչի մասին էր խոսքը: Ղազախստանը ունի 32 միլիոն ոչխար: Ես ընկեր Կունաևին հարցրի՝ մի՞թե Ղազախստանը սպառել է գլխաքանակի աճի բոլոր ռեզերվները: Անկասկած՝ ոչ: Ի վերջո մենք այն ընդհանուր կարծիքին հանգեցինք, որ Ղազախստանը կարող է ոչխարների գլխաքանակը հասցնել 50 միլիոնի: Ձեր ծափահարությունները, ընկերներ, որքան հասկանում եմ, նշանակում են լիակատար համաձայնություն այս բանին: Հիմա մեր հարգելի Դիմաշ Ահմեդովիչ Կունաևին, հանրապետության Մինիստրների սովետին չի հաջողվի այս թիվը թեկուզ մի ոչխարով կրճատել: Բնականաբար, հանրապետությանը կպահանջվի որոշ օգնություն: Այս հարցերը գտնվում են մշակման փուլում և, իհարկե, անհրաժեշտ օգնություն ցույց կտրվի: Բայց արդեն այժմ տեղական կուսակցական մարմինները պետք է, ինչպես հարկն է, ձեռնամուխ լինեն այդ գործին:

Ընկերնե՛ր: Թույլ տվեք մանրամասնորեն կանգ չառնել գյուղատնտեսության քիմիացման և հողերի մելիորացման նշանակության վրա: Դա ակնհայտ է: Քիմիացման հեռանկարային պլանը նախատեսում է 1980 թվականին մատակարարել առնվազն 120 միլիոն տոննա պարարտանյութ: Այստեղից էլ՝ դրանց փոխադրման ու պահպանման ժամանակ կորուստները կանխելու, պարարտանյութերի օգտագործման ագրոտեխնիկական կանոնները պահպանելու, կոլտնտեսային և սովխոզային կադրերի ագրոքիմիական պատրաստությունը բարելավելու հարաճուն կարևորությունը: Բայց հարկ է ասել, որ այս գործում, ցավոք, դեռ շատ ու շատ թերություններ կան, մեծ են պարարտանյութերի կորուստները փոխադրման և պահպանման ժամանակ:

Իսկ ինչ վերաբերում է մելիորատիվ շինարարությանը, ապա դրա մասշտաբները աշխարհում հավասարը չունեն. մելիորացիան ընդգրկել է երկրի փաստորեն բոլոր շրջանները: Դա արդեն շոշափելի արդյունքներ է տալիս:

Հիմնականում ոռոգելի հողերի ընդարձակման հաշվին է ձեռք բերվել բամբակի արտադրության կայուն աճը: Մենք հպարտանում ենք Ուզբեկստանի, Թուրքմենիայի, Տաջիկստանի, մյուս բոլոր բամբակացան հանրապետությունների աշխատավորներով: Մեզ մոտ այսօր տոնին ներկա են այդ հանրապետությունների ղեկավարները ու պատվիրակությունները: Կցանկանայի հարցնել նրանց: Ի՞նչ կարծիքի եք, ընկե՛ր բամբակագործներ, արդյոք կկարողանա՞ք այս տարի ավելի բարձր թվեր նշել: Այդպես է նաև բրնձի գործը: Վերջերս որոշում ընդունվեց Կուբանի հովտամասի ցամաքեցման խոշոր մասշտաբի աշխատանքներ կատարելու մասին, որը հնարավորություն կտա է՛լ ավելի ընդարձակելու բրնձի ցանքատարածությունները: Մենք շարունակ կմեծացնենք մելիորացված հողերից ստացվող գյուղատնտեսական արտադրանքի բաժինը: Եթե դրան չհասնենք, ապա երաշտները դեռ երկար ժամանակ կարող են քայքայել մեր նյարդերը, տենդի մեջ պահել արտադրությունը, խախտել ժողովրդատնտեսական պլանները: Կենտրոնական կոմիտեն հույս ունի, որ բոլոր նրանք, ովքեր կոչված են պատասխան տալու մելիորացման մեջ ներդրվող ժողովրդական փողերի բախտի համար, կապահովեն մելիորատիվ աշխատանքների ծրագրի իրականացումը լիովին և սահմանված ժամկետներում:

Կա նաև ավելի լայն մի պրոբլեմ՝ առհասարակ հողերի ռացիոնալ օգտագործման պրոբլեմը: Մեզանում գոյություն ունի հողատարածությունների օգտագործման կարգի վերաբերյալ օրենսդրություն: Դրա անշեղ կատարման, հողերի վատնումների կանխման անհրաժեշտության մասին վերջերս խոսվեց ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության նիստում: Հողը ժողովրդական անգին հարստություն է: Եվ մենք պարտավոր ենք պահպանել այն, բարձրացնել բերքատվությունը, հասնել յուրաքանչյուր հեկտարի է՛լ ավելի մեծ արդյունավետության:

Այս խնդիրը, ինչպես, ի դեպ, նաև մյուս խնդիրները, հարկավոր է լուծել

կոմպլեքսայնորեն, շաղկապելով անմիջական կարիքներն ու հեռավոր հեռանկարը, գյուղատնտեսության շահերն ու արդյունաբերության պահանջմունքները, հաշվի առնելով սոցիալական, և, մասնավորապես, ժողովրդագրական կողմերը: Այդպիսի կոմպլեքսային մոտեցման օրինակ է վերջերս քաղբյուրոյում քննարկված և ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի կողմից ընդունված որոշումը՝ «ՌՍՖՍՀ ոչ սևահողային գոտում գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին»: Խոսքն ըստ էության վերաբերում է մեր երկրի մի հսկայական շրջանի բազմակողմանի զարգացման ծրագրին, որը նախատեսված է մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի համար: Դրանով նախատեսվում է կոմպլեքսային բազմապիսի աշխատանքներ կատարել միլիոնավոր հեկտարներով հողերի բարելավման համար: Ծրագրի իրականացումը, որի համար նախատեսվում է արդեն եկող հնգամյակում հատկացնել 35 միլիարդ ռուբլի, կվերափոխի մեր երկրի կենտրոնի մի ընդարձակ երկրամաս, կնպաստի ամբողջ էկոնոմիկայի հետագա վերելքին:

Մի քանի խոսք գյուղատնտեսական գիտության հարաճուն դերի մասին: Մեզանում արդյունավետ կերպով աշխատում են իրենց գործին նվիրված տասնյակ հազարավոր հետազոտողներ, ստեղծված է ինստիտուտների և փորձակայանների լայն ցանց: Նրանք շատ բան են արել, բայց գնալով ավելի մեծ չափով է իրեն զգալ տալիս գիտական ուժերի բաշխման անհամաչափությունը՝ ինչպես նրանց գործունեության ուղղություններով, այնպես էլ տերիտորիալ հատկանիշով:

Ըստ երևույթին, օգտակար է լրջորեն անդրադառնալ գիտական հիմնարկների կառուցվածքին, ամրապնդել թույլ օղակները: Գյուղատնտեսությունը կարիք ունի նոր գաղափարների, որոնք կարողանան հեղափոխականացնել գյուղատնտեսական արտադրությունը, բույսերի ու կենդանիների բնույթի մասին ֆունդամենտալ գիտելիքների մշտական ներհոսի, որ կարող են տալ բիոքիմիան, գենետիկան, մոլեկուլյար կենսաբանությունը: Գյուղատնտեսությունը սպասում է, որ գիտնականները կստեղծեն սերմացուի նոր, ավելի բերքատու և դիմացկուն տեսակներ, անասունների է՛լ ավելի մթերատու ցեղատեսակներ:

Ահա օրինակ, գիտության համար մի բարեշնորհ խնդիր՝ աշնանացան ցորենի բարձր բերքատու տեսակներ ստեղծել Սիբիրի և Ղազախստանի համար, գարնանացան ցորենի բարձր բերքատու տեսակներ՝ Ուկրաինայի, Պովոլժիեի, երկրի մի շարք այլ հացահատիկացան շրջանների համար: Մենք այսպիսի խնդրանքով դիմում ենք մեր գիտնականներին, փորձակայաններին, սելեկցիոներներին: Նրանք որքան ավելի շուտ արձագանքեն այս խնդրանքին, որքան ավելի հաջող գլուխ բերեն այս կարևոր խնդիրը, այնքան ավելի մեծ չափով կարժանանան ժողովրդի շնորհակալությանն ու երախտագիտությանը:

Հիմա կուսակցության ագրարային քաղաքականության ևս մեկ կարևոր ուղղության՝ արտադրության, կազմակերպման ձևերը կատարելագործելու, գյուղատնտեսության կառավարումը բարելավելու մասին: Ինչպես ընդգծեց Կենտկոմի 1973 թվականի դեկտեմբերյան պլենումը, այս ուղղությունը ներկայումս մեծ նշանակություն է ստանում: Նյութատեխնիկական բազայի ամրապնդման շնորհիվ գյուղատնտեսությունը թևակոխում է զարգացման նոր փուլ, ավելի ու ավելի մեծ չափով է փոխադրվում ինդուստրիալ հիմքի վրա: Արտադրողական ուժերի մեջ կատարվող այս որակական տեղաշարժը իր հերթին պահանջում է արտադրական հարաբերությունների կատարելագործում, հանրայնացման պրոցեսների ուժեղացում, աշխատանքի բաժանում: Ի՞նչ է նշանակում սա: Արտադրության բազմաճյուղ, մասնատված կառուցվածքի մինչև օրս պահպանված գծերը, որոնք ժառանգություն են մնացել անցյալից, կասեցնում են գիտատեխնիկական վերազինման պրոցեսը, արգելակում գյուղատնտեսության ինտենսիվացումը, ուստի, արտադրության հետագա մասնագիտացումը և կենտրոնացումը, միջտնտեսային կոոպերացիայի խորացումը ներկայումս երկրի գյուղատնտեսության զարգացման կենսական, արմատական հարցերն են դառնում:



Մենք լավ գիտենք, որ ինդուստրիալ մեթոդները պատշաճ արդյունք են տալիս միայն արտադրության բավական խոշոր մասշտաբների դեպքում, բայց ստեղծված բազմաճյուղ կառուցվածքի պահպանմամբ, տնտեսությունների պարզ, ես կասեի մեխանիկական խոշորացման հաշվին, այդ մասշտաբների աճն իր սահմաններն ունի: Միակ ճշմարիտը մյուս ուղին է՝ արտադրության կենտրոնացման զուգակցումը նրա մասնագիտացման հետ, որը հնարավորություն է տալիս օգտագործելու ժամանակակից գիտության ու տեխնիկայի առավելությունները:

Արտադրության կենտրոնացման բազայի վրա մասնագիտացման օգուտները ապացուցվում են խոշոր շատ սովխոզների ու կոլտնտեսությունների, այդ թվում՝ խոպանային սովխոզների ու կոլտնտեսությունների փորձով: Այդպիսի տնտեսություններում որպես կանոն, ավելի բարձր են աշխատանքի արտադրողականությունը, տեխնիկայի, պարարտանյութերի ու կերի օգտագործման արդյունավետությունը և տնտեսական մյուս ցուցանիշները: Ընդ որում, ուժեղանում է ներտնտեսական տնտհաշվարկային ստորաբաժանումների կոոպերացումը, ամրապնդվում են նրանց արտադրական կապերը, բարելավվում է արտադրության կառավարումը:

Կարևոր է, որ մենք ըստ ամենայնի օգտագործենք այս բոլոր հնարավորությունները: Դրա հետ մեկտեղ ակներև է, որ բնավ էլ ոչ բոլոր սովխոզներն ու կոլտնտեսություններն ունեն մարդկային և նյութական անհրաժեշտ ռեսուրսներ՝ իրենց սեփական շրջանակներում խոշոր մասնագիտացված տնտեսություն ստեղծելու համար: Դա հրատապ է դարձնում տնտեսությունների լայն կոոպերացման բազայի վրա միջտնտեսային մասնագիտացման և կենտրոնացման խնդիրը: Իսկապես: Ամեն մի տնտեսություն այնքան միջոցներ չունի, որ կարողանա մենակ կառուցել խոշոր մասնագիտացված արտադրական օբյեկտներ: Այլ բան է, եթե միավորվում են մի քանի տնտեսությունների ռեսուրսները: Դա նրանց հնարավորություն է տալիս ստեղծելու ինդուստրիալ տիպի համատեղ խոշոր և մասնագիտացված ձեռնարկություններ: Այս պրոցեսն իր համար ճանապարհ է հարթում գյուղատնտեսության բոլոր ճյուղերում: Միջտնտեսային մասնագիտացումը տարածում է գտել Մոլդավիայում, Բելոռուսիայում, Ուկրաինայում, Ռուսաստանի Ֆեդերացիայի մի շարք մարզերում:

Միջտնտեսային մասնագիտացման հատկանշական կողմն այն է, որ դա հնարավորություն է տալիս ավելի լրիվ չափով և արդյունավետորեն օգտագործելու կոլտնտեսությունների ու սովխոզների սեփական միջոցները: Եվ այն կոլտնտեսություններին ու սովխոզներին, որոնք պատրաստ են միջոցներ հատկացնել այդ գործի համար, պետք է կանաչ ճանապարհ տալ, օգնել նախագծերով, տեխնիկայով ու սարքավորումներով: Հարկավոր է ավելի համարձակորեն ձեռնամուխ լինել քաղաքների և ինդուստրիալ կենտրոնների մոտակայքում բանջարաբուծական-կաթնապրանքային մասնագիտացված տնտեսությունների, խոզերի, խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների բտման, համակցված կերի արտադրության, արտադրանքի վերամշակման մեքենայացված համատեղ ձեռնարկությունների ստեղծմանը: Տնտեսությունների կոոպերացումը լայն զարգացում պետք է ստանա արտադրության սպասարկման ոլորտում շինարարական և մելիորատիվ կազմակերպությունների, շինանյութերի արտադրության, անտառային տնտեսության վարման, էլեկտրիֆիկացման, գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման, ագրոքիմիական սպասարկման ձեռնարկությունների ձևով:

Մասնագիտացման զարգացումը հանգեցնում է կոոպերացման է՛լ ավելի բարձր ձևերի առաջացման, երբ կոլտնտեսությունների ու սովխոզների հետ մեկտեղ միավորումների մեջ են մտնում նաև պետական արդյունաբերական ձեռնարկություններ: Ստեղծվում են ագրոարդյունաբերական կոմպլեքսների տիպի ձեռնարկություններ: Երկրի առանձին գոտիներում, օրինակ՝ Մոլդավիայում, Ռոստովի մարզում, Կրասնոդարի երկրամասում այդպիսի միավորումներ արդեն կան: Հարկավոր է ուշի-ուշով ուսումնասիրել նրանց փորձը,







այն օգտագործել առավել մեծ արդյունավետությամբ, մանավանդ, որ խոսքը վերաբերում է ո՛չ թե ընթացիկ կազմակերպական-տնտեսական պրոբլեմների, այլ սկզբունքային պրոբլեմի՝ սեփականության պետական և կոլտնտեսային կոոպերատիվ ձևերի հետագա մերձեցմանը:

Այս բոլոր հարցերը պահանջում են կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների մեծ ուշադրությունն ու օգնությունը, գիտական վերլուծություն, տարբերակված մոտեցում և աստիճանական լուծում, մանավանդ, որ մեզանում պայմանները շատ տարբեր են՝ և ոչ միայն ըստ երկրի գոտիների, այլև նույնիսկ առանձին մարզերի, իսկ երբեմն էլ նաև շրջանների ներսում: Կկամենայի հատկապես նախազգուշացնել այդ գործի համար պատասխանատու բոլոր ընկերներին, գյուղատնտեսության բոլոր աշխատողներին, որ այստեղ անթույլատրելի են շտապողականությունը, գործն արհեստականորեն առաջ հրելը, առավել ևս ծռումները: Հարկավոր է գործն անել ռացիոնալ, տնտեսապես գրագետ ձևով: Ապրանքային արտադրանքի հիմնական տեսակների արտադրության մասնագիտացումը և կենտրոնացումը ամենևին չեն պահանջում, որ ամեն մի տնտեսություն սահմանափակի այն ճյուղերը, որոնց արտադրանքը հարկավոր է ներտնտեսական սպառման, կամ, ասենք, տեղական շուկաներ դուրս բերելու համար:

Կենտրոնական կոմիտեն, առաջ քաշելով մասնագիտացումն ու կոոպերացումը խորացնելու խնդիրը, ամենևին էլ ի նկատի չունի մրցություն կամ նույնիսկ յուրատեսակ մրցավազք հայտարարել, թե ով ավելի արագ առաջ կգնա: Միաժամանակ հարկավոր է հաղթահարել իներցիան, այդ կարևոր գործին գերատեսչական և տեղայնական մոտեցում ցույց տալու փորձերը:

Արտադրության կազմակերպման նոր, է՛լ ավելի կատարյալ ձևերի, որոնումների հետ է սերտորեն կապված գյուղատնտեսության կառավարման ձևերի հարցը: Կառավարման ժամանակակից կառուցվածքը ստեղծվել է երկար տարիների ընթացքում և ներկայումս, իմ կարծիքով, չափազանց բարդ է դարձել, որն անշուշտ, անդրադառնում է նրա արդյունավետության վրա: Մենք պետք է մտածենք կառավարման ավելի կատարյալ սիստեմի ստեղծման մասին, թե ինչպիսին պետք է լինի այն, հարկավոր է խորապես ուսումնասիրել, ստուգել պրակտիկայում: Բայց արդեն այժմ կարելի է որոշակիորեն ձևակերպել այն պահանջները, այն չափանիշները, որոնց այդպիսի սիստեմը պետք է բավարարի:

Նախ՝ այն պետք է ապահովի գյուղատնտեսության բոլոր հարցերում համապետական միասնական գծի անցկացումը, աշխատանքի այս կամ այն տեղամասի համար պատասխանատու գերատեսչությունների գործողությունների սերտ շաղկապումը: Երկրորդ՝ այն պետք է նախատեսի ղեկավարման տարբեր մակարդակների միջև իրավասության և պատասխանատվության հստակ բաշխում: Երրորդ՝ այն պետք է օրգանապես զուգակցի կենտրոնացված պլանային ղեկավարումը սովխոզների ու կոլտնտեսությունների ինքնուրույնության, նախաձեռնության հետ՝ արտադրանքի արտադրության ու վաճառահանման օպերատիվ հարցերի լուծման բնագավառում: Եվ չորրորդ՝ այն հարկավոր է մոտեցնել գյուղատնտեսական արտադրությանը, հնարավորին չափ բացառել ավելորդ օղակները և դարձնել առավելագույնս արդյունավետ:

Տեղերից Կենտկոմը զանազան առաջարկություններ է ստանում գյուղատնտեսության կառավարումը կատարելագործելու վերաբերյալ, անհրաժեշտ է դրանք մանրազնին կշռադատել, քննարկել, համենայն դեպս, գոյություն ունեցող կառավարչական կառուցվածքի բոլոր փոփոխությունների դեպքում մենք պետք է գործենք ո՛չ թե աչքաչափով, ո՛չ թե ինտուիցիայով, այլ առաջնորդվելով փորձի տվյալներով, կառավարման ժամանակակից գիտության հետևություններով:

Սրանք են, ընկերնե՛ր, կուսակցության, ագրարային քաղաքականության հիմնական հարցերը: Կցանկանայի ընդգծել, որ խոսքը վերաբերում է հենց միասնական քաղաքականությանը, փոխադարձաբար կապված այն ուղղու-



թյունների ու միջոցառումների գումարին, որոնք հնարավորություն են տալիս առաջ ընթանալու առանց ճեղքվածքների ու ետ մնալու:

Կարևոր է, որ մենք այդ քաղաքականությունը վարենք հետևողական ու նպատակասլաց կերպով, թույլ չտալով, որ մեզ շեղեն ժամանակ առ ժամանակ ծագող ոչ հասարակ ժողովրդա-տնտեսական պրոբլեմները, հաղթահարենք այդ պրոբլեմների լուծման համար այն ֆոնդից միջոցներ փոխառնելու գայթակղությունը, որ նախատեսված է գյուղատնտեսական արտադրության վերելքի համար: Միայն այդ կերպ մենք կկարողանանք հաղթահարել գյուղատնտեսության ետ մնալը՝ հասարակության հարաճուն պահանջմունքներից:

Ընկերնե՛ր: Մենք թևակոխել ենք հնգամյակի շատ պատասխանատու ժամանակաշրջանը: Ընթացիկ տարին ըստ էության որոշում է, թե ինչ արդյունքներով մենք կավարտենք այն: Այս կապակցությամբ ժողովրդական տնտեսության առջև ծառացող խնդիրները անցյալ տարվա դեկտեմբերին հանգամանորեն քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում: Այժմ Կենտրոնական կոմիտեն աշխատում է այն բանի վրա, որ կենսագործվեն այդ որոշումները, մեր տնտեսավարման ամբողջ սիստեմը բարձրացվի նոր աստիճանի, որը համապատասխանի թե՛ աճած հնարավորություններին և թե երկրի պահանջմունքներին:

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում սրությամբ դրվեց աշխատանքի ոճի հարցը ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում, մեր գործունեության բոլոր տեղամասերում: Պատասխանատվության բարձրացումը, նախաձեռնության, գործարարության, սոցիալիստական ձեռներեցության զարգացումը, գիտակցական կարգապահության դաստիարակումը և թերությունների նկատմամբ անհաշտ վերաբերմունքի դաստիարակումը՝ աշխատանքի կուսակցական ոճի այս գծերը վճռական նշանակություն են ձեռք բերում: Դրանք բոլորը վերաբերում են հասարակական կյանքի բարոյական, հոգևոր ոլորտին և չեն կարող գրանցված լինել պլանի կամ վիճակագրական հաշվետվության մեջ: Բայց մենք գիտենք, մեր փորձով համոզվել ենք, որ կոմունիստական բնավորության և կոմունիստական գիտակցության այդ գծերն օժտված են նյութական հսկայական ուժով, մարմնավորվում են մեր մեծ հայրենիքի հարաճուն հզորության ու հարստության մեջ, մեր հայրենիքի պաշտպանության ամրապնդման մեջ:

Ահա թե ինչու կուսակցության տնտեսական քաղաքականությունը անխզելիորեն կապված է նրա քաղաքական-դաստիարակչական գործունեության հետ: Ահա թե ինչու մենք պետք է համառորեն և հետևողականորեն պայքարենք մեր ամբողջ աշխատանքի մակարդակը բարձրացնելու համար:

Այժմ, երբ կուսակցությունը լուծում է էկոնոմիկայի հետագա վերելքի և ժողովրդական տնտեսության կառավարման սիստեմի կատարելագործման խնդիրները, հատուկ նշանակություն է ձեռք բերում աշխատավորության է՛լ ավելի լայն ներգրավումը կառավարչական ակտիվ գործունեության մեջ, նրանց փորձի ու գիտելիքների առավել լրիվ օգտագործումը այդ աշխատանքում: Սա բխում է մեր հասարակական սիստեմի բուն էությունից, որին օրգանապես ներհատուկ են իսկական դեմոկրատիզմը, մասսաների ակտիվ մասնակցությունը բոլոր պետական և հասարակական գործերի լուծմանը:

Կուսակցության XXIV համագումարը հստակորեն սահմանեց մեր սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործման կուրսը: Այդ կուրսը մենք վարել ենք և կվարենք անսասանորեն ու անշեղորեն, ձգտելով հասնել մասսաների ստեղծագործական եռանդի լրիվ մոբիլիզացմանը, ինչպես պետական մարմինների միջոցով, այնպես էլ մասսայական հասարակական կազմակերպությունների լայն ցանցի միջոցով հասարակության կառավարման բազմազան ձևերի առավելագույն հարստացմանը: Այդ գործունեությանը որքան ավելի լայն և խոր մասնակցություն ունենան աշխատավորները, այնքան ամուր կլինի մեր պետական ու հասարակական կարգը, այնքան հաջողությամբ մենք կլուծենք կոմունիստական շինարարության խնդիրները:

Կուսակցության ճիշտ քաղաքականությունը, ժողովրդի կողմից այդ քա-

ղաքականությանը ցույց տվող պաշտպանությունը, սովետական մարդկանց անձնվեր աշխատանքը նոր հնարավորություններ են ստեղծում հերոսական ստեղծագործությունների համար, որոնցով այնքան հարուստ է մեր հայրենիքի պատմությունը: Խոպանը Ղազախստանի կամ Ալթայի տափաստաններով չի վերջանում: Խոպանը Սիբիրի տայգան է, հյուսիսի տունդրան, Միջին Ասիայի անապատները: Ավելի կոնկրետ լինելու համար հիշատակեմ պատրաստվող նախագծերից միայն մեկը: Դա Բայկալա-Ամուրյան մայրուղին է, այն երկաթուղագիծը, որը կկտրի-կանցնի ամբողջ Արևելյան Սիբիրը և Հեռավոր Արևելքը: Այդ երկաթուղագծի շինարարությունը, որը հատելու է սիբիրյան տարածությունը իր անսպառ բնական հարստություններով, ճանապարհ է հարթում արդյունաբերական նոր խոշոր շրջան ստեղծելու համար: Նրա երկայնքով կաճեն ավաններ ու քաղաքներ, արդյունաբերական ձեռնարկություններ ու հանքահորեր, անշուշտ, կհերկվեն ու գյուղատնտեսական շրջանառության մեջ կդրվեն նաև նոր հողեր:

Համոզված եմ, ընկերնե՛ր, որ այդ կառույցը կդառնա համաժողովրդական: Դրան կմասնակցեն բոլոր հանրապետությունների պատվիրակները, առաջին հերթին մեր երիտասարդությունը:

Մի՞թե սա ոգևորիչ հեռանկար չէ մեր հազարավոր երիտասարդների համար: Մենք այդպիսի մտահղացումներ քիչ չունենք: Դրանցից մի քանիսը առայժմ դուրս չեն եկել ընդհանուր գաղափարների ու հաշվումների շրջանակներից: Մյուսների վրա էլ արդեն աշխատում են պլանային մարմինները, նախագծային ինստիտուտները: Այնպես որ՝ խոպանցիների նոր սերունդների համար գործեր կճարվեն: Սակայն, ապագայից վերադառնալով ներկային, մենք ձեզ հետ միասին միշտ պետք է հիշենք, որ վաղվա աշխատանքային սխրագործությունները ծլարձակվում են այսօրվա աշխատանքային առօրյայից, որ գալիք հաջողությունների հիմքը դրվում է այսօր: Իսկ այսօր չկա ավելի կարևոր, ավելի պատասխանատու խնդիր, քան 1974 թվականի պլանի կատարումն ու գերակատարումը: Այդ են պահանջում պետության շահերը, ժողովրդի շահերը, յուրաքանչյուր աշխատավոր մարդու շահերը:

Հարգելի ընկերնե՛ր: Կարծում եմ, հարկ չկա մանրամասն կանգ առնելու ՍՄԿԿ-ի միջազգային քաղաքականության վրա: Այդ մասին շատ է խոսվել վերջին ժամանակներս: Ուստի, կանդրադառնամ շատ համառոտակի և միայն ամենագլխավորին:

Վերջին տարիներին հաջողվեց կատարել իրոք մեծ, հսկայական կարևորություն ունեցող գործ՝ հասնել շրջադարձի միջազգային հարաբերությունների զարգացման մեջ, շրջադարձի՝ «սառը պատերազմից» դեպի միջազգային լարվածության թուլացում և տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատում: Դա մեր կուսակցության լենինյան արտաքին քաղաքականության աներկբա հաջողությունն է, ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագրի իրականացման համար մղվող հետևողական պայքարի հաջողությունը: Դա սոցիալիստական համագործակցության եղբայրական երկրների, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, աշխարհի բոլոր առաջադիմական ուժերի հետ մեր միասնական գործողությունների արդյունքն է: Եվ, իհարկե, դա արդյունքն է այն որոշակի ռեալիզմի, որ ցուցաբերել են մի շարք կապիտալիստական երկրների առաջատար քաղաքական գործիչները:

Ձեռնամուխ լինելով միջազգային իրադրության առողջացման նպատակին ուղղված միջոցառումների շարքի իրականացմանը, մենք մեզ լիովին հաշիվ ենք տալիս, որ հարկ կլինի հաղթահարել իմպերիալիզմի առավել հետադիմական ագրեսիվ շրջանների, այն բոլոր քաղաքական հոսանքների համառ դիմադրությանը, որոնք զանազան պատճառներով շահագրգռված են միջազգային լարվածության պահպանմամբ: Ուստի, համաշխարհային ասպարեզում քաղաքական նոր կլիմայի հաստատումը խանգարելու նպատակով խաղաղության թշնամիների ակտիվ փորձերը մեզ հանկարծակիի չբերեցին:

Ներկա ժամանակաշրջանը աչքի է ընկնում իր բարդությամբ ու հակասականությամբ: Ռեակցիան ամենուրեք, որտեղ նրան հաջողվում է, ձգտում է հակագրոհների անցնել թեկուզ և առանձին տեղամասերում, արգելակել լարվածության թուլացման գործը, բարդացնել հասունացած պրոբլեմների լուծումը: Այդ նպատակներով ակտիվորեն օգտագործվում են բուրժուական մամուլի, ռադիոյի ու հեռուստատեսության շատ օրգաններ, որոնք դիտավորյալ խեղաթյուրում են մեր քաղաքականության իմաստը, նենգափոխված լուսաբանում իրադարձությունների ընթացքը, դիմում հակասովետիզմի մաշված շտամպներին: Խաղաղության թշնամիների այդ հարձակումները մեզ չեն զարմացնում: Մենք կշարունակենք գնալ մեր ճանապարհով: Մեր արտաքին քաղաքականության կողմն է ողջ սովետական ժողովուրդը, երկրագնդի բնակչության վիթխարի մեծամասնությունը, որովհետև այդ քաղաքականությունը ծառայում է ազնիվ նպատակների՝ խաղաղության ու անվտանգության ամրապնդմանը, բոլոր ժողովուրդների ազատ զարգացման, բոլոր երկրների սոցիալական առաջադիմության համար պայմանների ապահովմանը:

Սովետական Միության խաղաղասեր արտաքին քաղաքականությունը հետևողականորեն ինտերնացիոնալիստական քաղաքականություն է: Մենք այդ քաղաքականությունը վարում ենք մեր մարտական բարեկամների՝ սոցիալիզմի երկրների եղբայրական կուսակցությունների ու ժողովուրդների սերտ փոխգործողությամբ: Եվ այս բանը մեկ անգամ ևս մեծ ուժով ցույց տվեց վերջերս Կուբա կատարված այցը, որտեղ մենք եղանք ընկեր Ֆիդել Կաստրոյի հրավերով: Կուբայի ղեկավարների հետ մեր եղբայրական հանդիպումները ու զրույցները աչքի ընկան հայացքների լիակատար միասնությամբ: Ինձ վրա և իմ ընկերների վրա խոր տպավորություն գործեց Կուբայի ժողովրդի կողմից մեզ ցույց տրված ջերմագին ընդունելությունը: Դա մեր մեծ հայրենիքի, լենինյան կուսակցության, սովետական ժողովրդի նկատմամբ կուբայական ժողովրդի տածած հարգանքի ու սիրո վեհ զգացմունքների իրոք մի անմոռանալի ցույց էր:

Հենց նոր ավարտվեց Պիցունդայի մեր երկօրյա հանդիպումը Ֆրանսիայի Հանրապետության պրեզիդենտ Ժորժ Պոմպիդուի հետ: Ֆրանսիայի հանրապետության ղեկավարի հետ հանգամանալի զրույցները, ինչպես նախկինում, տեղի ունեցան բարի կամքի, ռեալիզմի ու փոխադարձ հարգանքի ոգով: Դրանք, անշուշտ, երկու կողմերին էլ օգնեցին է՛լ ավելի մոտեցնելու իրենց դիրքերը մի շարք կարևոր հարցերի առթիվ և դրանով իսկ բարելավելու նախադրյալները միջազգային ասպարեզում Սովետական Միության ու Ֆրանսիայի փոխգործողության համար, նպատակ ունենալով միջազգային լարվածության թուլացման պրոցեսի հետագա խորացումը, պետությունների իրավահավասար համագործակցության զարգացումը:

Վերստին ամենայն համոզչությամբ հաստատվեց, որ որքան լայն է մեր համաձայնեցված ջանքերի ոլորտը, այնքան արդյունավետ կարող է լինել մեր երկրներից յուրաքանչյուրի ներդրումը ժամանակակից միջազգային կյանքի խոշորագույն հարցերի լուծման գործում: Կարող եմ ասել, որ Պիցունդայում կայացած զրույցների շնորհիվ պարզվեց մեր հայացքների հետագա մերձեցումը՝ Եվրոպայի անվտանգության հարցերին նվիրված խորհրդակցությունը շուտափույթ կերպով ավարտելու անհրաժեշտության հարցում: Մեր դիրքավորումները մոտիկ են նաև մերձավորարևելյան պրոբլեմի լուծմանը մոտեցման հարցում: Դիրքավորումների մոտիկություն կամ զուգադիպում դրսևորվեց նաև որոշ այլ խոշոր պրոբլեմների առթիվ:

Միջազգային հարցերին զուգընթաց, մենք կարծիքներ փոխանակեցինք մեր երկու երկրների միջպետական հարաբերությունների հետագա խորացման ուղիների շուրջը: Ինչպես հայտնի է, մեր հարաբերությունների համար լավ հիմք դրվեց այն սկզբունքների վերաբերյալ փաստաթղթի ընդունումով, որոնց վրա պետք է խարսխվեն Սովետական Միության ու Ֆրանսիայի հարաբերությունները, և կոնսուլտացիաների վերաբերյալ արձանագրության ստորագրումով: Սովետա-ֆրանսիական հարաբերությունները արդեն այսօր բազմազան, լայն բնույթ են կրում: Դրանք վերաբերում են ամենատարբեր

ոլորտներին՝ քաղաքականությանը, էկոնոմիկային, գիտությանն ու կուլտուրային: Տարեցտարի կյանքը դրանց մեջ նոր բաներ է մտցնում, բաց է անում ինչ-որ նոր հնարավորություններ:

Կարճ ասած, Պիցունդայում կայացած հանդիպումը հանդիսացավ սովետա-ֆրանսիական ավանդական բարեկամության ամրության նոր վկայությունը, բարեկամություն, որը համապատասխանում է մեր երկու երկրների ժողովուրդների արմատական շահերին, խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման գործին:

Ասում են, թե ժամանակը գործում է խաղաղության ու սոցիալիզմի օգտին: Սա ճիշտ է: Բայց ճիշտ է սոսկ այնքանով, որքանով մենք ինքներս ենք աշխատում: Միջազգային ասպարեզում մեր նվաճումները համառ ու հաստատակամ ջանքերի արգասիք են: Եվ ոչ միայն պետական գործիչների, դիվանագետների. դա ամբողջ սովետական ժողովրդի աշխատանքի արդյունքն է, որովհետև արտաքին քաղաքականության հաջողությունները վերջին հաշվով որոշվում են ներքին քաղաքականության հաջողություններով, մեր տնտեսական, գիտատեխնիկական, պաշտպանական պոտենցիալի մակարդակով, մեր հասարակության քաղաքական ու բարոյական միասնությամբ: Ուստի, խաղաղության պայքարում նվաճված հաղթանակները նաև ձեր հաղթանակներն են, ընկերնե՛ր: Դրանք բոլոր սովետական աշխատավորների, բոլոր նրանց հաղթանակներն են, ում աշխատանքը, ում միտքն ու ձեռքերը մեր հայրենիքը դարձնում են մեծազոր սոցիալիստական տերություն:

Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր:

Մենք ձեզ հետ միասին հավաքվել ենք այն օրերին, երբ գարունը, խոպանի քսանմեկերորդ գարունը, ստանձնում է իր իրավունքները: Արթնանում է հողը, նա ասես թե սպասում է մարդկային բարի, կարող ձեռքերի հպմանը: Հողը բարուն միշտ էլ պատասխանում է բարիով, ծաղկուն այգիներով, հյութեղ խոտով, ծանր, լիքը հասկով:

Եվ մարդն ամբողջ սրտով հավատում է, որ հողագործների անդուլ աշխատանքը, նրանց գիտելիքներն ու փորձը, հողի նկատմամբ անսահման սերն ըստ արժանվույն կվարձատրվեն այս տարի:

Թույլ տվեք մեր երկրի բոլոր հողագործներին նոր նշանակալի նվաճումներ մաղթել դժվարին, բայց պատվավոր ու ազնիվ աշխատանքում:

Մեծ հաջողություններ ձեզ, թանկագին ընկերնե՛ր և բարեկամնե՛ր:

* * *

Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր բուռն, երկարատև ծափահարություններով: Ճառի եզրափակիչ բառերը հանդիսավոր նիստի մասնակիցները դիմավորեցին հոտընկայս, ջերմ օվացիայով: Ներկաները վանկարկում են. «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Սովետական ժողովրդին՝ փա՜ռք», «Խոպանը նվաճողներին՝ փա՜ռք», «Ուռա՜»:

# ԼԵՆԻՆԻԶՄԻ ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

**Բ. ՊՈՆՈՄԱՐՅՈՎ**
ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածու, Կենտկոմի քարտուղար

Կես դար է անցել այն ժամանակից, ինչ մեզ հետ չէ Վլադիմիր Իլյիչ Լենինը՝ համաշխարհային պրոլետարիատի առաջնորդը, մեծ մտածողն ու հեղափոխականը, Սովետական Միության կոմունիստական կուսակցության և Սովետական պետության հիմնադիրը: Աշխարհում ոչ մի մարդ այնպիսի վիթխարի ազդեցություն չի գործել մարդկանց մտքերի ու գործերի վրա, ինչպես Լենինը: Նա իր անունը գրեց պատմության մեջ, որովհետև կարողացավ, ինչպես ուրիշ ոչ ոք, փոխել նրա ընթացքը բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահերի օգտին: «...Ինչպիսի բարձունքների էլ հասնի մարդկությունը, միևնույնն է, նա միշտ հիշելու է, որ կոմունիստական քաղաքակրթության ակունքների մոտ կանգնած է Լենինի՝ մտածողի ու հեղափոխականի, դյուցազնական ֆիգուրը,— ասում էր ընկեր Լ. Ի. Բրեժնևը Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակին նվիրված զեկուցման մեջ:— Կոմունիստի համար, լենինյանի համար չկա ավելի սուրբ բան, քան իր ամբողջ եռանդը, ամբողջ խելքն ու կամքը նվիրաբերել՝ մոտեցնելու այն ապագան, հանուն որի պայքարել է Լենինը»:

Ռուսաստանի կոմունիստական կուսակցությունը, բանվոր դասակարգը, Լենինի ղեկավարությամբ կատարելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, հուն բացեցին սոցիալիստական սրընթաց հոսանքի համար:

Լենինը Կ. Մարքսի ուսմունքը բարձրացրեց նոր աստիճանի, նա ստեղծեց հեղափոխության կուռ և ամբողջական տեսություն, որն ընդգրկում և ընդհանրացնում է հեղափոխական զարգացման բազմազան ձևերը, ինչպես առանձին երկրների, այնպես էլ ամբողջ մոլորակի մասշտաբներով: Լենինը հեղափոխական շարժման պատմության մեջ մտավ որպես խոշոր ինտերնացիոնալիստ: Ինտերնացիոնալ է Լենինի ուսմունքը, որը յուրացրել է բոլոր երկրների ու ժողովուրդների փորձը և արտահայտել հասարակական առաջընթացի պահանջները: Ինտերնացիոնալ է լենինիզմի պրակտիկան, որը բխում է հեղափոխական պայքարի ընդհանուր օրինաչափություններից: Ինտերնացիոնալ է նաև Լենինի ստեղծած միջազգային կոմունիստական շարժումը:

Վլադիմիր Իլյիչ Լենինը կոփել է նոր տիպի պրոլետարական կուսակցություն: Նրա նախաձեռնությամբ և նրա ղեկավարությամբ ծավալվել է կոմունիստական կուսակցությունների ձևավորման մեծ պրոցեսը բոլոր երկրներում: Նրանք անմիջապես իրենց ցույց տվեցին որպես հեղափոխական գործողության կուսակցություններ: Աշխարհը տեսավ, որ երկրագնդի վրա ծնվել է նոր,

հիրավի մարտական, հեղափոխական ուժ, որն ունակ է գլխավորելու մասսաներին՝ մարդկային հասարակության արմատական վերափոխման համար մղվող պայքարում:

Պատմական բեմից իջնող շահագործող դասակարգերը օգտագործեցին քաղաքական, տնտեսական և գաղափարախոսական բոլոր միջոցները, ռեպրեսիաների բոլոր տեսակները՝ կոմունիստական շարժումը ոչնչացնելու կամ քայքայելու նպատակով: Ունակ չլինելով դիմակայել կոմունիզմի գաղափարներին, ռեակցիայի սև ուժերը ձգտում էին և ձգտում են ֆիզիկապես ոչնչացնել կոմունիստներին, նրանց նետել համակենտրոնացման ճամբարները ու բանտերը: Երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ և հենց պատերազմի տարիներին դասակարգային թշնամու ձեռքով ընկան միլիոնավոր կոմունիստներ: Հետպատերազմյան տարիներին կոմունիստների դեմ առանձնապես դաժան ռեպրեսիաներ կիրառվեցին Ինդոնեզիայում և Հարավային Աֆրիկայում, Հունաստանում և Իսպանիայում, Պորտուգալիայում ու Գվատեմալայում, Չիլիում և Բրազիլիայում, Պարագվայում և ուրիշ շատ երկրներում:

Բայց, հակառակ ռեակցիայի բոլոր հալածանքներին, գազանություններին, կոմունիստների բանակն աճել և աճում է քանակապես, ամրապնդվում կազմակերպորեն և քաղաքականապես: Եթե 1924 թ. կային 49 կոմունիստական և բանվորական կուսակցություններ, որոնք միավորում էին 1 միլիոն 300 հազար անդամներ, ապա այսօր կոմկուսակցությունները գործում են 89 երկրներում և նրանց շարքերում միավորված է ավելի քան 50 միլիոն մարդ:

Փորձել են կոմունիստական շարժումը թուլացնել գաղափարապես, նրա մեջ արմատավորել ռեֆորմիզմի և համաձայնողականության կոնցեպցիաներ, նրան մղել անվնաս էվոլյուցիոնիզմի և էկոնոմիզմի ուղին, աջ և «ձախ» օպորտունիզմի ուղին: Բայց բուրժուազիայի, նրա գործակիցների այդ հույսերը ևս չիրականացան:

Իհարկե, անցած կես դարում կոմունիստական շարժումն ունեցել է նաև անհաջողություններ: Սակայն այդ բոլոր հիսուն տարիներին միջազգային կոմունիստական շարժման զարգացման վճռական գիծը եղել և մնում է իրադարձությունների ընթացքի վրա նրա ազդեցության անընդմեջ աճը և նրա հասարակականորեն վերափոխիչ գործունեության արդյունքների բազմապատկումը: Մենք իրավունք ունենք ասելու, որ կոմունիստները և նրանց պայքարն այժմ որոշիչ ներգործություն են ունենում ամբողջ համաշխարհային զարգացման վրա: Ըստ էության, միջազգային կոմունիստական շարժման մեծագործությունների մեջ մարմնավորված է արդի դարաշրջանի մարդկության առաջընթացի հիմնական բովանդակությունը:

**Առաջին:** Վ. Ի. Լենինի գաղափարների հիման վրա և նրա հանճարեղ պլանով Սովետական Միությունում կառուցվել է սոցիալիզմ: Հակառակ իմպերիալիզմի և երկրի ներքին դասակարգային հակառակորդների կատաղի թշնամությանը, հակառակ տրոցկիստների, աջ և հակասոցիալիստական այլ խմբերի դիմադրությանը, ՍՄԿԿ-ը կատարեց հիրավի տիտանական աշխատանք և հասավ հասարակական նոր կարգի հաղթանակին: Գիտական տեսությունից սոցիալիզմն առաջին անգամ վերածվեց կենդանի իրականության: Սովետական ժողովուրդը ստեղծեց զարգացած սոցիալիստական հասարակարգ և մարդկության պատմության մեջ առաջին անգամ իրականացնում է անցումը դեպի կոմունիզմ:

**Երկրորդ:** Լենինի կուսակցության գլխավորած սովետական ժողովուրդը և նրա բանակը վճռական ավանդ ներդրեցին երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ֆաշիզմի ջախջախման գործում: Կոմունիստների ղեկավարած սոցիալ-քաղաքական ուժերը փրկեցին համաշխարհային քաղաքակրթությունը, պաշտպանեցին ու հաստատեցին մարդկային հասարակության շարժման սոցիալիստական հեռանկարը:

**Երրորդ:** Կոմունիստական կուսակցությունների ղեկավարությամբ քառորդ դար առաջ ծավալվեց համաշխարհային սոցիալիստական հեղափոխության նոր էտապը: Ստեղծվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմը՝



համաշխարհային հեղափոխական պրոցեսի հետագա զարգացման պատվարն ու գլխավոր ուժը: Ետ մղելով հին աշխարհի բոլոր գրոհները, շահագործողական կարգերը վերականգնելու և սոցիալիզմը «դեն շպրտելու» նրա բոլոր փորձերը, սոցիալիստական ընկերակցությունը, ստեղծելով տնտեսական, քաղաքական և պաշտպանական վիթխարի պոտենցիալ, վճռականորեն ազդեց ուժերի հարաբերակցության փոփոխման վրա՝ ի շահ բանվոր դասակարգի և աշխարհի բոլոր աշխատավորների:

**Չորրորդ:** Դրա շնորհիվ հնարավոր դարձան ազգային-ազատագրական հաղթական հեղափոխությունները, որոնք հանգեցրին գաղութային կայսրությունների խորտակմանը: Տասնյակ ժողովուրդներ կանգնեցին ինքնուրույն զարգացման ուղու վրա, ակտիվորեն ներգրավվեցին համաշխարհային քաղաքականության մեջ, նախկին գաղութների տեղ կազմավորվեցին մի ամբողջ խումբ պետություններ, որոնք ընտրեցին սոցիալիստական օրիենտացիա:

**Հինգերորդ:** Կոմունիստները ավանգարդային դեր են կատարել և կատարում են՝ լուծելու համար մի խնդիր, որը, առանց չափազանցության, այսօր առաջնահերթն ու ամենակենսականն է ամբողջ մարդկության համար— խաղաղությունը պահպանելու, նոր համաշխարհային պատերազմը կանխելու խնդիրը: Այսօր, ինչպես երբեք անցյալում, ժողովուրդների գիտակցության մեջ ամրապնդվում է այն համոզմունքը, որ կոմունիստները ամենահուսալի և ամենաակտիվ ուժն են խաղաղության պահպանման և ամրապնդման գործում:

**Վեցերորդ:** Կոմունիստների գործունեության շնորհիվ անշեղորեն աճում է պրոլետարիատի կազմակերպվածությունն ու համախմբվածությունը կապիտալի երկրներում, ուժեղանում է ճնշումը բուրժուազիայի վրա, կապիտալիստական շահագործման բուն սիստեմի վրա:

**Վերջապես,** հենց լենինիզմի դրոշի ներքո ձեռք բերված մեծ հաջողությունների, աշխատավորների շահերի, սոցիալիզմի համար կոմունիստների մղած անձնվեր պայքարի շնորհիվ նրա գաղափարները այսօր չտեսնված ձգողական ուժ են ստացել բոլոր մայրցամաքներում, աշխարհի բոլոր ծայրերում:

Սրանք են այն մեծ արդյունքները, որոնցով կոմունիստները իրավունք ունեն հպարտանալու: Անցած կես դարը եղել է սոցիալիզմի շեշտակի վերելքի, պատմության ընթացքի վրա դրա ներգործության անընդմեջ ընդլայնման տարիներ և միաժամանակ դրանք եղել են իմպերիալիզմի մայրամուտի, նրա տիրապետության ոլորտի անշեղ նեղացման և աշխարհում նրա դիրքերի թուլացման տարիներ:

## ԻՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆ Է

Կոմունիստական շարժման բարձրագույն նվաճումը իրական սոցիալիզմն է, շահագործումից ու ճնշումից ազատ, նոր հասարակությունը, հանուն որի ապրել ու պայքարել է Վլադիմիր Իլյիչը: Այդ հասարակությունը բանվոր դասակարգի հզոր, ստեղծագործական ուժի կենդանի մարմնավորումն է:

Նոր, կոմունիստական քաղաքակրթության ստեղծումը աշխարհի հեղափոխական վերափոխման կարևորագույն գործոնն է և դրա հետ մեկտեղ մի հզոր խթան ու հենարան՝ բոլոր ժողովուրդների ազատագրական պայքարի համար:

Սովետական հանրապետության գոյության առաջին օրերից ամբողջ աշխարհի հեղափոխականներին ոգեշնչում էր բանվորագյուղացիական պետության ծննդյան բուն փաստը, որտեղ առաջին անգամ սկսեցին իրականանալ իսկական սոցիալական հավասարության, ժողովուրդների իսկական ազատության, դեմոկրատիայի ու եղբայրության իդեալները:

Այժմ սոցիալիզմը կապիտալիզմի հետ պատմական հակամարտության կշեռքի նժարին է դնում համոզիչ նվաճումները այնպիսի խնդիրների իրականացման գործում, որոնց առաջադրումն իսկ անհնարին էր անցյալում: Ար-

դի էտապում, երբ մենք այնքան առաջ ենք գնացել Լենինի պատգամների իրականացման ասպարեզում, կոմունիզմի իդեալների կենսագործումը հենվում է հզոր նյութատեխնիկական բազայի, հասարակական հարաբերությունների և մասսաների սոցիալիստական գիտակցականության բարձր մակարդակի վրա:

Զարգացած սոցիալիզմն աշխարհին ցուցադրում է ո՛չ միայն էկոնոմիկայի և նյութական կենսամակարդակի բարձրացման կայուն, պլանաչափ, արագ աճ: Նա ամբողջ ժողովրդի համար ստեղծում է կապիտալիզմի ժամանակաշրջանից տարբերվող, սկզբունքորեն այլ կյանքի որակ, որը համապատասխանում է մարդու անձնական ու հասարակական շահերին, նրա հոգեկան ու բարոյական կատարելագործմանը:

Սոցիալիստական հասարակության անբաժանելի ու կարևորագույն գիծը իսկական ժողովրդական իշխանությունն է: Հոկտեմբերյան հեղափոխության մեծագույն նվաճումներից մեկը Լենինը համարում էր նոր, սոցիալիստական դեմոկրատիայի ծնունդը, որն անհամեմատ ավելի բարձր է բուրժուական դեմոկրատիայից: Սոցիալիստական դեմոկրատիան ապահովում է աշխատավորների իրական իրավունքները: Դա ամենից առաջ աշխատանքի, կրթության, սոցիալական ապահովության, անվճար բուժօգնության, հանգստի իրավունքն է և այլն: Դա մարդու նկատմամբ իսկական հոգատարության դեմոկրատիա է, փոխադարձ աջակցության և իսկական իրավահավասարության դեմոկրատիա: Այն երաշխավորում է մասսաների լայն ու արդյունավետ մասնակցությունը երկրի աշխատանքային, քաղաքական և հոգևոր կյանքին, պետական գործերի և արտադրության կառավարմանը: Մեր դեմոկրատիայի մեջ մարմնավորվում են ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը, անհատի ու կոլեկտիվի շահերի անխզելիությունը: Կուսակցությունն ու ժողովուրդը սոցիալիզմի երկրներում միասնական են: Հասարակության ղեկավարումը բանվոր դասակարգի, նրա կոմունիստական կուսակցության կողմից ապահովում է բոլոր դասակարգերի, հասարակական բոլոր խավերի շահերի հաշվառումը: Սոցիալիստական դեմոկրատիայի մշտական զարգացումն ու կատարելագործումը ՍՄԿԿ անփոփոխ գիծն է:

Կուսակցության XXIV համագումարը որոշեց մեր երկրի հետագա զարգացման ստրատեգիական ուղղությունները: Համագումարի որոշումների իրականացումը մի խոշոր առաջընթաց քայլ կլինի ամբողջ միջազգային սոցիալիզմի դիրքերի ամրապնդման և նրա գաղափարների ձգողական ուժի մեծացման ճանապարհին: ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը (1973 թ.), ինչպես հայտնի է, խոր վերլուծության ենթարկեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման կենտրոնական պրոբլեմները: ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ճառում նշված են այն միջոցները, որոնց նպատակն է հանրային արտադրության արդյունավետության շեշտակի բարձրացումը, գիտատեխնիկական հեղափոխության առավելագույն օգտագործումը և աշխատավորների կենսամակարդակի հետագա բարձրացումը:

Մեծ Լենինը սովետական իշխանության հաստատման առաջին, նույնիսկ ամենադաժան, տարիներին մարգարեաբար կանխատեսել էր հեղափոխության հաղթանակի անխուսափելիությունը ուրիշ երկրներում: Եվ ոչ միայն կանխատեսել, այլև ամեն կերպ օգնում էր այդ հաղթանակներին: Եվ ահա արդեն քառորդ դարից ավելի է, ինչ երկրագնդի վրա գոյություն ունեն մի շարք սոցիալիստական պետություններ: Համակողմանիորեն ամրապնդվում և ծաղկում է սոցիալիստական ընկերակցությունը: Նոր աստիճանի է բարձրանում սոցիալիզմի երկրների տնտեսական ինտեգրացումը, նրանց քաղաքական ու ռազմական համագործակցությունը, գործողությունների կոորդինացումը միջազգային ասպարեզում: Եղբայրական կուսակցությունները գնալով ավելի սերտորեն են համագործակցում գաղափարախոսության բնագավառում:

Սոցիալիստական համագործակցության երկրների համախմբման բազմակերպ պրոցեսի ցեմենտող ուժն է կառավարող կոմունիստական կուսակցությունների միասնությունը մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա: Այդ միասնության ամրապնդմանն են ծառայում համակողմանի կոնտակտները այդ կուսակցությունների և նրանց ղեկավարների միջև: Այդ բանը մի անգամ ևս ցուցադրեց անցյալ տարվա Ղրիմի հանդիպումը:

Ժամանակակից իրականության նշանակալից տենդենցն է սոցիալիզմի արտաքին քաղաքականության դերի աճել աճը: Իրական սոցիալիզմի քաղաքական, տնտեսական և ռազմական պոտենցիալը թույլ է տալիս նրան լուծել ավելի ու ավելի խոշոր արտաքին քաղաքական խնդիրներ: Խոսքը արդեն ոչ միայն հեղափոխական նվաճումներն արտաքին ոտնձգություններից պաշտպանելու, ագրեսիայի ու դիկտատի իմպերիալիստական քաղաքականությանը հուժկու հակահարված տալու մասին է: Խոսքը իմպերիալիզմից ելնող պատերազմական վտանգին ավելի ու ավելի էֆեկտիվ դիմագրավելու մասին է, իմպերիալիզմ, որի դասակարգային բնույթն ու էությունը մնում են անփոփոխ, խոսքը խաղաղ գոյակցության սկզբունքների վրա հիմնված միջազգային հարաբերությունների հաստատման համար մղվող հաջող պայքարի մասին է:

Սովետական Միությունը, սոցիալիստական համագործակցությունը հաստատապես իրենց ձեռքում են պահում արտաքին քաղաքական նախաձեռնությունը, արագացնում խաղաղ հարձակման տեմպերը: Սոցիալիզմը, համաշխարհային կոմունիստական շարժումը, այսինքն՝ այն ուժերը, որոնց գաղափարական հիմքը լենինիզմն է, վճռական դեր են կատարում նոր համաշխարհային պատերազմը կանխելու գործում և հաջող պայքար են մղում լոկալ պատերազմների դեմ: ՍՄԿԿ XXIV համագումարի առաջ քաշած խաղաղության ծրագիրը պատմության մեջ մտավ որպես իսկական ժողովրդական ծրագիր, որի նպատակները մոտ ու հասկանալի են պատերազմի բոլոր հակառակորդների, իրավահավասար, դեմոկրատական միջազգային հարաբերությունների կառուցման բոլոր կողմնակիցների համար:

Ինչպես հայտնի է, սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության գաղափարը պատկանում է Վ. Ի. Լենինին: Հենց նրա անմիջական ղեկավարությամբ կատարվեց այդ գաղափարը գործնականում իրականացնելու առաջին, սկզբունքորեն կարևոր փորձը:

Առանձնապես տպավորիչ էին վերջին տարիներին արտաքին քաղաքականության ձեռք բերած հաջողությունները: Մեր կուսակցության և պետության ջանքերով, եղբայրական սոցիալիստական պետությունների համաձայնեցված գործողություններով հաջողվեց հասնել խոշոր նվաճումների: Ընդհանուր տեղաշարժ կատարվեց լարվածության մեղմացման օգտին, խաղաղության և սոցիալիզմի ուժերի օգտին, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի օգտին:

Մեր կուսակցությունը, բարձր գնահատելով այդ նվաճումները, դրա հետ միասին հաշվի է առնում, որ իմպերիալիզմի առավել ագրեսիվ, առավել միլիտարիստական շրջանները փորձում են հակազդել, թուլացնել կամ նույնիսկ վիժեցնել լարվածության մեղմացման պրոցեսը: Չի կարելի չտեսնել նաև այն, որ պատերազմի նյութական նախապատրաստումը շարունակվում է և որոշակի իմաստով նույնիսկ ուժեղանում: Ծարունակվում է սպառազինությունների մրցավազքը, որը չարագուշակ ստվեր է գցում միջազգային հարաբերությունների զարգացման վրա: Բավական է ասել, որ վերջին երեք տարում, այսինքն՝ այն տարիներին, երբ այնքան շատ բան կատարվեց լարվածությունը մեղմացնելու համար, ռազմական նպատակներով ամբողջ աշխարհում ծախսվել է ավելի քան 600 միլիարդ դոլար: ՆԱՏՕ-ի երկրների ռազմական բյուջեները ամեն տարի մեծանում են միլիարդավոր դոլարներով: Չտեսնված մասշտաբներ է ստացել սպառազինությունների որակական կատարելագործումը:

Մի խոսքով, իմպերիալիզմը զենքերը ցած չի դնում: Այդ են վկայում և սոցիալիստական պետությունների նկատմամբ թշնամական պրոպագանդիս-

մասին հետևությունը: Սակայն տնտեսական անն ամենևին չի վկայում կապիտալիզմի ինչ-որ առողջացման մասին: Նեխումն ու պարազիտիզմը, ինչպես նշում էր Լենինը, ամենևին հավասարազոր չեն տնտեսական աճի դադարեցմանը: Նեխման իսկական իմաստը Լենինը համարում էր այն, որ բուրժուազիան գնալով ավելի պակաս ունակ է դառնում ռացիոնալ օգտագործելու արտադրաուժերը, որ անում է զարգացման անհավասարաչափությունը ճյուղերի և երկրների միջև, ուժեղանում են պարազիտիզմի դրսևորումներն ու մըշտական ցնցումները կապիտալիզմի էկոնոմիկայում: Այս բոլոր երևույթների հետևանքով առկա են մշտական գործազրկությունը, թանկությունը, անվըստահությունը վաղվա օրվա նկատմամբ:

Բուրժուական ջատագովները պնդում են, թե իբր կապիտալիզմի պլանաչափության և կազմակերպվածության սկզբունքները հաղթող են դուրս գալիս տարերքի սկզբունքների նկատմամբ, թե իբր բուրժուական կարգը դարձել է կարգավորվող սիստեմ: Բայց իրականությունն ամբողջովին հերքում է այդ ջատագովներին: Պլանաչափությունը ուժեղացնելու փորձերը չեն վերացրել արտադրության և փոխանակության կապիտալիստական անարխիան՝ դրանց բոլոր ավերիչ հետևանքներով: Օրինակ, վալյուտային ոլորտի այն քաոսը, որ այժմ տիրում է կապիտալիզմի աշխարհում, նախկինում չի եղել:

Խաղաղ ժամանակի համար աննախադեպ, անզուսպ ինֆլյացիան, ջղակծկումներով անցումները բումերից լճացումների, մշտական անկայունությունը, մի՞թե սրանք չեն վկայում «պլանային կապիտալիզմի» բուրժուական կոնցեպցիաների սնանկության մասին: Միմյանց հակասող գործոնների միացումը, այսինքն՝ մոնոպոլիաների և մրցակցության, պլանաչափության և շուկայական տարերքի փորձերի, կապիտալիստական կազմակերպման և արտադրության անարխիայի միացումը՝ ահա սա է ժամանակակից կապիտալիզմի տնտեսական ու սոցիալական ամենասուր հակասությունների խորքային հիմքը, որ մատնանշել է Լենինը:

Ամենից ավելի աղաղակող և միաժամանակ վտանգավոր ձևը, որով արտահայտվում է նեխումը, ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի վիթխարի ուռճացումն է, միլիտարիզմի աճը: Ռազմական բիզնեսի հետ կապված մոնոպոլիաները ավելի շուտ գերադասում են աշխարհը պահել «պատերազմի եզրին», քան համաձայնել սպառազինությունների մրցավազքի սահմանափակմանը, կամ առավել ևս՝ զինաթափմանը:

Նման դրության ամբողջ հակաբնականությունը առանձնապես ցցուն երևան է գալիս այժմ, երբ համաշխարհային հասարակայնության համար ակնբախ են սոցիալիզմի խաղաղասիրական քաղաքականությունը, նրա մըշտական նախաձեռնությունները, որոնք ուղղված են ռազմական ծախսերի կրճատման և զինաթափման նպատակին:

ԱՄՆ-ում նույնիսկ մարքսիզմից հեռու կանգնած մարդիկ խոստովանում են, որ ռազմականացումը լրջորեն ձևախախտում է էկոնոմիկան, պլանդակում ամբողջ սոցիալական զարգացումը, հանգեցնում ռեսուրսների վիթխարի շռայլումների: Այսպես, Ամերիկյան տնտեսական ասոցիացիայի նախկին նախագահ Կ. Բոուլդինգը հայտարարել է. «ԱՄՆ-ի պաշտպանության մինիստրությունը տնտեսական մեծ վնաս է հասցնում Միացյալ Նահանգներին. նա ներքին սպառումը կրճատում է մոտավորապես 15 տոկոսով և աճի ռեսուրսները նետում է զենքի մրցակցող սիստեմների անտակ հորը... Ռազմական մեքենան մի քաղցկեղի ուռուցք է ամերիկյան հասարակության մարմնին»: Միլիտարիզմի ավերիչ ազդեցությունը զգացվում է նաև կապիտալիստական մյուս պետություններում:

Վերցնենք բնական միջավայրի պրոբլեմը: Մոնոպոլիստական մրցավազքը շահույթի համար օրեցօր ընդարձակում է բնական ռեսուրսների գիշատիչ շահագործման չափերը, քայքայում շրջապատող միջավայրը: Այդ երևույթի չափերն առանձնապես մեծ են ԱՄՆ-ում: Բայց կապիտալիստական մյուս երկրներում ևս էկոլոգիական հաշվեկշռի պահպանումը դարձել է սոցիալական ամենասուր պրոբլեմ:



Կապիտալիզմի նեխումը հարանուն ուժով իրեն զգացնել է տալիս քաղաքական բնագավառում: Այդ մասին են վկայում ռեակցիայի ու ֆաշիզմի ուժեղացման տենդենցները: Իմպերիալիզմի թշնամանքը դեմոկրատիայի նկատմամբ դրսևորվում է և արյունալի հեղաշրջումների տեսքով, ինչպես Չիլիում, և գործադիր իշխանության չարաշահումների ձևով: Ամենուր թափանցող կոռուպցիան, կաշառակերությունը կառավարական ապարատի ամենաբարձր ատյաններում անգամ, աճող հանցագործությունը, բարոյականության անկումն ու հոգեկան ամայացումը դարձել են իմպերիալիստական սիստեմի անբաժան գծերը: Հարատև ճգնաժամ է ապրում բուրժուական գաղափարախոսությունը:

Իմպերիալիզմի **երրորդ** առանձնահատկությունը, որ նշում է Լենինը, այն է, որ դա մեռնող կապիտալիզմ է, այսինքն՝ իր դարն ապրող կարգ, որը պատմության կողմից դատապարտված է իր տեղը զիջելու սոցիալիզմին:

Սոցիալիստական հեղափոխությունների և կապիտալիզմից նախ հսկայածավալ Ռուսաստանի, իսկ ապա նաև մի շարք այլ երկրների անջատման շնորհիվ վերացավ իմպերիալիզմի համաշխարհային տիրապետությունը: Իսկ գաղութային սիստեմի ոչնչացմամբ գնալով ավելի են սահմանափակվում իմպերիալիզմի հնարավորությունները՝ շահագործելու և ենթարկելու «երրորդ աշխարհի» երկրները:

Ներկայումս բուրժուական հասարակությունը կանգնած է իր բոլոր հակասությունների այնպիսի սրման առջև, որը թույլ է տալիս խոսելու կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի մեջ որոշակի որակական տեղաշարժի, այդ ճգնաժամի համակողմանի խորացման մասին:

— Դա իմպերիալիզմի տնտեսական բազայի ճգնաժամն է, մի ճգնաժամ, որը դուրս է գալիս ցիկլային անկումների շրջանակներից և արտահայտվում է, ամենից առաջ, տենդային ինֆլյացիայի, խաղաղ ժամանակ գների ընդհանուր բարձրացման մեջ:

— Դա վալյուտային ճգնաժամն է, որը մինչև հիմքերը ցնցել է կապիտալիստական մի շարք երկրների վալյուտաները:

— Դա իմպերիալիզմի և գաղութային ճնշումից ազատագրված երկրների միջև հարաբերությունների ամբողջ սիստեմի ճգնաժամն է:

— Դա իմպերիալիստական լագերի ուժի ժամանակակից կենտրոնների՝ ԱՄՆ-ի, Արևմտյան Եվրոպայի և Ճապոնիայի միջև հարաբերությունների ճգնաժամն է:

— Դա էներգետիկ ճգնաժամ է, որն այժմ կապիտալիստական պետություններում ընդունել է իսկական աղետի բնույթ:

— Դա էկոլոգիական ճգնաժամ է՝ սուր բախում բնական միջավայրի հետ— դրա գիշատչական, կապիտալիստական շահագործման հետևանքով:

— Դա իմպերիալիզմի ամբողջ արտաքին քաղաքական կուրսի և ռազմա-քաղաքական շատ դոկտրինաների ճգնաժամն է, որոնց նպատակն է զենքի ուժով ճնշել սոցիալիզմը:

— Դա, վերջապես, քաղաքական և գաղափարական ճգնաժամ է, որն արտահայտվում է կապիտալիզմի «ներքին ճակատում», այսպես ասած՝ նրա միջնաբերդում, դասակարգային պայքարի համակողմանի սրման մեջ:

Վերջին ամիսներին կապիտալիստական էկոնոմիկայի վրա դրամատիկորեն անդրադարձավ «նավթի սովի» ազդեցությունը: Այստեղ մի կծիկի մեջ միահյուսվել են և՛ մոնոպոլիաների գիշատչական տնօրինության հետևանքները, և՛ իմպերիալիզմի ու «երրորդ աշխարհի» հակասությունների խորացումը, և՛ ֆինանսական կապիտալի ամեն կարգի սպեկուլյատիվ մեքենայությունները, և՛ միջիմպերիալիստական մրցակցությունը:

Խարխլվում է իմպերիալիզմի ռազմա-քաղաքական բլոկների գլոբալ սիստեմը: Այժմ համառ փորձեր են ձեռնարկվում՝ շտկելու դրությունը, նորացնելու դաշինքների այդ սիստեմը: Օրինակ, առաջ է քաշված նոր Ատլանտյան խարտիայի գաղափարը և այլն: Սակայն, եթե քննության առնենք իմպերիալիստական լագերի պրոցեսների ամբողջությունը, ապա ուրվագծվում է միջիմպերիալիստական պայքարի է՛լ ավելի սաստկացող հեռանկարը:

Բացահայտորեն կրախի են մատնվում նրանց հույսերը կապիտալիստական պետությունների ներսում երկարատև ու հաստատուն սոցիալ-քաղաքական կայունացման նկատմամբ: Բնակչության լայն խավերում աճում է այն գիտակցությունը, որ պիտանի ու ընդունելի չեն գոյություն ունեցող կապիտալիստական կարգերը, և որ անհրաժեշտ է արմատապես փոխել դրանք:

Հասարակական զարգացման դիալեկտիկան այնպիսին է, որ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խորացման հետ զուգընթաց նրա ընդերքում աճում և ամրապնդվում են հասարակական այն ուժերը, որոնք հանդես են գալիս կապիտալիստական կարգի դեմ: Անշեղորեն աճում է վարձու աշխատանքի բանակը, որի կորիզը արդյունաբերական պրոլետարիատն է: Այդ բանակը ոչ սոցիալիստական աշխարհում կազմում է մոտ 500 միլիոն մարդ: Սա վիթխարի հասարակական ուժ է: Բանվոր դասակարգը վճռական դիրք է գրավում կապիտալիստական սիստեմի գլխավոր կենսական կենտրոններում, զգալիորեն աճել են նրա ուժն ու ազդեցությունը, նրա կազմակերպվածությունը:

Ուժեղանում է բանվոր դասակարգի ճնշումը: Գործադուլային մարտերի և մասսայական այլ ելույթների մասնակիցների թիվը միայն զարգացած կապիտալիզմի գոտում 1973 թ. կազմել է 45 միլիոն մարդ: Պայքարն առանձնապես շիկացել է վերջին ամիսներին: Ամեն մի օրը նորանոր տեղեկություններ է բերում իրենց արդարացի պահանջները պաշտպանող գործադուլավորների անձնազոհության և համառության, բանվորների մարտական, հարձակողական ոգու մասին, բողոքների հարաճուն ալիքի մասին ընդդեմ այն քաղաքականության, որը ձգտում է ճգնաժամը հաղթահարել աշխատավորների հաշվին, գնալով ամրապնդվող պրոլետարական համերաշխության մասին: Գործադուլները հաճախ վերածվում են ցույցերի ու միտինգների, ձեռնարկությունների գրավման, ազգային արհմիութենական կենտրոնների ու կառավարությունների սուր ընդհարումների: Գործը հասնում է ոստիկանության հետ լուրջ ընդհարումների:

Իսկ գլխավորը՝ որակական էական տեղաշարժ է կատարվում աշխատավորների դասակարգային պայքարի բովանդակության մեջ: Այդ պայքարը գնալով ավելի շատ է ուղղվում պետական-մոնոպոլիստական տիրապետության բուն սիստեմի դեմ: Բանվոր դասակարգը ժողովրդի անունից հաշիվ է ներկայացնում խոշոր կապիտալի իշխանությանը: Նա գնալով ավելի բարձրաձայն է հայտարարում իր իրավունքի մասին՝ աշխատավորների մյուս խավերի հետ համատեղ լուծելու ազգային զարգացման արմատական հարցերը ի շահ ժողովրդի, այլ ոչ թե մի բուռ մոնոպոլիաների: Գյուղացիության պայքարի ծավալումը, ուսանողության, երիտասարդական մյուս ջոկատների խոշոր ելույթները, մտքերի ռադիկալացումը ինտելիգենցիայի շրջանում և ուրիշ շատ փաստեր խոսում են հեղափոխական շարժման աճի մասին:

Իհարկե, պրոլետարիատի պայքարը բնութագրվում է ոչ միայն հաջողություններով: Բանվորների որոշ խավեր պասսիվ դիրք են բռնում կամ գերի են ռեֆորմիստական պատրանքներին: Ինչպես պրոֆեսիոնալ, այնպես էլ քաղաքական կազմակերպվածությունը մի շարք երկրներում դեռ չի հասել այն մակարդակին, որը համապատասխանում է դասակարգային պայքարի արդի էտապի պահանջներին: Ընդհանուր առմամբ, սակայն, բանվոր դասակարգի պայքարը հաջող է զարգանում:

Իր ակտիվում նոր նվաճումներ ունի ազգային-ազատագրական շարժումը: Լրիվ իրականացել է Վ. Ի. Լենինի կանխատեսումն այն մասին, որ «համաշխարհային հեղափոխության ապագա վճռական ճակատամարտերում երկրագնդի բնակչության մեծամասնության շարժումը, որ սկզբում ուղղված էր ազգային ազատագրության նպատակին, կշրջվի կապիտալիզմի և իմպերիալիզմի դեմ....» (Երկեր, հատ. 32, էջ 622): Սոցիալիզմի օրինակն ու օգնությունը ռեալ հնարավորություններ ստեղծեցին ժողովուրդների ազգային ազատագրության, ոչ կապիտալիստական ուղիով երիտասարդ պետությունների զարգացման համար: Այսօր այդ ուղու վրա են կանգնել արդեն մի ամբողջ խումբ երկրներ՝ բնակչության վիթխարի զանգվածով:



Սոցիալիստական գաղափարների ժողովրդականությունը աճում է բոլոր երիտասարդ պետություններում, ամրապնդվում են հասարակական այն ուժերի դիրքերը, որոնք չեն ցանկանում իրենց ապագան կապել իմպերիալիզմի հետ, կապիտալիստական սիստեմի հետ, նկատելի առաջադիմական տեղաշարժեր են կատարվում մի շարք երկրների ներքին և արտաքին քաղաքականության մեջ: Այդ բանը այժմ բնորոշ է ոչ միայն, ասենք, Հնդկաստանի, Շրի Լանկայի, Նիգերիայի համար, որոնք վաղուց են հակաիմպերիալիստական դիրք գրավել, այլև մի քանի ուրիշ պետությունների համար, որոնք դեռ վերջերս էլ համարվում էին նեոգաղութատիրության հենակետերը: (Օրինակ՝ Տաիլանդը, Մալագաշյան Հանրապետությունը):

Հակաիմպերիալիստական շարժման հետագա վերելքի հիմքն են հակամարտության խորացումն ու սրումը իմպերիալիստական տերությունների և զարգացող երկրների միջև: Այստեղ մենք տեսնում ենք տարբեր տեսակի տենդենցներ:

Մի կողմից, դրանք նեոգաղութատիրության այն ձևերն են, որոնք կապված են վերազգային կորպորացիաների զարգացման հետ: Նրանց դեպի «երրորդ աշխարհի» երկրներն են ձգում և՛ հումքի աղբյուրները, և՛ էժան բանվորական ուժի առկայությունը: Միջազգային մոնոպոլիաները այդ երկրներում են կենտրոնացնում առավել աշխատատար արդյունաբերական ապրանքների արտադրությունը: Այլ կերպ ասած, աշխատում են զարգացնել շահագործման նոր ձևը:

Մյուս կողմից, ուժեղանում են միանգամայն այլ բնույթի պրոցեսները՝ կապիտալիստական Արևմուտքի խոշորագույն կորպորացիաների դիրքերի սահմանափակումը և նույնիսկ վերացումը զարգացող երկրներում: Եվ հենց այս համատեքստում էլ անհրաժեշտ է քննության առնել այդ երկրների՝ ամենից առաջ նավթ արտահանող, ինչպես նաև հումքի այլ տեսակներ արտադրող երկրների միջոցառումները, որոնց նպատակն է հանդես գալ միասնական ճակատով, կոլեկտիվ կերպով դիմագրավել իմպերիալիստական մոնոպոլիաների կողոպտչական քաղաքականությանը: Խոսքը ամենևին մի ինչ-որ անցողիկ փաստի մասին չէ, այլ իմպերիալիզմից տնտեսապես ազատագրվելու, տնտեսական անկախության, հետամնացության վերացման պայմաններ ստեղծելու համար «երրորդ աշխարհի» ժողովուրդների մղած պայքարում կատարված խոշոր տեղաշարժերի մասին:

Իհարկե, այն ամենը, ինչ ասվեց կապիտալիզմի ճգնաժամի մասին, կապիտալիստական սիստեմի ավտոմատ կրախ չի կանխագուշակում: Իմպերիալիզմի լենինյան տեսությունից բխող կարևորագույն հետևությունն այն է, որ այդ ճգնաժամը մի առանձնահատուկ ուժով է դնում արմատական հեղափոխական վերափոխումների անհրաժեշտության հարցը:

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ ԲՈԼՈՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՈՒԺԵՐԻ ԱՎԱՆԳԱՐԴՆ Է

Լենինիզմի հեղափոխական-վերափոխիչ բնույթն իր մարմնավորումն է գտնում միջազգային կոմունիստական շարժման գործունեության մեջ: Լենինիզմին տիրապետելը և պրակտիկայում նրա գաղափարներն ու սկզբունքները կիրառելը գլխավորն է այդ շարժման զարգացման մեջ: Լենինիզմի վրա հենվելով միայն, բանվոր դասակարգի կուսակցությունները կարող են ունենալ միակ ճիշտ, հեղափոխական պայքարի կոնկրետ պատմական պայմաններին համապատասխանող գիծ, սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի գիծ:

Վ. Ի. Լենինի բոլոր հիմնական դրույթներն ու հետևությունները փայլուն կերպով դիմացան պատմության դաժան ստուգմանը: Եվ դրանց թվում ամենից առաջ լենինյան սկզբունքային դրույթը նոր տիպի հեղափոխական կուսակցության դերի մասին: Քաջ հայտնի է, թե Լենինը ինչպիսի վճռականությամբ էր ձգտում, որ կոմունիստական կուսակցությունները դառնան իսկական մարտական ավանգարդներ, հեղափոխական գործողության իսկական կուսակցություններ: Կոմունիստները, ասում էր նա, պետք է և ազգային շըր-

ջանակներում և համաշխարհային ասպարեզում հանդես գան այնպես, «որ **բոլոր** մյուս ջոկատները տեսնեն և ստիպված լինեն ընդունել, որ մենք առջևից ենք գնում» (Երկեր, հատ. 5, էջ 565):

Կապիտալիստական աշխարհի կոմկուսակցությունների մեծ մասն այժմ ծավալվող տնտեսական ճգնաժամի կապակցությամբ մոնոպոլիաների ու կառավարությունների գործողությունների դեմ մասսաների մղած պայքարի առաջին շարքերում է: Նրանք աշխատավարձի ու զբաղվածության հարցերի համար, ինֆլյացիայի ու թանկության կատաղի աճի, գործազրկության, աշխատավորների սոցիալական նվաճումների սահմանափակման դեմ, արհմիությունների գործողությունների ոլորտի ու իրավունքների ընդլայնման համար մղվող դասակարգային մարտերի առաջավոր գծում են: Կոմունիստները բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների կենսական շահերի համար պայքարող ամենաակտիվ, անձնազոհ մարտիկներն են: Նրանք մասսաներին մոբիլիզացնում են աջ վտանգի, ֆաշիստական սպառնալիքի և դիկտատորական ռեժիմների դեմ: Կոմունիստները գլխավոր հենարանը և ամենամարտունակ ու կազմակերպված ուժն են ժողովրդի դեմոկրատական նվաճումները պաշտպանելու, իսկական ազգային նպատակներ հետապնդելու գործում: Բուրժուական և ռեֆորմիստական գաղափարախոսության դեմ, տարբեր կարգի ռևիզիոնիստների ու «ձախերի» դեմ մղվող ամենաասուր պայքարում կոմունիստներն ապահովում են բանվոր դասակարգի քաղաքական գիտակցության աճը, ձգտում են նրա սեփական միասնությանն ու նրա շուրջը աշխատավորների մյուս խավերի համախմբմանը: Մասսաների մարտունակության, սեփական ուժերի նկատմամբ վստահության բարձրացման գործում հսկայական դեր ունեն հակակոմունիզմի և հակասովետիզմի մերկացումը, լենինիզմի գաղափարների, իրական սոցիալիզմի նվաճումների պրոպագանդումը կոմունիստների կողմից, դրա պաշտպանությունը դասակարգային թշնամու և տարբեր տեսակ զրպարտիչների ոտնձգություններից:

Կոմունիստների ուժն այն է, որ նրանք աշխատավորների ամենօրյա, կենսական կարիքների ու շահերի համար մղած պայքարը միացնում են ամբողջ շահագործողական հասարակարգի դեմ, սոցիալիստական հեռանկարի համար մղած պայքարի հետ:

Վ. Ի. Լենինը կոմունիստներին հետևողականորեն սովորեցնում էր տիրապետել դասակարգային պայքարի օրենքները: Ընդհանրացնելով դասակարգային մարտերի ամենահարուստ փորձը, նա ընդգծում էր, որ «քաղաքականությունը մի այնպիսի գիտություն ու արվեստ է, որ երկնքից վայր չի ընկնում, ձրիաբար չի տրվում, և որ պրոլետարիատը, եթե նա ուզում է հաղթել բուրժուազիային, պետք է իր համար պատրաստի **իր** պրոլետարական «դասակարգային քաղաքագետները», և այնպիսիներ, որ բուրժուական քաղաքագետներից վատը չլինեն» (Երկեր, հատ. 31, էջ 82):

Դասակարգային հակասությունների սրությունը ամբողջ կապիտալիստական սիստեմում, մասսաների դրության անկայունությունն ու դժգոհությունը բուրժուական շատ պետություններում այսօր հասել են այնպիսի աստիճանի, որ ցանկացած պահին այդ սիստեմի այս կամ այն օղակում կարող է ծագել մի իրադրություն, որը ճանապարհ կբացի արմատական հասարակական վերափոխումների համար: Այդ իրադրության մեջ անչափ աճում է սուբյեկտիվ գործոնի, այսինքն՝ մարքս-լենինյան կուսակցության ճիշտ և ներգործուն քաղաքականության դերը: Բանվոր դասակարգի ավանգարդի քաղաքականության ճշտությունը, վճռականությունը, հեղափոխական պատրաստակամությունն ու ակտիվությունը, հավատարմությունը լենինյան ստրատեգիական ու տակտիկական սկզբունքներին՝ եղած հնարավորությունների իրականացման ամենաառաջին պայմանն է:

Բազմազան են դասակարգային պայքարի քաղաքական ղեկավարության անհրաժեշտ մակարդակն ապահովելու ուղիներն ու ձևերը:

Դա, նախ, գիտականորեն հիմնավորված դասակարգային քաղաքականության մշակումն ու կատարելագործումն է:



Երկրորդ, դա ինչպես իր երկրի բանվոր դասակարգի հանդեպ, այնպես էլ միջազգային բանվորական շարժման հանդեպ իր պատասխանատվության խոր ըմբռնումն է կուսակցության կողմից, միասնության ամրապնդումը մարքս-լենինյան մյուս կուսակցությունների հետ, հեղափոխությունների և սոցիալիստական շինարարության պատմական փորձի համակողմանի ուսումնասիրումն ու յուրացումը:

Երրորդ, դա մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացումն է և պայքարը նրա անաղարտության համար՝ ընդդեմ աջ և «ձախ» օպորտունիզմի ամեն տեսակ դրսևորումների:

Չորրորդ, դա կուսակցական կյանքի նորմերի և դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների հետևողական պահպանումն է, կուսակցության շարքերի գաղափարախոսական ու քաղաքական միասնության, նրա մարտունակության ապահովումը:

Վերջապես, դա ոչ միայն հաջողություններից ու հաղթանակներից, այլև անհաջողություններից ու պարտություններից հետևություններ անելու կարողությունն է:

Եվ լիակատար վստահությամբ կարելի է ասել. կոմունիստական շարժման բոլոր հաջողությունների, նրա բոլոր նշանավոր հաղթանակների հիմքում ընկած է կուսակցության ղեկավար ու կազմակերպող դերի մասին լենինյան ուսմունքի անշեղ կենսագործումը տարբեր երկրների կոմունիստների կողմից:

Անկախ այն բանից, թե խոսքը առանձին եղբայրական կուսակցությունների հեղափոխական պայքարի մասին է կամ ողջ կոմունիստական շարժման գործունեության մասին, կարևոր նշանակություն ունի աշխատավորների ոչ պրոլետարական խավերի հետ պրոլետարիատի լայն դասակարգային դաշինքների քաղաքականությունը: Վ. Ի. Լենինը, վճռականորեն ջախջախելով կաուցկիականների ու մենշևիկների դոկտրինյորական սխեմաները, մշակեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ուսմունքը: Այդ դաշինքը մեր երկրում ուղի բացեց սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի հաղթանակի **համար:**

Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի լենինյան հանճարեղ գաղափարը իր ամբողջ նշանակությունը պահպանում է նաև ժամանակակից պայմաններում: Դրա հետ մեկտեղ կոմունիստները հաշվի են առնում կապիտալիստական հասարակության սոցիալական կառուցվածքում կես դարում տեղի ունեցած խոր փոփոխությունները: Վ. Ի. Լենինը հարցը լայնորեն էր դնում, նա խոսում էր գյուղացիության և բոլոր աշխատավոր ու շահագործվող մասսաների հետ բանվոր դասակարգի դաշինքի մասին: Զարգացած կապիտալիզմի երկրներում այսօր աշխատավոր և շահագործվող մասսաներին են պատկանում մտավոր ոլորտի աշխատողների արագ աճող խավը, ինչպես նաև քաղաքային միջին խավերը, որոնք թվական առումով արդեն գերազանցում են գյուղացիությանը: Հետևելով Լենինին, կոմունիստները այդ երկրներում այժմ պայքարում են հանուն աշխատավորների այդ կատեգորիաների հետ բանվոր դասակարգի դաշինքի:

Այժմ եղբայրական կուսակցություններն արդարացիորեն ուշադրություն են նվիրում աջ վտանգի աճին: Չիլիի ամենաասուր, դրամատիկական իրադարձությունները հրամայաբար հիշեցրին ռեակցիայի մեքենայությունների նկատմամբ մշտական զգոնության անհրաժեշտության մասին: Օգտագործելով աճող սոցիալական անկայունության և ճգնաժամային երևույթների իրադրությունը էկոնոմիկայում, շատ երկրների ռեակցիոն, այդ թվում և նեոֆաշիստական ուժերը, փորձում են մասսաների, ամենից առաջ բնակչության միջին խավերի, դժգոհությունը սևեռել ձախ ուժերի և կոմունիստների դեմ, մասսայաբար դիմելով նաև սոցիալական դեմագոգիայի:

Խոսքը հեռավոր նպատակակետ ունեցող քաղաքականության մասին է, որով նրանք հույս ունեն սեպ խրել բանվոր դասակարգի ավանգարդի և մասսաների միջև, կոմկուսակցությունների և Սովետական Միության, սոցիալիստական ամբողջ համագործակցության միջև և դրանով իսկ փոխել ամբողջ

քաղաքական իրադրությունը, դեպի աջ շարժել քաղաքական կյանքի առանցքը:

Հայտնի է, որ հակամոնոպոլիստական ուժերի համախմբման հաջողությունները ուղիղ համեմատական են հենց բանվոր դասակարգի միասնության համար մղվող պայքարի նվաճումներին: Բանվոր դասակարգի միասնությունը և նրա ղեկավարությամբ դասակարգային լայն դաշինքների ստեղծումը դասակարգային պայքարի հաջողության երկու փոխադարձաբար կապված պայմաններն են:

Այդ կապակցությամբ հրատապ նշանակություն ունի կոմունիստների և սոցիալ-դեմոկրատների հարաբերությունների հարցը: Բոլորիս աչքերի առջև են միջազգային բանվորական շարժման երկու ուղիների արդյունքները 50 տարում՝ Վ. Ի. Լենինի մահից հետո: Դրանք համոզիչ կերպով վկայում են լենինիզմի հաղթանակը սոցիալ-ռեֆորմիզմի հետ եղած պատմական վեճում: Դրանք հաստատում են նաև մեկ ուրիշ բան. որ բանվոր դասակարգի պառակտումը շահավետ է ռեակցիայի ու ֆաշիզմի ուժերի համար, որ այնտեղ, ուր հաջողվել է հասնել փոխըմբռնման, բանվորական շարժման տարբեր հոսանքների միջև համագործակցության, այնտեղ հաղթել են աշխատավորների շահերը, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործը:

Այժմ, միջազգային մեղմացման պայմաններում, սոցիալ-դեմոկրատիայի շարքերում կատարվում են որոշակի տեղաշարժեր: Դրանց ամենից ավելի վառ արտահայտությունը եղան մի կողմից Եվրոպայի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների մեծ մասի ղեկավարության ձգտումը՝ զարգացնելու կոնտակտները սոցիալիստական աշխարհի հետ, իսկ մյուս կողմից՝ բանվորական շարժման տարբեր ջոկատների գործողությունների միասնության համար արված իրական ու կարևոր քայլերը մի քանի երկրներում, օրինակ, Ֆրանսիայում: Բայց, իհարկե, տվյալ դեպքում խոսքը սոցիալ-դեմոկրատիզմի քաղաքականության և տեսության դեմ գաղափարական պայքարը ինչ-որ չափով թուլացնելու մասին չէ և չի էլ կարող լինել: Բանվոր դասակարգի միասնության մարքս-լենինյան գիծը, սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների հետ կապերի զարգացման գիծը անբաժանելի է սոցիալ-դեմոկրատիզմի սխալ, բանվորական շարժման համար վնասակար դիրքերի ու հայացքների դեմ մղվող սկզբունքային պայքարից:

Լենինյան գաղափարները այսօր բանալի են տալիս նաև հասկանալու կոմունիստների և զարգացող երկրների հեղափոխական դեմոկրատների սերտ համագործակցության անհրաժեշտությունը: Նման համագործակցությունը զարգացող շատ երկրներում կարող է դառնալ միասնական հակաիմպերիալիստական ճակատի կուսակցական-քաղաքական հիմքը:

Սակայն, չի կարելի աչքերը փակել ու չտեսնել, որ այդ ճանապարհին հանդիպում են նաև դժվարություններ, որոնք կապված են ամենից առաջ հակակոմունիստական հայացքների ու նախապաշարմունքների հետ: Բայց դրանք հաղթահարելի դժվարություններ են: Այդ են վկայում կապերի ընդլայնումն ու ամրապնդումը կառավարող կոմունիստական և հեղափոխական-դեմոկրատական կուսակցությունների միջև: Այդ է վկայում նաև այն փորձը, որ կուտակվել է, օրինակ, այնպիսի երկրներում, ինչպիսիք են Սիրիան և Իրաքը, որտեղ ստեղծվել են առաջադիմական ազգային-հայրենասիրական ճակատներ կոմկուսակցությունների մասնակցությամբ, ընդունվել են գործողությունների համատեղ ծրագրեր:

Բանվոր դասակարգի հաղթանակների ու պարտությունների փորձը մըշտապես հիշեցնում է հեղափոխության հաղթանակի ուղիների ճիշտ մեկնաբանման անհրաժեշտությունը: Հայտնի է, որ մարքսիստ-լենինյանները հնարավոր են համարում, նայած իրադրությանը, հեղափոխության զինված կամ ոչ զինված ուղին: Այնտեղ, որտեղ հնարավորություն կա հեղափոխության խաղաղ զարգացման համար, կոմունիստները կողմնորոշվում են դեպի այդ ուղին: Բայց քաղաքականության մեջ, ընդգծում էր Լենինը, չի կարելի նախօրոք հաստատ իմանալ, թե «պայքարի ինչպիսի միջոց այս կամ այն ապագա



պայմաններում կիրառելի կամ ձեռնտու կլինի մեզ համար: Պայքարի բոլոր միջոցներին չտերապետելով, մենք կարող ենք վիթխարի, երբեմն, նույնիսկ վճռական, պարտություն կրել, եթե մյուս դասակարգերի դրության մեջ մեր կամքից անկախ տեղի ունեցած փոփոխություններն օրակարգի հարց դարձնեն գործունեության այնպիսի ձև, որի մեջ մենք առանձնապես թույլ ենք: Տիրապետելով պայքարի բոլոր միջոցներին, մենք անշուշտ կհաղթենք...» (Երկեր, հատ. 31, էջ 103):

Տարիներ շարունակ հակակոմունիզմի գաղափարախոսները պնդում էին, թե կոմունիստները դեմ են դեմոկրատիային, թե հեղափոխության խաղաղ ուղին լոկ տակտիկական պրիոմ է: Այժմ Չիլիի փորձով ամբողջ աշխարհը մի անգամ ևս իր աչքով տեսավ, թե իրականում **ով** է դեմոկրատիայի թշնամին, **ով** է ոտնահարում օրենքները, **ով** է դիմում տեռորի: Այդ բանն անում է հենց բուրժուական ռեակցիան:

Արդիականության դասերը վերստին հաստատում են լենինյան հետևության խոր ճշմարտացիությունը. հեղափոխական դասակարգը պետք է միշտ պատրաստ լինի իր նվաճումները պաշտպանելու հակահեղափոխության գրոհներից, արագորեն փոխելու պայքարի ձևերը, պատրաստ լինի, որ հեղափոխական գործողություններով պատասխանի բուրժուազիայի ռեակցիոն բռնությանը:

Ժամանակակից պայմաններում համաշխարհային դասակարգային հակամարտության առավել կարևոր ուղղությունն է դառնում գաղափարախոսական պայքարը: Եվ դա միանգամայն օրինաչափ է: Կոմունիստները գաղափարախոսական պայքարը միշտ էլ համարել են ոչ միայն և ոչ պարզապես իբրև գաղափարների ու հայացքների, տեսական կոնցեպցիաների բախում, այլ որպես եղբայրական կուսակցությունների մասսայական քաղաքական աշխատանքի կարևոր բաղկացուցիչ մաս, որպես մասսաների քաղաքական լուսավորության ու մոբիլիզացման միջոց:

Պատմության մեջ քաղաքական ոչ մի շարժում իր ակտիվում չի ունեցել և չունի ինտերնացիոնալիստական այնպիսի մեծ գործողություններ, ինչպես կոմունիստական շարժումը: Դիմելով Կոմինտերնի V՝ Լենինի մահից հետո գումարված առաջին կոնգրեսի պատգամավորներին, Մ. Ի. Կալինինը ասում էր. «Այն, ինչ մենք անվանում ենք լենինիզմ, իր մեջ ընդգրկում է ամենահետևողական, ամենալրիվ, ամենաներգործուն ինտերնացիոնալիզմ»:

Մեր կուսակցությունը հպարտանում է այն բանով, որ իր ամբողջ պատմության ընթացքում անշեղորեն հանդես է եկել որպես ինտերնացիոնալիստների կուսակցություն: Սովետական մարդիկ վճռականորեն կանգնեցին իսպանական հանրապետականների, գերմանական, իտալական, հունգարական հակաֆաշիստների կողմը: Սովետական Միությունը հսկայական աջակցություն ցույց տվեց չինական հեղափոխությանը, ճապոնական զավթիչների դեմ Չինաստանի ժողովրդի մղած պայքարին, Չինական Ժողովրդական Հանրապետության կազմավորմանը: Ուս-ուսի ընթանալով սոցիալիստական մյուս պետությունների ժողովուրդների հետ, մենք նրանց հետ միասին ստեղծեցինք ու ամրապնդեցինք սոցիալիստական ընկերակցությունը:

Սովետական կոմունիստները վճռականորեն հանդես եկան հեղափոխական Կուբայի դեմ ձեռնարկված ոտնձգությունների դեմ, Վիետնամում և Հնդկաչինի մյուս երկրներում իմպերիալիստական ագրեսիայի դեմ: Սովետական Միությունը հետևողականորեն պաշտպանում է արաբական երկրների ժողովուրդներին, բոլոր այն ժողովուրդներին, որոնք պաշտպանում են իրենց ազատությունն ու անկախությունը:

Իմպերիալիզմի, ռեակցիայի, ֆաշիզմի դեմ պայքարող հազարավոր մարտիկներ ապաստան են գտել ու գտնում են մեր երկրում: Մենք միշտ մեր ինտերնացիոնալ պարտքն ենք համարել պաշտպանել ոստիկանական ռեպրեսիաների զոհ դարձած արտասահմանյան կոմունիստներին ու դեմոկրատներին: Այժմ ամբողջ աշխարհով մեկ հնչում է սովետական ժողովրդի ձայնը,

որը զայրույթով դատապարտում է ռազմա-ֆաշիստական կլիկի ոճրագործությունները Չիլիում:

Միաժամանակ ՍՄԿԿ-ն, սովետական ժողովուրդը իրենց ճանապարհի բոլոր էտապներում՝ և՛ սովետական իշխանության հաստատման համար մղած պայքարում, և՛ սոցիալիզմի շինարարության ժամանակ, և՛ «սառը պատերազմի» տարիներին, և՛ մեղմացումը ամրապնդելու համար մղած պայքարում, շարունակ զգում են մյուս երկրների կոմունիստների եղբայրական համերաշխությունն ու աջակցությունը: Երկրորդ համաշխարհային պատերազմում շատ երկրների կոմունիստներ զենքը ձեռքներին մարտնչում էին ընդհանուր թշնամու՝ ֆաշիզմի դեմ:

Ինտերնացիոնալիզմը ենթադրում է մշտական հոգատարություն եղբայրական կուսակցությունների փոխհարաբերությունների այնպիսի ձևերի մշակման մասին, որոնք համապատասխանեն համաշխարհային իրադրությանը և կոմունիստական շարժման պահանջներին: Միջազգային կոմունիստական շարժման շրջանակներում եղբայրական կուսակցությունների համագործակցության ներկայումս գործող սիստեմը իր մեջ ընդգրկում է նրանց գործունեության բոլոր ոլորտները, առաջվա նման ամուր հենվելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքների վրա: Եղբայրական կուսակցությունների համատեղ գործողություններում, միջկուսակցական լայն ու սիստեմատիկ կապերի մեջ, կոլեկտիվ տեսական աշխատանքում, ռեգիոնալ և համաշխարհային հանդիպումներում հարստանում և զարգանում են պրոլետարական համերաշխության ավանդույթները, գործնականորեն մարմնավորվում են կոմունիստների միջազգային միասնության գաղափարները:

Անցած տարիների արդյունքները ցույց են տալիս, թե ինչպիսի վիթխարի ինտերնացիոնալ դեր կատարեց 1969 թվականի միջազգային խորհրդակցությունը: Ոչ ոք, ոչ սոցիալ-ռեֆորմիստները, ոչ մաոիստները, չխոսելով արդեն իմպերիալիստական բուրժուազիայի մասին, ոչինչ չկարողացան հակադրել կոմունիստների առաջ քաշած ծրագրին: Խորհրդակցության ընդունած միասնական հակաիմպերիալիստական գործողությունների պլատֆորմի կենսունակությունը ապացուցվել է նրանով, որ այն նշանակալի չափով արդեն կատարվել է:

Մեր օրերում առավել բազմազան են դառնում հեղափոխական պայքարի պայմանները և դրա հետ մեկտեղ խիստ անում են յուրաքանչյուր կուսակցության ինտերնացիոնալ խնդիրների ծավալն ու նշանակությունը: Ուժեղանում է նաև ազգային խնդիրների լուծման նկատմամբ ինտերնացիոնալիստական մոտեցման անհրաժեշտությունը: Ինքը՝ կյանքը, համաշխարհային կոմունիստական շարժման ուժերի հետագա համախմբման ու մոբիլիզացման ասպարեզում նոր խոշոր նախաձեռնությունները օրակարգի հարց է դարձնում:

Մենք կարող ենք համարձակ ասել. կոմունիստներին է պատկանում մարդկային հասարակության բուն ճակատագրի հետ կապված արմատական հարցերը առաջ քաշելու նախաձեռնությունը: Կոմունիստները գործում են մեր ժամանակի քաղաքական խոշորագույն ճակատամարտերի գլխավոր ուղղություններում՝ սոցիալիզմի և կոմունիզմի, խաղաղության և ժողովուրդների անվտանգության, ժողովուրդների ազգային և սոցիալական ազատագրության համար, ռեակցիայի ու իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում:

Լենինի ուսմունքին հավատարիմ կոմունիստական շարժումը լի է պատմական լավատեսությամբ: Նա գիտե, որ գալիք մարտերը ավելի մեծ հաջողություններ կբերեն լենինիզմին: Աշխարհի վրա գնալով ավելի պայծառ է բոցկլտում մեծ Լենինի վառած սոցիալիզմի ջահը: Բոլոր երկրների աշխատավորների համար այն լուսավորում է լավագույն ապագայի ուղին: Լենինիզմի ուղին ճշմարիտ ուղի է, դա հաղթանակի ուղին է:

«Коммунист», № 2, 1974.

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՆՈՐ ՓԱՍՏԱԹՂԹԵՐ

Ստորև ձեռագրի հիման վրա առաջին անգամ հրապարակվում են Վ. Ի. Լենինի երեք փաստաթղթերը՝ «Կ. Մարքսի մահվան 30-ամյակի առթիվ հոդվածների պլանի ուրվագիր»-ը և Վ. Ա. Ավանեսովին ուղղված երկու նամակները:

Հոդվածների պլանի ուրվագիրը Լենինը գրել է 1913 թվականի փետրվարի վերջին, երբ հեղափոխական սոցիալ-դեմոկրատիան պատրաստվում էր նշելու գիտական կոմունիզմի հիմնադրի մահվան 30 տարին: Պլանի այդ ուրվագրին համապատասխան Վ. Ի. Լենինը ստեղծում է այժմ լայնորեն հայտնի այնպիսի աշխատություններ, ինչպես «Մարքսիզմի երեք աղբյուրներն ու երեք բաղկացուցիչ մասերը» և «Կարլ Մարքսի ուսմունքի պատմական բախտը», որոնցում բացահայտում է Մարքսի ուսմունքի հեղափոխական մեծ ուժը. ստեղծագործաբար ընդհանրացնելով միջազգային բանվորական շարժման նոր փորձը, նա զարգացնում է մարքսիստական տեսության արմատական դրույթները:

Պլանի հրապարակվող ուրվագրի հիման վրա գրված հոդվածները տպագրվել են «Պրոսվեշչենիե» ժուռնալի № 3-ում 1913 թվականի ապրիլին և «Պրավդա» թերթում Կ. Մարքսի մահվան տարեդարձի օրը՝ 1913 թվականի մարտի 1 (14)-ին: Կիրակի օրը, մարտի 3 (16)-ին, լույս տեսավ «Պրավդա»-ի հատուկ համարը՝ նվիրված Մարքսին: Այդ համարում արծարծված էին պլանում ձևակերպված այլ թեմաներ: Մեկ տարի անց Լենինը «Կարլ Մարքս» վեցին լենինյան պլանում ձևակերպված այլ թեմաներ: Մեկ տարի անց Լենինը «Կարլ Մարքս» հոդվածի կառուցվածքը մշակելիս օգտագործեց մարքսիզմի հիմնական բաժինների ու պրոբլեմների այն ցանկը, որ նշված էր պլանի հրապարակվող ուրվագրում:

Զարգացնելով պլանի՝ համաշխարհային պատմության մեջ մարքսիզմի բախտին վերաբերող բաժինը, Լենինը մատնանշում էր, որ «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» ժամանակից ի վեր համաշխարհային պատմությունն անցել է երեք գլխավոր ժամանակաշրջան. առաջինը՝ 1848 թվականի հեղափոխությունից մինչև Փարիզի կոմունա (1871), երկրորդը՝ Փարիզի կոմունայից մինչև ռուսական առաջին հեղափոխությունը (1905), երրորդը՝ ռուսական հեղափոխությունից սկսած: «Մարքսիզմի երևան գալուց հետո,— գրում էր Լենինը,— համաշխարհային պատմության երեք մեծ դարաշրջաններից մեկը նրան նոր հաստատումներ և հաղթանակներ բերեց: Բայց մարքսիզմին, իբրև պրոլետարիատի ուսմունքի, է՛լ ավելի մեծ հաղթանակ կբերի գալիք պատմական դարաշրջանը» (Երկեր, հ. 18, էջ 740):

Մեծ Հոկտեմբերից ընդամենը չորս տարի առաջ գրված այս խոսքերը գիտական կանխատեսության օրինակ են:

Վ. Ա. Ավանեսովին հասցեագրված լենինյան նամակները վերաբերում են սովետական ժամանակաշրջանին և բնութագրում մեր կուսակցության վիթխարի աշխատանքը պետական ապարատի կատարելագործման ասպարեզում: Այդ նամակներում Լենինը դիտողություններ է անում ԲԳՏ-ի աշխատանքի մասին՝ Բանվորա-գյուղացիական տեսչության ժողկոմի տեղակալ Ավանեսովի զեկուցման թեզիսների վերաբերյալ, զեկուցում, որով նա պետք է հանդես գար սովետների համառուսաստանյան VIII համագումարում 1920 թվականի դեկտեմբերին:

Վ. Ի. Լենինը մանրամասն հանձնարարականներ է տալիս, թե ինչ ուղղությամբ է անհրաժեշտ շարունակել թեզիսների մշակումը, մատնանշում է, որ դրանք պետք է պարունակեն կուսակցության ծրագրի համապատասխան դրույթները. «Ընտրել և մեջ բերել ՌԿԿ ծրագրում բովանդակվածը... Կշռադատել, սիստեմավորել ծրագրի յուրաքանչյուր ցուցումը, յուրաքանչյուր միտքը առանձնացնել և դարձնել հատուկ կետ»: Նա գրում է, որ, զարգացնելով թեզիսների պլանը, հարկավոր է ծրագրի հիմնական դրույթներին համապատասխան՝ հետևություններ անել պետական ապարատի կատարելագործման, նրա պարզեցման ու բարելավման մասին, վերահսկողության օրգանների աշխատանքին, կառավարմանը, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացմանը հոծ զանգվածներին մասնակից դարձնելու անհրաժեշտության մասին:

Սովետական դեմոկրատիայի զարգացումը, սովետական պետության ամրապնդումը Լենինը համարում էր մեր կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը:

Փաստաթղթերը պատրաստված են հերթական՝ XXXVIII լենինյան ժողովածուում հրապարակելու համար:

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# Կ. ՄԱՐՔՍԻ ՄԱՀՎԱՆ 30-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ՈՒՐՎԱԳԻՐ

*[Փետրվար 1913 թ.]*

[4] [1]

((1) *Մարքսիզմի տեսական աղբյուրներն ու հիմունքները (Փիլիսոփայություն+քաղաքատնտեսություն+դասակարգային պայքար)։* x
2) *Մարքսի տնտեսագիտական ուսմունքը* (Mehrwert*)։ x
3) *Մարքսիզմի փիլիսոփայությունը։*
4) *Մարքսի՝ դասակարգային պայքարի ուսմունքը։*
[6—8] 5) *Մարքսիզմը և բանվորական շարժումը։*
6) *Մարքսիզմը և գյուղացիությունը։*
7) *Մարքսիզմը և սոցիալական հեղաշրջումները***։*
8) *Մարքսիզմը և ազգային հարցը։*

[9) *Մարքսիզմը և Ռուսաստանը 20-րդ դարում։*]

10) *Մարքսիզմի բախտը համաշխարհային պատմության մեջ*[2]*։*

| | | |
|---|---|---|
| 1842—1871 (29) | Եվրոպա—Եվրոպա — Ֆրանսիա—Ամերիկա<br>1848։ 1859—1871։ 1870—1։ 1861—5։ | 1872***<br>1904 (32) |
| 1871—1905 (34) | | |
| 1905— | Ռուսաստան—Պարսկաստան—Թուրքիա—<br>1905 1909 1909<br>Չինաստան<br>1911 | 1872<br>1899 (27)<br>1904 (5) |

[*Մարքսը և Ինտերնացիոնալը*]

## ՆԱՄԱԿ Վ. Ա. ԱՎԱՆԵՍՈՎԻՆ

*1/XI [1920]*

*Ընկ. Ավանեսո՛վ*[3]*։*

*Ըստ իս, պետք է վերամշակել թեզիսները։*
*Վերնագիրը փոխել։*
*Ենթավերնագիր՝* զեկուցման նախնական *թեզիսներ (20.XII)։*
*Բաժանել 3 մասի.*
*I. Սկզբունքային դրույթներ։*
*II. 7. II. 1920 դեկրետը*[4]*։*
*III. Բանգյուղտեսչության փորձը։*
I-ի վերաբերյալ.
*ընտրել և մեջ բերել ՌԿԿ ծրագրում ասվածը (քաղաքական մասի § 8, տնտեսական մասի § 5, տ ն տ ե ս ա կ ա ն մասի § 8)։*

* — *Հավելյալ արժեք։*
** *Ձեռագրում այդ տողը ջնջված է։*
*** *Ձեռագրում այդ շրջանակում եղած բոլոր տարեթվերն ու թվերը ջնջված են։*



*ՌԿԿ ծրագրի քաղաքական մասի § 8-ի վերջին* — *Ավելացնել Բուխարինի ցուցումները («Պրավդա») մոտ օրերս արտադրողական աշխատանքի փոխադրելու մասին։ Մատնանշել դրա՝ որպես «կառավարման ֆունկցիաների պարզեցման» հետևանքի, պայմանները (ՌԿԿ ծրագիր, քաղ. § 8 վերջում)։*

*Կշռադատել, համակարգել ծրագրի* յուրաքանչյուր *ցուցում,* յուրաքանչյուր-միտքը *առանձնացնել և դարձնել հատուկ կետ։*

*II-ի վերաբերյալ. Վերլուծել 7.II.1920 դեկրետի գլխավոր գաղափարները, համադրելով ծրագրի հետ և այլն։*
*I-ը և II-ը՝* համառոտակի
*III Բանգյուղտեսչության փ ո ր ձ ը.*
*Արդյոք չի՞ կարելի համառոտ հանրագումարի բերել կամ մատնանշել* գլխավորը։

III-ը ավելի մանրամասն
*Բանվորների թի՞վը։ Մոսկվան և պրովինցիա՞ն ծառայողների Σ թվի մեջ։*
*դասընթացնե՞րը*
*Վերստուգումների թի՞վը, բանվորների և գյուղացիների մասնակցությամբ։*
*Ներգրավված բանվորների և գյուղացիների թի՞վը։*
*Անկուսակցական կոնֆերանսներ՞*
*Բանվորների բ ա ց ա հ ա յ տ ա ծ գործերի վերաբերյալ 2—3 աչքի ընկնող դատավարություններ։*
*Գործավարության պարզեցման հանձնաժողով։* Արդյունքնե՞րը։
*Հաշիվների* » »
*Պահեստային գործի վարմա՞ն* »

*Եվ այլն* ըստ կետերի։
*Վերջում։ Թույլ զարգացման պատճառը։ Մեծ զարգացման հեռանկարներն ու խնդիրները։*
*Լավ կլիներ, եթե Դուք հինգշաբթի (կամ ուրբաթ), լավ է ավելի շուտ, ինձ ուղարկեիք վերամշակված թեզիսները։*

*Ձեր Լենին*

(P. S. *Ավելացնել՝ Բանգյուղտեսչության սովորեցրածներին տրամադրել* կառավարման *համար*)

## ՆԱՄԱԿ Վ. Ա. ԱՎԱՆԵՍՈՎԻՆ

*[1920, նոյեմբեր, 1-ի և 7-ի միջև]*[5]

*Ընկ. Ավանեսո՛վ։*

*Դուք պետք է ա ն պ ա յ մ ա ն բեռնաթափեք ձեզ այսօր և վաղը։ 2—4 ժամով ուշադիր, առանց շտապելու թեզիսների վրա աշխատելու համար, որոնք պետք է պատրաստ լինեն երկուշաբթի (8/XI) մինչև ժամը 12*-ը և ոչ ուշ, քան 8/XI առավոտյան ժամը 12-ին կամ ցերեկվա 1-ին** 10—15 օրինակից լինեն ինձ մոտ* (և Կրեստինսկու)*։*

*Դա անհրաժեշտ է։*

*Պետք է անպայման բեռնաթափեք ձեզ, որպեսզի կրկին ու կրկին, առանց շտապելու, խորհեք և աշխատեք։*

*Հարկավոր է մի անգամ ևս վերամշակել և վերամշակումից հետո կոչել*

* *Ձեռագրում ուղղված է, «իրիկնադեմի» փոխարեն տրված է «մինչև ժ. 12-ը»։*
** *Ձեռագրում ուղղված է, «7-ի» փոխարեն տրված է «առավոտյան ժ. 12-ին կամ ցերեկվա ժամը 1-ին»։*

*ն ա խ ն ա կ ա ն թեզիսներ, խնդրելով պլենումին*[6] *դրանք ընդունել ի գիտություն կամ հաստատել իբրև հ ի մ ք, որովհետև Դուք ինքներդ էլ կուզենաք մեկ անգամ և ս ուղղումներ անել։*

*Հարկավոր են այսպիսի վերամշակում և լրացում.*

1) Առաջին մաս: Հիմնական սկզբունքային դրույթներ:

*Բյուրոկրատիզմի դեմ պայքարելու հարցի վերաբերյալ ՌԿԿ ծրագիրը առաջադրել է հետևյալ հիմնական դրույթները.*

{ *Թվարկել դրանք ըստ կետերի, չ ա կ ե ր տ ն ե ր ի մ ե ջ ա ռ ն ե լ ո վ ՌԿԿ ծրագրից արված մեջբերումները*

2) *(Գուցե կարելի է՞ առանց այդ 2-րդ մասի: Պետք է դեռ խորհել)։*

Հետևություններ սկզբունքային դրույթներից. բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարի խնդիրները

(1) *ապարատի պարզեցում*

(2) *դրա բարելավում*

(3) *բանվորա-գյուղացիական վերահսկողություն դ ր ա հ ա մ ա ր: Մասսաների ներգրավում*

(4) *չինովնիկների մի մասի փոխադրում արտադրողական աշխատանքի*

(5) *ք ա յ լ ե ր բյուրոկրատիզմը լիովին ոչնչացնելու համար. իրենց իսկ աշխատավորների անխտիր մասնակցություն կառավարմանը։*

3) 7/II 1920 դեկրետի նշանակությունը:

*Ը ս տ կ ե տ ե ր ի վերարտադրել նրա հիմնական դրույթները և ապա հետևություն անել, թե դա որպես* գործնական քայլ *կարևոր միջոցառում է բյուրոկրատիզմը լիովին ոչնչացնելու համար։*

*Թե այդ միջոցառումը մինչև այժմ ԴԵՌ շատ քիչ օգուտ է տվել։*

*Ինչո՞ւ։*

*Պատճառները՝ պատերազմը*

*տրանսպորտը*

*և այլն։ Գործից կտրել են բանվորների լավագույն ուժերը։*

*(Փոքր ինչ զարգացնել, պարզաբանել, ապացուցել)։*

*Եզրակացություն.* բայց և այնպես մենք այսուհետև էլ սիստեմատիկորեն, *համառորեն, անշեղորեն պետք է գնանք և կգնանք այդ ուղիով։*

4) *Բանգյուղտեսչության աշխատանքի* փորձը:

(1) *անկուսակցական կոնֆերանսների թիվը, որոնք ընտրել են Պետրոգրադում, պրովինցիայում*

*Մոսկվայում։*

(2) *բանվորների թիվը Բանգյուղտեսչության ապարատում, նրա «բանվորականացումը»։ «Գյուղացիականացումը»։*

*(Թեկուզ ոչ լրիվ թվեր, բայց* թվեր, փաստեր *հարկավոր են)։*

(3) *բանգյուղտեսչությունում բանվորների ու գյուղացիների կատարած օգտակար աշխատանքի օրինակներ (2—3) կամ փորձեր։*

(4) *որոշ միջոցառումներ. ապարատի* պարզեցում

*հաշվետարության — — — —*

*պահեստային գործի — — — —*

*գործավարության — — — —*

*և այլն։*

{{ *Դրանց զարգացումը* }}
{{ *զարգացման պլանը* }}

(5) *բանվորների և գյուղացիների հսկողության խնդիրների զարգացման պլանը (թեկուզ մի 2 խոսքով)*

(6) լիովին *բացահայտված ու դատարան հասցված խոշոր գործերի* *ԵՎ ԲԱՑԱՀԱՅՏՄԱՆ ՄԵՋ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ՈՒ ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻ ԴԵՐԻ*

*2—3 օրինակ*

և այլն:



*Այս բաժինը, պրակտիկ փորձը, հարկավոր է փոքր-ինչ զարգացնել, դ ր ա ն հ ա տ կ ա ց ն ե լ ո վ կիսով չափ մեքենագրված 3—4 էջ։*

*Ըստ իս, այսպիսին է թեզիսների վերամշակման և լրացումների ամբողջ պլանը։*

*Մեկ անգամ ևս՝ անսպայման խորհել և աշխատել։ Ես համաձայն եմ կրկին աչքի անցկացնել։*

*Կոմ. բարևն. Լենին*

*ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ*

1 *Այդ թիվը համապատասխանում է գրելու համար վերջնականապես նախատեսված հոդվածների թվին։ Ստորև, տեքստից դեպի ձախ գտնվող թվերը* [6—8] *ըստ երևույթին, նշանակում են սկզբնապես նախատեսված հոդվածների քանակը։*

2 *Այնուհետև հաջորդում են ժամանակագրական այն նշումները, որոնք Վ. Ի. Լենինը զարգացրել է «Կարլ Մարքսի ուսմունքի պատմական բախտը» հոդվածում։ Վ. Ի. Լենինը մարքսիզմի պատմության մեջ առանձնացնում է հետևյալ ժամանակաշրջանները. 1) Մարքսի՝ մատերիալիզմին ու կոմունիզմին անցնելու սկզբից մինչև Փարիզի կոմունան (1842—1871, ընդամենը 29 տարի), 2) Փարիզի կոմունայից մինչև ռուսական առաջին հեղափոխությունը (1871—1905, ընդամենը 34 տարի) և 3) 1905 թվականի հեղափոխությունից հետո (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 736—740, հ. 21, էջ 41)։ Առաջին ժամանակաշրջանում նա առանձնացնում է այն տարեթվերը, որոնք կապված են պատմական այնպիսի կարևորագույն իրադարձությունների հետ, ինչպիսիք են 1848 թվականի հեղափոխությունը, Եվրոպայում հեղափոխական վերելքի ժամանակաշրջանը (1859—1871), ֆրանս-պրուսական պատերազմը և Փարիզի կոմունան (1870—1871), քաղաքացիական պատերազմը ԱՄՆ-ում (1861—1865)։ Երրորդ ժամանակաշրջանում Վ. Ի. Լենինը առանձնացնում է Ռուսաստանում, Պարսկաստանում, Թուրքիայում և Չինաստանում տեղի ունեցած հեղափոխությունների տարեթվերը։ Այդ ժամանակագրական շարքին համապատասխանում է Լենինի՝ «Կարլ Մարքսի ուսմունքի պատմական բախտը» հոդվածի հետևյալ դրույթը. «Ռուսական հեղափոխությանը հաջորդեցին թուրքականը, պարսկականը, չինականը» (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 18, էջ 739—740)։*

3 *Ավանեսով Վ. Ա. (1884—1930)— սովետական պետական գործիչ, ՌՍԴԲԿ անդամ 1903 թվականից։ 1919 թվականին—1920 թվականի սկզբին՝ պետական վերահսկողության կոլեգիայի անդամ, 1920-ից մինչև 1924 թվականը՝ ԲԳՏ ժողկոմի տեղակալ, Համառուս. արտակարգ հանձնաժողովի կոլեգիայի անդամ, իսկ այնուհետև՝ արտաքին առևտրի ժողկոմի տեղակալ։ 1925 թվականից՝ ԺՏԳԽ նախագահության անդամ։*

4 *Նկատի է առնվում Համառուս. ԿԳԿ դեկրետը (կանոնադրությունը) Բանվորա-գյուղացիական տեսչության մասին։ 1920 թվականի փետրվարի 7-ի դեկրետով Պետական վերահսկողությունը ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում վերակազմվեց որպես «սոցիալիստական վերահսկողության միասնական օրգան՝ բանվորներին ու գյուղացիներին նախկին պետական վերահսկողության օրգաններում ներգրավելու հիման վրա...»։ Այդ դեկրետի հիման վրա ԲԳՏ-ին վերապահվեցին ժողովրդական կոմիսարիատի բոլոր իրավունքները և պարտականությունները։*

5 *Տարեթիվը պարզված է Վ. Ա. Ավանեսովին ուղղված երկրորդ նամակի վերլուծման հիման վրա։*

6 *Խոսքը վերաբերում է ՌԿԿ Կենտկոմի այն պլենումին, որ կայացել է 1920 թվականի նոյեմբերի 9-ին։ Պլենումի «Սովետների VIII համագումարի մասին» որոշման 3-րդ կետում ասված էր. «Հանձնարարել ընկ. Ավանեսովին զեկուցում պատրաստել ԲԳՏ փորձի մասին»։*

«Коммунист», № 1, 1974.

# ՄԵԾ ԿՅԱՆՔԻ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ

ԱԿԱՆԱՎՈՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻ ու մեծ մտածողների անունները միշտ էլ ինչ-որ տեղ ձուլվում են նրանց ապրած ժամանակների հետ ու այդ ժամանակների համար դառնում յուրատեսակ խորհրդանիշ: Եվ, այնուամենայնիվ, պատմությանը ծանոթ չէ մի այլ օրինակ, երբ անհատի անունը նույնանում է ժամանակի հետ, դառնում նրա դրոշը: XX դարի սահմանագլխին, երբ աշխարհը կանգնած էր սոցիալական մեծ ցնցումների շեմին, պատմության համար այդպիսին դարձավ Վլադիմիր Իլյիչ Լենինի անունը:

Պատմել Լենինի մասին, նշանակում է պատմել XX դարի հասարակական-քաղաքական այն մեծ տեղաշարժերի մասին, որոնք կազմում են նոր դարաշրջանի էությունն ու բնութագիրը: Եվ այս գրքի էջերում ամփոփված կենսագրությունն էլ կենսագրություն է ոչ բառիս ավանդական ըմբռնումով: Մեծ կյանքի փաստերն այստեղ հենք են դարձել՝ ներկայացնելու համար դարաշրջանի սոցիալ-պատմական համապատկերը, որի կենտրոնում հառնում է հեղափոխության առաջնորդի տիտանական կերպարը:

Վ. Ի. Լենինի գիտական կենսագրության առաջին հայերեն հրատարակությունը լույս տեսավ 1961 թվականին: Այժմ հրապարակի վրա է ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ նոր հրատարակությունը*: Պետք է արժանին հատուցել նրա հեղինակներին, որոնք գիտական բարեխղճությամբ ու պատվով են կատարել իրենց առջև դրված կարևոր խնդիրը: ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ նոր հրատարակությունը նախորդներից շահեկանորեն տարբերվում է նյութի ավելի լայն ընդգրկմամբ: Գրքի վերջում զետեղված է առարկայական-թեմատիկ տեղեկատու, որն օգնում է ընթերցողին՝ կողմնորոշվելու տեսական հարցերում և հետևելու լենինյան գաղափարների զարգացման ընթացքին: Նորություն են նաև ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ մեջ հիշատակված անունների ու աշխարհագրական տեղանունների ցանկերը:

Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԾՆՎԵԼ ԵՎ ԴԱՍՏԻԱՐԱԿՎԵԼ Է այնպիսի մի ընտանիքում, ուր խորապես հարգի էին ռուսական դեմոկրատական կուլտուրայի ավանդույթները: Պատահական չէր բնավ, որ այդ ընտանիքի բոլոր զավակներն ընտրեցին հեղափոխականի դժվարին ուղին: Գիրքը հնարավորություն է ընձեռում քայլ առ քայլ հետևելու Վ. Ի. Լենինի՝ որպես հեղափոխականի լինելության պրոցեսին: «Դաստիարակելով երեխաներին,— կարդում ենք գրքում,— Իլյա Նիկոլաևիչը ելնում էր հեղափոխական դեմոկրատ Ն. Ա. Դոբրոլյուբովի մանկավարժական հայացքներից՝ նրանց մեջ կոփում էր ամուր կամք, զարգացնում ձգտում գիտելիքների նկատմամբ, սովորեցնում հասկանալ կյանքը, խստապահանջ լինել սեփական գործողությունների նկատմամբ, լինել անկեղծ և ճըշմարտասեր» (էջ 6):

Դաստիարակչի հազվագյուտ տաղանդով էր օժտված և Վլադիմիր Իլյիչի մայրը՝ Մարիա Ալեքսանդրովնան՝ բարեհամբույր, մեծ տակտի տեր մի անձնավորություն, որն արիության ու տոկունության օրինակ էր զավակների համար:

Վլադիմիր Իլյիչի՝ ամենքիս ծանոթ կյանքին նոր դրվագներ են ավելացնում արխիվային այն նյութերը, որ հայտնաբերվել են վերջին տարիներին:

ԵՐԿՈՒ ԳԼԽԱՎՈՐ ԱԿՈՒՆՔ ԷԻՆ ՍՆՈՒՄ երիտասարդ հեղափոխականին՝ Մարքսի ուսմունքը և ժամանակի հեղափոխական իրականությունը: Մեկով ստուգվում էր մյուսը: Մարքսի աշխատություններում Իլյիչը գտավ Ռուսաստանի տնտեսական ու քաղաքական դրությունն ըմբռնելու բանալին: Լենինը ցույց տվեց, որ Ռուսաստանի տնտեսական զարգացումն ընթանում է այն նույն օրենքներով, ինչ մյուս կապիտալիստական երկրներում: Իսկ դա նշանակում էր, որ գլխավոր հեղափոխական ուժը դառնում է բանվոր դասակարգը: Լենինը Ռուսաստանի մարքսիստներից առաջինն էր, որ տեսականորեն հիմնավորեց Ռուսաստանի բանվոր դասակարգի՝ որպես հեղափոխության առաջատար ուժի ու հեգեմոնի, պատմական դերը: Նա խորտակիչ հարված հասցրեց նարոդնիկությանը, որը պնդում էր, թե կապիտալիզմը Ռուսաստանում օտարոտի, պատահական երևույթ է և սոցիալիզմին հասնելու գլխավոր ուժը համարում էր գյուղացիական համայնքը: Նարոդնիկներից, «լեգալ մարքսիստներից», «էկոնոմիստներից» մարքսյան ուսմունքը պաշտպանելու համար մղած պայքարում էլ հենց սկզբնավորվեց լենինիզմը:

Լենինն անշեղ հետևում էր Մարքսի այն դրույթին, թե հարկավոր է ո՛չ միայն բացատրել աշխարհը, այլև վերափոխել այն: Նա հրաշալի հասկանում էր, որ աշխարհի վերափոխման, հեղափոխության հաղթանակի ու նոր հասարակարգի կառուցման համար բանվոր դասակարգը պետք է ունենա մարքսիզմի տեսությամբ զինված մարտական կուսակցություն: «... տվե՛ք մեզ հեղափոխականների կազմակերպություն,— գրում էր Վլադիմիր Իլյիչը,— և մենք շուռ կտանք Ռուսաստանը» (Երկեր, հ. 5, էջ 622): Լենինը երկար տարիներ նվիրեց այդպիսի կազմակերպության ստեղծմանը. այն դարձավ նրա կյանքի գործը:

ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ մեջ բազմաթիվ էջեր են նվիրված այն պայքարին, որ մղում էր Լենինը նոր տիպի մարքսիստական կուսակցություն հիմնելու համար: Տակավին սիբիրյան աքսորում գտնվելու տարիներին նա ստեղծեց կուսակցության «Ծրագրի նախագիծը», որով սկսել էր զբաղվել դեռ Պետերբուրգի բանտում: Շուշենսկոյեից՝ սիբիրյան այդ խուլ գյուղից, Լենինը, աներևակայելի դժվարություններ հաղթահարելով, կարողացավ կապեր հաստատել բանվորական կենտրոնների հետ և գործարար կերպով քննարկել այն հարցը, թե ինչպես ցաքուցրիվ կազմակերպությունները միավորել մեկ միասնական մարքսիստական կուսակցության մեջ, ինչպես դարձնել այն բանվորական մասսաների իսկական ղեկավար:

Պատմական մի շարք հանգամանքների պատճառով կուսակցության առաջին համագումարը չկարողացավ լիովին իրագործել իր առջև դրված խնդիրները, մասնավորապես, նրան չհաջողվեց հաղթահարել սոցիալ-դեմոկրատիայի կազմակերպական մասնատվածությունն ու նրա շարքերում տիրող գաղափարական տարընթացությունը: Մարքսիստական կուսակցության համար մղվող պայքարը պետք է շարունակվեր նոր թափով և, վերադառնալով աքսորից, Լենինը գործնականորեն ձեռնամուխ եղավ դրան: Նրա իդեալն էր՝ ստեղծել այնպիսի կուսակցություն, որն ունակ լիներ ո՛չ միայն Ռուսաստանը նվաճելու կալվածատերերից ու կապիտալիստներից, այլև կառավարելու երկիրը, ապահովելու պրոլետարիատի դիկտատուրայի հաղթանակը: Իր հանճարեղ աշխատություններում նա մշակեց կուսակցության գաղափարական, քաղաքական, տեսական ու կազմակերպական հիմունքները, անդուլ գործունեությամբ ի մի հավաքեց, բջիջ առ բջիջ միասնական մի օրգանիզմի մեջ միավորեց սոցիալ-դեմոկրատական ցրիվ խմբերը և ստեղծեց այն նոր տիպի կազմակերպությունը, որ հպարտորեն կրում է կոմունիստական կուսակցություն անունը: Այդ կուսակցությունը, ինչպես Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ իր զեկուցման մեջ նշեց Լ. Ի. Բրեժնևը, հեղափոխական տեսության ու հեղափոխական պրակտիկայի անխզելի միասնության գերագույն մարմնավորումն է: Դա այն մեծագույն ժառանգությունն է, որ Լենինը թողել է համաշխարհային հեղափոխական շարժմանը, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցողներին:

ՆԱԴԵԺԴԱ ԿՈՆՍՏԱՆՏԻՆՈՎՆԱ ԿՐՈՒՊՍԿԱՅԱՆ մի առիթով նշել է, թե Մարքսը ռուսերեն է թարգմանվել դեռևս անցյալ դարի 60-ական թվականներին, բայց հարկավոր էր այն թարգմանել նաև ռուսական փաստերի լեզվով. դա արեց Լենինը:

Ընթերցելով ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ, նորից ու նորից ես խորհում տեսական այն մեծագույն ավանդի մասին, որ ներդրել է Լենինը մարքսիզմի զարգացման մեջ: Ինչ խոսք, Նադեժդա Կոնստանտինովնան չափազանց համեստ է արտահայտվել Իլյիչի ծառայությունների մասին, թեև, իհարկե, հրաշալի հասկանում էր, որ Լենինն անհամեմատ ավելին է արել, քան միայն մարքսիզմը «ռուսական փաստերի լեզվով թարգմանելը»: Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Ռուսաստանի բանվոր-դասակարգի հաղթանակների, Մեծ Հոկտեմբերի պատմական փորձը յուրատեսակ ուսումնա-

---

* *Վլադիմիր Իլյիչ Լենին: Կենսագրություն: Հեղինակային կոլեկտիվ՝ Պ. Ն. Պոսպելով (ղեկավար), Վ. Ե. Եվգրաֆով, Վ. Յա. Զևին, Լ. Ֆ. Իլյիչով, Ֆ. Վ. Կոնստանտինով, Ա. Պ. Կոսուլնիկով, Զ. Ա. Լյովինա, Գ. Դ. Օբիչկին, Պ. Ն. Ֆեդոսեև, «Հայաստան» հրատ., 1973:*

կան ձեռնարկ դարձավ, որով սովորում են բոլոր երկրների կոմունիստները: Ահա բնորոշ մի էպիզոդ. Հոկտեմբերից հետո, երբ հեղափոխական շարժումն ամբողջ աշխարհում բուռն վերելք էր ապրում, Գերմանիայի կոմունիստները կայզերի իշխանության դեմ մղած պայքարի ընթացքում հեղափոխական պրոլետարիատին կոչ էին անում «ռեակցիայի հետ խոսել ռուսերեն»: Մարքսիզմն ահա այդպես «թարգմանվեց ռուսական փաստերի լեզվով»՝ լենինիզմի մեջ գտնելով իր հանճարեղ շարունակությունը: «Լենինիզմը, հեղափոխական տեսության զարգացման լենինյան էտապը, իրավամբ անվանում են մարքսիզմի բարձրագույն էտապ, արդի դարաշրջանի մարքսիզմ» (էջ 961):

Իր փիլիսոփայական, տնտեսագիտական, սոցիոլոգիական, պատմա-քաղաքական բազմաթիվ երկերով Լենինը մեծապես հարստացրեց ու զարգացրեց մարքսիզմը: Անհնար է այսօր կոմունիստական գաղափարախոսության զինանոցը պատկերացնել առանց լենինյան այնպիսի ներդրումների, ինչպիսիք են նրա աշխատությունները իմպերիալիզմի՝ որպես կապիտալիզմի բարձրագույն և վերջին ստադիայի մասին, նոր տիպի կուսակցության, սոցիալիստական հեղափոխության, պրոլետարիատի դիկտատուրայի ու նրա ձևերի, բանվորների ու գյուղացիների դաշինքի, սոցիալիստական դեմոկրատիայի, ազգային ու ագրարային հարցերի մասին, առանց սոցիալիստական հասարակարգի կառուցման վերաբերյալ նրա ծրագրային ցուցումների: Այս ամենը կազմում են լենինյան տեսական ժառանգության ոսկե ֆոնդը, որի ինտերնացիոնալ նշանակությունը հաստատվել է համաշխարհային հեղափոխական շարժման պրակտիկայով:

ԼԵՆԻՆԸ ՍԻՐՈՒՄ ԷՐ ԿՐԿՆԵԼ Չերնիշևսկու այն աֆորիզմը, թե քաղաքական գործունեությունը Նևայի պողոտայի մայթը չէ: Նա գրում էր պատմության զիգզագաձև ընթացքի մասին և խորհուրդ տալիս ուշի-ուշով զննել պատմական նոր հանգամանքները, խորհել այն մասին, թե ինչու կյանքն այդպես ընթացավ և ոչ այլ կերպ... Լենինյան այս խոհերն ու խորհուրդներն ես ակամայից մտաբերում, երբ կարդում ես ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ այն էջերը, որոնք պատմում են հեղափոխության բոցաշունչ օրերի, սովետական պետության առաջին քայլերի մասին: Գիրքը փաստական հարուստ նյութերով է ներկայացնում Վ. Ի. Լենինին՝ որպես հեղափոխության հանճարեղ ստրատեգի ու պետական խոշոր գործչի:

Ռուսական պրոլետարիատը հիմք չուներ տրտնջալու «լիդերների» սակավությունից, բայց հեղափոխական մտքի բարձր թռիչքով, պրոլետարիատի դասակարգային պայքարի կազմակերպչի չգերազանցված հանճարով բանվորական շարժումը Լենինին հավասար մեկ ուրիշ դեմք չուներ: Հեղափոխության ստրատեգի լենինյան հանճարն իր պրակտիկ փայլուն հաստատումը գտավ Մեծ Հոկտեմբերի գոտեմարտերում:

Հատկանշական է, որ նորածին սովետական պետության առաջին խոսքը խաղաղության մասին էր: Դա հաշտության լենինյան դեկրետն էր, որով Սովետների երկիրը վճռականորեն դատապարտում էր պատերազմը և պահանջում հաստատել արդարացի ու դեմոկրատական խաղաղություն: Լենինը գտնում էր, որ պատերազմը արմատապես խորթ է սոցիալիզմի բուն էությանը. նա խաղաղության, սոցիալական տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության ապահովումը համարում էր սովետական պետության արտաքին քաղաքականության կարևորագույն սկզբունքներից մեկը, խաղաղության և զինաթափման մեջ տեսնում սոցիալիզմի իդեալը:

Սոցիալիզմի և խաղաղության գաղափարների օրգանական միասնությունը իր փայլուն հաստատումը գտավ ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած Խաղաղության ծրագրում, որի ունեցած դերը արդի համաշխարհային քաղաքականության մեջ դժվար է գերագնահատել:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության մեջ նոր շրջան սկսվեց: Հանճարեղ տեսաբանն ու բոցաշունչ հեղափոխականը ստանձնեց պետության ղեկավարի դերը: Մարդկային գործունեության ոչ մի ոլորտ իր բարդությամբ չի կարող համեմատվել քաղաքական առաջնորդի, խոշորագույն սոցիալ-քաղաքական վերափոխումների ղեկավարի գործունեության հետ: Դրանում նորից ու նորից ես համոզվում՝ կարդալով ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅԱՆ այն էջերը, որոնք մեր հիշողության մեջ այնպես տպավորիչ վերակենդանացնում են սովետական պետության ստեղծման և ամրապնդման համար Լենինի ծավալած գործունեությունը:

Հոկտեմբերից հետո Լենինը երկար չապրեց՝ 6 տարուց մի փոքր ավելի: Բայց այն,



ինչ նա հասցրեց անել որպես կուսակցության ու կառավարության ղեկավար և այն, ինչ նա ստեղծեց պետության մասին այդ կարճ շրջանում, թե իբրև պրակտիկ փորձ, և թե իբրև տեսական ժառանգություն, մեծ ավանդ են պրոլետարիատի դիկտատուրայի մասին մարքս-լենինյան ուսմունքի մեջ:

Բանվորա-գյուղացիական իշխանությունը ռեալ իրողություն էր արդեն, և այժմ խնդիրն այն էր, թե ինչպես ավելի արդյունավետ դարձնել բանվորի ու գյուղացու անմիջական մասնակցությունը պետության կառավարմանը: Դրան մեծապես խոչընդոտում էր ո՛չ միայն այն, որ բանվորն ու գյուղացին դեռ չունեին այդ փորձը, այլև քարացած այն պատկերացումը, թե պետության կառավարումը սոսկ հասարակության արտոնյալ դասերի գործն է: Գրքում բնորոշ օրինակ է բերված: Ժողկոմատներից մեկում աշխատանքի նշանակված բանվորները դիմում են Իլյիչին և, պատճառ բերելով, թե իրենց գործերը վատ են ընթանում, խնդրում են թույլ տալ վերադառնալ գործարան: Լենինն ուշադիր լսում է նրանց և ասում.

— Ես ևս երբեք պետություն չեմ կառավարել, բայց կուսակցությունն ու ժողովուրդը հանձնարարել են ինձ այդ աշխատանքը և ես պետք է արդարացնեմ նրանց վստահությունը: Ձեզ էլ խորհուրդ եմ տալիս նույնն անել:

Այն բանից հետո, երբ կուսակցությունն անցել էր իշխանույթան գլուխ, Լենինը նրա գլխավոր խնդիրներից մեկը համարում էր աշխատավորներին պետության կառավարման արվեստ սովորեցնելը: Սովետական պետության ուժը Լենինը տեսնում էր, ամենից առաջ, նրա սոցիալական բազայի ամրության, աշխատավորական մասսաների կողմից նրա անձնվեր պաշտպանության մեջ: «Բուրժուազիան,— ասում էր նա,— միայն այն ժամանակ է պետությունն ուժեղ ճանաչում, երբ նա կարող է կառավարման ապարատի ամբողջ զորությամբ նետել մասսաներին այնտեղ, որտեղ բուրժուական կառավարողներն են ցանկանում: Մեր հասկացությունն ուժի մասին այլ է: Մեր պատկերացումով պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ: Նա ուժեղ է այն դեպքում, երբ մասսաներն ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ գիտակցաբար են անում» (Երկեր, հ. 26, էջ 305):

Լենինը գտնում էր, որ տասնյակ միլիոնավոր աշխատավորների միտքը ստեղծում է անհամեմատ ավելի վեհ բան, քան ամենամեծ, հանճարեղ կանխատեսումը:

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻՑ հետո հասարակության սոցիալիստական վերակառուցման խնդիրները, որոնք մինչ այդ զուտ տեսական բնույթ էին կրում, առաջին անգամ պրակտիկ կյանքի օրակարգում դրվեցին: Գիտական կոմունիզմի հիմնադիրները, ինչպես նշում էր Լենինը, իրենց հանճարեղ խորաթափանցությամբ հանդերձ, չէին կարող կանխատեսել այն բոլոր բարդ հարցերն ու հակասությունները, որ անխուսափելիորեն առաջ կքաշի նոր հասարակարգի կառուցման դարաշրջանը, և, հետևաբար, չէին կարող տալ դրանց պատասխանը: Նա պահանջում էր սոցիալիզմի խնդիրները դնել ու լուծել գիտականորեն՝ շեշտելով, որ կուսակցությունը «պետք է գործի ԳԻՏԱԿԱՆ հիմունքներով»:

Պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումից հետո Լենինն առաջին պլանի վրա էր դնում տնտեսական պրոբլեմները, որոնց լուծման հետ նա կապում էր և մնացած բոլոր խնդիրների լուծումը: Իլյիչը մեծ կարևորություն էր տալիս աշխատանքի արտադրողականության բարձրացմանը: «Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և կպարտվի նրանով, որ սոցիալիզմն ստեղծում է նոր, շատ ավելի բարձր աշխատանքի արտադրողականություն» (Երկեր, հ. 29, էջ 523):

Լենինը մշակեց տնտեսական քաղաքականության այն հիմնարար սկզբունքները, որոնք այսօր ևս բանալի են ծառայում զարգացած սոցիալիստական էկոնոմիկայի ամենաբարդ պրոբլեմներն ըմբռնելու և լուծելու համար:

Առաջնորդվելով սոցիալիստական շինարարության լենինյան պլանով ժողովրդական կոմիսարների սովետը 1918 թ. հունիսի 28-ին դեկրետ ընդունեց ամբողջ խոշոր արդյունաբերության ազգայնացման մասին: Վլադիմիր Իլյիչը շատ մեծ նշանակություն էր տալիս տնտեսության պլանային զարգացմանը և սովետական իշխանության հաստատման առաջին իսկ ամիսներին ձեռնամուխ եղավ սոցիալիստական պլանավորման սկզբունքների մշակմանը, առաջ քաշեց ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացման ծրագրային խնդիրը: Լենինը մշակեց գյուղացիությանը սոցիալիզմի ուղին փոխա-

դրելու իր հանճարեղ կոոպերատիվ պլանը, որը պատմական քայլ էր ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի, կոմունիզմի կառուցման լենինյան ուսմունքի զարգացման գործում:

Վլադիմիր Իլյիչին հատուկ էր նորն ու առաջավորը սաղմի մեջ տեսնելու կարողությունը: Մոսկվայում 1919 թ. մայիսին անցկացված առաջին բանվորական շաբաթօրյակների մեջ նա իրեն հատուկ խորաթափանցությամբ տեսավ կոմունիստական աշխատանքի ծիլերը, մասսաների այդ մեծ նախաձեռնությունը բնութագրեց որպես «ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՓԱՍՏԱԿԱՆ սկիզբ»: Լենինը հաստատ համոզմունք էր հայտնում, որ սոցիալիզմի պայմաններում այդ ծիլերը երբեք չեն թառամի, այլ կաճեն ու կզորանան: Իրոք, սոցիալիստական մրցությունը դարձավ այն վճռական գործոններից մեկը, որը երկրի տնտեսական զարգացման բոլոր էտապներում կուսակցությանն օգնեց համախմբելու մասսաների ուժերը, ծավալելու նրանց ստեղծագործական նախաձեռնությունը:

Հիսունհինգ տարի է անցել մոսկովյան առաջին շաբաթօրյակներից: Այսօր հսկայական մասշտաբներ է ընդունել իններորդ հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար երկրով մեկ ծավալված մրցությունը: Սոցիալիստական մրցությունն առհասարակ որակական նոր մակարդակի է հասել, բայց դժվար չէ նկատել, որ այն ուղիղ գծով կապվում է առաջին շաբաթօրյակների հետ:

Լենինը քանիցս նշել է, որ նոր հասարակարգի կառուցման դժվարությունը ո՛չ միայն էկոնոմիկայի, այլև մարդկանց փոխհարաբերությունների, կենցաղի, հայացքների վերակառուցման մեջ է: Նոր մարդու դաստիարակումը, աշխատավորների մեջ կոմունիստական բարոյականության նորմերի ձևավորումը նա համարում էր մասսաների շրջանում տարվող գաղափարական աշխատանքի գլխավոր խնդիրը:

ՍՍՀՄ-ՈՒՄ ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ խոշոր նվաճումներից մեկը ազգային հարցի ճիշտ լուծումն է: Այդ հարցն առավել կարևոր էր հատկապես այնպիսի մի բազմազգ երկրի համար, ինչպիսին նախահեղափոխական Ռուսաստանն էր, ուր կապիտալիստական զարգացման բավականաչափ բարձր մակարդակ ունեցող կենտրոններին սահմանակից էին ֆեոդալական հարաբերությունների ակնբախ առկայությամբ հսկայածավալ ծայրամասերը, որտեղ, Լենինի արտահայտությամբ, թագավորում էր կիսավայրենությունը:

Պատմական նոր դարաշրջանում ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմը՝ Լենինն ստեղծեց ազգային հարցի կուռ ուսմունքը, մշակեց ազգային քաղաքականության գիտական սկզբունքները, որոնք անշեղորեն իրագործվում են կուսակցության կողմից: Որպես մեծ ինտերնացիոնալիստ, նա խնդիր էր դնում լիովին վերացնել նախկինում ճնշված ժողովուրդների փաստական անհավասարությունը, օգնել ոչ-ռուս ժողովուրդներին՝ զարգացնելու և ամրապնդելու ազգային սովետական պետականությունը, ապահովելու նրանց տնտեսության ու կուլտուրայի վերելքը: Ընդգծելով սովետական երկրում ազգային հարցի ճիշտ լուծման միջազգային նշանակությունը՝ Լենինը գրել է. «Դա համաշխարհային հարց է, առանց չափազանցության՝ համաշխարհային... Դա կազդի Հնդկաստանի վրա, Արևելքի վրա, այստեղ կատակել չի կարելի, այստեղ պետք է 1000 անգամ զգույշ լինել» (Երկեր, հ. 45, էջ 292—293): Լենինը ծրագրում էր ազգերի այնպիսի միություն, որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի նկատմամբ և հիմնըված լիներ լիիրավ վստահության վրա: Նա ռուս կոմունիստներից պահանջում էր իրենց շրջապատում ամենայն խստությամբ հետապնդել մեծապետական շովինիզմի նվազագույն դրսևորումները՝ դրանք համարելով դավաճանություն կոմունիզմին: Լենինը միաժամանակ պարզաբանում էր տեղական նացիոնալիզմի, ազգային անջատվածության քարոզի, ռուս ժողովրդի հետ ոչ-ռուս ժողովուրդների սերտ դաշինքն ու բարեկամությունը քայքայելու կամ թուլացնելու տենդենցի վտանգավորությունը:

Լենինը մեծ նշանակություն էր տալիս ազգերի իրավահավասարությանը և, մշակելով Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծման պլանը, պահանջում էր սրբորեն պահպանել սովետական հանրապետությունների ազատ ու կամավոր միավորման սկզբունքը: ՍՍՀՄ կազմավորման լենինյան գաղափարների հանճարեղությունը հաստատվեց պատմության զարգացման ամբողջ ընթացքով: Ազգերի լենինյան միության շնորհիվ մեր երկրում, մարդկության պատմության մեջ առաջին անգամ, հասարակության շարժիչ ուժ դարձան ազգերի ու ազգությունների եղբայրական միասնությունը, նրանց համագործակցությունն ու փոխօգնությունը:



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԻՑ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ Վ. Ի. Լենինի կենսագրության հեղինակներն ավելի կուռ և ամբողջական են ներկայացնում տեսական այն եզրահանգումները, գործնական այն հետևությունները, որ Լենինն արել է միջազգային հեղափոխական շարժման վերաբերյալ: Նա բազմակողմանիորեն ընդհանրացրեց համաշխարհային պրոլետարական, հեղափոխական-ազատագրական շարժման փորձը, նշեց դրանց զարգացման ուղիները, խորությամբ վերլուծեց միջազգային դասակարգային պայքարի ուղղություններն ու հեռանկարները: Լենինիզմը դարձավ աշխարհի բանվոր դասակարգի, նրա կոմունիստական ավանգարդի տեսական հզոր զենքը, հեղափոխական գործողությունների մարտական ծրագիրը: Լենինը նրանց զինեց համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման ամբողջական կոնցեպցիայով, որի առանցքը սոցիալական երկու սիստեմների պայքարն է:

Լենինիզմը մեր դարաշրջանի ամենաառաջավոր, ամենաազդեցիկ գաղափարախոսություն է, և կոմունիստներն, այսօր ավելի քան երբևէ անցյալում, ունեն բոլոր հիմքերը կրկնելու Լենինի այն խոսքերը, թե «...մենք ջերմ լավատեսներ ենք բանվորական շարժման ու նրա նպատակների վերաբերմամբ» (Երկեր, հ. 19, էջ 280): Միջազգային կոմունիստական շարժման՝ համաշխարհային հեղափոխական-ազատագրական պրոցեսի առաջատար ուժի, զարգացման արդի էտապը բնութագրվում է անշեղ աճով և բուռն վերելքով: Անցած տասնամյակներում, անշուշտ, էապես փոխվել են հասարակական պատմական այն պայմանները, որոնց մեջ իրենց գործունեությունն են ծավալում բանվոր դասակարգն ու նրա մասսայական կազմակերպությունները: Սակայն կոմունիստները գտնում են, որ անփոփոխ է մնացել հեղափոխական շարժման մայրուղին:

Լենինն իր ամբողջ կյանքում մարտնչեց կոմունիստական գաղափարների անաղարտության համար և այդ հատկանիշը փոխանցեց իր հիմնադրած կուսակցությանը:

... ԱՅՍ ԳԻՐՔԸ ԿԱՐԵԼԻ Է կոչել նաև գիրք-դիմանկար: Դիմանկար՝ բառի ամենալայն իմաստով. առաջնորդի, հեղափոխական մարտիկի, մեծ մտածողի, հոգատար ընկերոջ... Դժվար է նույնիսկ բացատրել այն հաճելի զգացումը, որ ունենում ես գրքի ընթերցումն ավարտելուց հետո: Թվում է՝ ամեն ինչ ծանոթ էր այնտեղ, բայց և այնպես հարազատ կերպարը ներկայանում է ինչ-որ նորովի, ավելի ամբողջական... Եվ դա, հավանաբար, գրքի գլխավոր արժանիքն է:

Դա գիրք-ձեռնարկ է այն մասին, թե ինչպես պետք է ապրել ու պայքարել...

Ասում են՝ ունակությունների բացառիկությունը հանճարներին հաճախ բարձրացնում է նրանց շրջապատից ու այդ շրջապատի համար օտար դարձնում: Լենինի հանճարն այլ կարգի էր. այն իր ամբողջ համակողմանիությամբ փայլատակում էր հատկապես ժողովրդի հետ ունեցած կապի մեջ: Վլադիմիր Իլյիչը հազարավոր թելերով կապված էր Ռուսաստանի (և ոչ միայն Ռուսաստանի) պրոլետարիատի հետ, մասսաների հետ կապի մեջ էր տեսնում քաղաքական գործի ու կուսակցության ուժը, և պրոլետարիատը նրա հետ այսպես էր խոսում. «Մենք քեզ մեր պրոլետարական ողջույնն ենք հղում և հայտարարում, որ մեր կոշտացած ձեռքերը բաց չեն թողնի սովետական իշխանության դրոշը» (էջ 899):

Վարելով կառավարության ղեկավարի պաշտոնը, Լենինը ժամանակ էր գտնում զրուցելու բանվորների, գյուղացիների ու զինվորների հետ, աշխատավոր մարդկանցով ստուգելու իր խոհերը, կարծիքները, տպավորությունները: Լենինի համար դա ներքին պահանջ էր: Այսպիսի մի բնորոշ օրինակ է բերված գրքում: Ռիկովը առաջարկել է Լենինի անձնական ընդունելությունը սահմանափակել նրա տեղակալների կամ Կենտկոմի քարտուղարի կողմից այցելուների նախնական ընտրությամբ: Իլյիչը կտրականապես առարկել է դրա դեմ: «Պետք է միայն ասել,— գրում էր Լենինը,— որ Ռիկովի գործնական ավելացման հետ համաձայն չեմ արմատապես, դրա դեմ առաջ եմ քաշում միանգամայն հակառակը՝ ընդունելությունների լիակատար ազատություն, անսահմանափակություն և անգամ՝ ընդլայնում» (Երկեր, հ. 42, էջ 511—512):

Լենինի կենսագրությունը չի ամփոփվում նրա ապրած տարիների մեջ: Խոսելով Վլադիմիր Իլյիչի մասին, Մաքսիմ Գորկին նշում էր, թե մարդիկ կան, որոնք վիթխարի լծակների նման շուռ են տալիս պատմությունը... Այդ խոսքերը նա ասել էր այն «կոմունիստական երեկոյին», որը կուսակցության Մոսկվայի կոմիտեն կազմակերպել էր Լենինի ծննդյան 50-ամյակի առթիվ: Անցել է 54 տարի: Եվ Լենինի գործի դրած վիթխարի լծակները շարունակում են շրջել պատմության ընթացքը:

Ռ. Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

«ԿՈՄՈՒՆԻՍՏ» ԱՄՍԱԳՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՎԱՏԱՐԻՄ ՈՒ ՄԱՐՏԱԿԱՆ ՕԳՆԱԿԱՆԸ

1974 թվականի ապրիլի սկզբին լրանում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի տեսական ու քաղաքական օրգան, «Կոմունիստ» ամսագրի առաջին համարի լույս ընծայման հիսունամյակը։

Սկզբում «Բոլշևիկ» անունը կրած ամսագիրն ստեղծելու մասին որոշումն ընդունվել էր ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կազմբյուրոյի 1923 թվականի նոյեմբերի 19-ի նիստում, Վլադիմիր Իլյիչ Լենինի կենդանության ժամանակ։ Այդ անունով ամսագիրը լույս էր տեսնում 1924 թվականի ապրիլից մինչև 1952 թվականի հոկտեմբերը, իսկ այնուհետև Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցություն վերանվանվելու կապակցությամբ ամսագիրը վերանվանվեց «Կոմունիստ»։

«Մեր հիմնական խնդիրն է,— ասված էր «Բոլշևիկ»-ի առաջին համարի առաջնորդող հոդվածում,— պաշտպանել և հիմնավորել պատմական բոլշևիզմը, պայքարել նրա հիմունքների աղավաղման և խեղաթյուրման ամեն տեսակ փորձերի դեմ...

Արդեն այժմ ոտնձգություն է կատարվում համաշխարհային բանվոր դասակարգի ամենաթանկագին սեփականության՝ լենինիզմի սկզբունքների անաղարտության դեմ։ Այստեղ մենք մղելու ենք ամենաանողոք պայքար։ Ռուսաստանի բոլշևիկները ոչ ոքի և երբեք թույլ չեն տա լենինիզմը «հարմարեցնել» օպորտունիզմին, անկախ այն բանից՝ նման փորձերը չարամիտ խեղաթյուրումների, թե բարեխիղճ մոլորությունների արդյունք են...

«Բոլշևիկը» ուզում է լինել լենինյան կուսակցության մարտական օրգանը, ուղեցույց տվող օրգանը, այն, ինչ ժամանակին եղել են «Վպերյոդը», «Պրոլետարին», «Զվեզդան»...

Մենք ուզում ենք լինել միշտ խմացասեր, քննադատական, բոլշևիկյան կուսակցական մտքի օրգանը։ Անհանդուրժություն մեր վեհ գործի համար, անբավարարվածություն եղածով և ավելի լավ գործելու հավերժական ձգտում...

«Բոլշևիկը» պայքարելու է քարացածության, սահմանափակության, ինքնագոհության դեմ։ Վեհ գործը դեռ միայն սկսվել է, կոմունիզմը ամբողջովին ապագայում է, և նրա կառուցողները չեն կարող, չեն համարձակվի հանգստանալ ձեռք բերածով։ Հարկավոր է նայել ապագային, պետք է հիշել համաշխարհային վեհ նպատակներն ու խնդիրները։ Քանի որ՝ ով առաջ չի գնում, նա անխուսափելիորեն ետ է գլորվում...»։

Ամսագրի ծննդյան օրից անցած կես դարը մեր լենինյան կուսակցության, ամբողջ սովետական ժողովրդի համար եղել են պատմական վեհ մեծագործությունների, խաղաղ, ստեղծագործ աշխատանքի ու պատերազմական դաժան փորձությունների, սոցիալիստական ու կոմունիստական հասարակարգի կառուցման համար մղված հերոսական պայքարի տարիներ։ Ամսագրի էջերը այդ պայքարի յուրատեսակ տարեգրությունն են։ Ղեկավարվելով կուսակցության գլխավոր գծով, ամսագիրը մշակել է նրա համագումարների և Կենտրոնական կոմիտեի պլենումների առաջադրած պրոբլեմները, նշանակալի ավանդ ներդրել մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացման, սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գործում։

Օրինաչափ էր, որ «Բոլշևիկ»-ի առաջին իսկ համարում երևան եկավ «Լենինը և լենինիզմը» բաժինը, որտեղ հրապարակվում էին Վ Ի. Լենինի հոդվածները, նամակները, փաստաթղթերը, նյութեր նրա կյանքի ու գործունեության մասին։ Փոխվում էին խորագրերը, որոնց տակ տպագրվում էին այդ նյութերը, բայց մինչև հիմա էլ ամսագրի էջերից հնչում է մեծ առաջնորդի կենդանի խոսքը, որն օգնում է լուծելու այսօրվա պրակտիկ խնդիրները; հարթելու վաղվա ճանապարհը։

Կես դարում «Բոլշևիկ»-«Կոմունիստ» ամսագրի էջերում տպագրվել են Վ. Ի. Լենինի չհրապարակված կամ անցյալում քիչ հայտնի 125 աշխատություն, նամակ ու փաստաթուղթ։ Դրանց թվումն են Մարքսիզմը և «Նաշա Զարյա»-ն, Ավանտյուրիզմի մասին, Նամակներ հեռվից (երկրորդ և հինգերորդ), Դիալեկտիկայի հարցի շուրջը, Մեր պայքարը «ճահճի» դեմ, Քարտերը բացել, վիճակագրությունը և սոցիոլոգիան, «Սվոբոդա» ժուռնալի մասին, Այսպես կոչված շուկաների հարցի առթիվ, Լիկվիդատորության նկատմամբ վերաբերմունքի և միասնության մասին, Կոմպրոմիսների մասին, Դիտողություններ Տուլյատիկովի գրքի մասին, Սովետական իշխանության հերթական խնդիրները հոդվածի նախասկզբնական տարբերակի գլուխները, Դիտողություններ Հաագայում մեր պատվիրակության խնդիրների հարցի շուրջը, Նամակ համագումարին, Ազգությունների կամ «ավտոնոմիզացիայի» հարցի շուրջը։

Լենինյան հրապարակումների թվումն են նաև Դիտողություններ ՌԿԿ պատմության վերաբերյալ, «Պարենհարկի մասին» բրոշյուրի պլանը և կոնսպեկտները, Կուսակցության XI համագումարում ՌԿ(բ)Կ Կենտկոմի քաղաքական հաշվետվության պլանը, Գրառումներ և քաղվածքներ պետության մասին Մարքսի և Էնգելսի երկերից, Դիտողություններ Բուխարինի «Իմպերիալիստական պետության տեսության շուրջը» հոդվածի մասին։ Ամսագրում առաջին անգամ մասսայական ընթերցողին գտան Վ. Ի. Լենինի շատ նամակներ, այդ թվում լեհ կոմունիստներին, «Պրավդա»-ի խմբագրությանը, Ի. Ֆ. Արմանդին, Ա. Դ. Ցյուրուպային, Վ. Ա. Կարպինսկուն, Գ. Վ. Պլեխանովին և այլոց ուղղված նամակները։

Ամսագիրը հրապարակել է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի անհայտ ու առաջին անգամ ռուսերեն թարգմանված շատ երկեր ու նամակներ։ Դրանք են՝ Կ. Մարքսի տնտեսագիտական ձեռագրերը, մի հատված Կապիտալի նախապատրաստական աշխատանքներից, Կ. Մարքսի Ափիոնի առևտուրը երկու հոդվածները, նրա գրչին պատկանող՝ Գլխավոր խորհրդի զեկուցումը ժառանգական իրավունքի մասին, Ֆ. Էնգելսի Հունիսի 25, Պրուդոն, «Ճգնաժամը» Պրուսիայում հոդվածները, Կ. Մարքսի նամակները Ջեննի Լոնգեին, Ֆ. Էնգելսին, պրոֆ. Բիզլիին, Կարլ Կլինգսին, Լեոն Ֆոնտենին, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի նամակները Բեբելին, Լիբկնեխտին, Բրակեին և ուրիշների, Ֆ. Էնգելսի երկու նամակը պրոլետարական շարքերի և կուսակցական կարգապահության միասնության նշանակության մասին և այլն— ընդամենը ավելի քան հիսուն հրապարակում։

Ամսագրի էջերում պարբերաբար տպագրվել և տպագրվում են մեր կուսակցության ու միջազգային կոմունիստական շարժման կարևորագույն փաստաթղթերը։

Ստեղծված լինելով դժվարին ու բարդ ժամանակ, երբ լուծվում էր մեր երկրում սոցիալիզմի կառուցման պատմական բախտը, ամսագիրն անմիջապես հանդես եկավ որպես կուսակցության ակտիվ օգնական՝ լենինյան ուսմունքի անաղարտության համար, կուսակցության գաղափարական ու կազմակերպական միասնության համար մղված պայքարում, ընդդեմ նրա գլխավոր գծից շեղվող ամեն տեսակ թեքումների։ «Բոլշևիկ»-ի 1924—1927 թվականների կոմպ-

«Կոմունիստը» լայնորեն նշեց այնպիսի նշանակալի իրադարձություններ,
ինչպես՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակը,
Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ծննդյան 150, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակնե-
րը, ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակը, հրապարակելով մեծ թվով հոդվածներ,
որոնք բացահայտում են մարքսիզմ-լենինիզմի համաշխարհային-պատմական
նշանակությունն ու կենսահաստատ ուժը, զարգացնում նրա հիմնական տեսա-
կան դրույթները։

Ամսագրի ուշադրության կենտրոնում են կուսակցության XXIV համագու-
մարի, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումների, ՍՄԿԿ Կենտկոմի որոշում-
ներում առաջադրված տեսական պրոբլեմների լուսաբանումն ու մշակումը։
Նրա էջերում լայնորեն արտացոլվել և արտացոլվում են «Հասարակական գի-
տությունների հետագա զարգացման և կոմունիստական շինարարության մեջ
նրանց դերի բարձրացման միջոցառումների մասին», «Սոցիալիստական մրր-
ցության կազմակերպման հետագա բարելավման մասին», «Աշխատավորների
տնտեսական կրթության բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներում
առաջադրված հարցերը և այլն։

Ամսագրում առաջնակարգ տեղ է գրավում ՍՄԿԿ տնտեսական քաղաքա-
կանության, IX հնգամյակի արմատական պրոբլեմների և դրանց լուծման ուղի-
ների, մասսաների աշխատանքային ակտիվության ըստ ամենայնի զարգաց-
ման, ինչպես նաև մեր երկրում կոմունիստական շինարարության մասին կու-
սակցության XXIV համագումարի նշած ծրագրի կատարման գործում տնտե-
սական գիտության խնդիրների լուսաբանումը։ Համագումարից հետո հրապա-
րակված նյութերում համակողմանի ցույց է տրվում կուսակցության պայքարը
հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար, գիտա-
տեխնիկական առաջադիմության արագացման, կապիտալ շինարարության
բարելավման, սոցիալիստական մրցության հետագա ծավալման, աշխատան-
քային կարգապահության և կազմակերպվածության ամրապնդման, սովետա-
կան ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման համար։

«Կոմունիստը» ուշադրությունը կենտրոնացնում է փիլիսոփայական գի-
տության արմատական պրոբլեմների վրա, որոնք հրատապ են դարձել կոմու-
նիստական շինարարության պրակտիկայի և համաշխարհային ասպարեզում
տեղի ունեցող գաղափարախոսական պայքարի պայմաններում։ Նա ձգտում է
բացահայտել փիլիսոփայական հասունացած հարցերի լուծման հեռանկարային
ուղիները, մարքս-լենինյան մեթոդոլոգիայի նշանակությունը բնական ու հա-
սարակական գիտությունների զարգացման համար։ ՍՄԿԿ XXIV համագումարի
որոշումների պրոպագանդման ու դրանց առաջադրած պրոբլեմների մշակման
առնչությամբ հրապարակվել են ականավոր գիտնականների մի շարք ընդհան-
րացնող հոդվածներ, որոնք բացահայտում են սովետական փիլիսոփաների
նվաճումները փիլիսոփայական գիտության հիմնական բնագավառներում, լու-
սաբանում մարքս-լենինյան փիլիսոփայության զարգացման առավել կարևոր
ասպեկտներն արդի էտապում։

Մեծ տեղ է գրավում լենինյան փիլիսոփայական ժառանգության համա-
կողմանի լուսաբանումը։ Ամսագիրը ջանում է լենինիզմը բացահայտել որպես
կենդանի, զարգացող, շարունակ հարստացող ուսմունք։ Հրապարակված մի
շարք նյութերում ցույց է տրված լենինյան փիլիսոփայական գաղափարների
նշանակությունը՝ որպես տեսություն և մեթոդոլոգիա, որը հնարավորություն է
ընձեռում ճիշտ, խոր գիտականությամբ մոտենալու այն նոր պրոբլեմների
լուծմանը, որ առաջադրում են ժամանակակից հասարակական-պատմական
պրակտիկան, գիտական իմացության հատուկ բնագավառների զարգացումը,
փիլիսոփայական գիտությունը։ Լենինյան փիլիսոփայական ժառանգությանը
նվիրված հոդվածները ցույց են տալիս լենինիզմի «հնացածության» մասին
ռևիզիոնիստական առասպելի սնանկությունը և դրա հետ մեկտեղ քննադատում
դոգմատիկ վերաբերմունքը Վ. Ի. Լենինի փիլիսոփայական աշխատությունների
նկատմամբ։ «Կոմունիստը» ձգտում է բացահայտել մարքս-լենինյան փիլիսո-
փայության ինտերնացիոնալ բնույթը, կոնկրետ ցույց տալ, թե փիլիսոփայա-



կան գիտության հրատապ պրոբլեմներն ինչպես են մշակվում տարբեր երկր-
ների մարքսիստ-գիտնականների համատեղ ջանքերով։

Մշտապես տպագրվում են ժամանակակից բուրժուական գաղափարախո-
սության և ռևիզիոնիզմի քննադատությանը նվիրված հոդվածներ։ Դրանցում
ո՛չ միայն մերկացվում են բուրժուական գաղափարախոսների առաջադրած
կոնցեպցիաները, այլև փորձ է արվում մարքս-լենինյան փիլիսոփայության
դիրքերից պոզիտիվ կերպով քննության առնել այն ռեալ պրոբլեմները, որոնք
նրանք դարձնում են սպեկուլյացիայի առարկա։

Ամսագրի ուշադրության կենտրոնում է զարգացած սոցիալիստական հա-
սարակության, նրա պատմական տեղի ու չափանիշների, սոցիալական կա-
ռուցվածքի, ՍՍՀՄ-ում սոցիալական առաջադիմության հիմնական հատկանիշ-
ների, սոցիալիստական ապրելակերպի, սոցիալիստական դեմոկրատիայի,
ՍՄԿԿ կողմից իրականացվող գաղափարական-դաստիարակչական աշխատան-
քի պրոբլեմների լուսաբանումը։ Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում
լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման, սոցիա-
լիստական ազգերի հետագա բարգավաճման ու մերձեցման, ՍՍՀՄ ժողովուրդ-
ների եղբայրական բարեկամության ամրապնդման պրոբլեմների լուսաբան-
մանը։

Ամսագրի էջերում լայնորեն լուսաբանվում և տեսականորեն հիմնավոր-
վում են զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում կու-
սակցության ղեկավար և ուղեցույց դերի բարձրացման, նրա կողմից այդ հա-
սարակության զարգացման գլխավոր հեռանկարի, քաղաքական ճիշտ գծի և
աշխատավորների կազմակերպման պրոբլեմները՝ դրանք կենսագործելու նպա-
տակով։ Չափազանց կարևոր են նման պրոբլեմների իմաստավորումն ու մշա-
կումը, հատկապես եթե նկատի ունենանք, որ կուսակցության ղեկավար դերի
հարցը հեղափոխական շարժման, նոր հասարակության կառուցման արմատա-
կան հարցերից մեկն է։ Այսօր, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում,
այդ հարցը դարձել է մարքսիստ-լենինյանների և ռևիզիոնիզմի տարբեր ձե-
վերի ներկայացուցիչների միջև մղվող պայքարի հանգուցակետը։ Ամսագիրը
բացահայտում է կուսակցության ղեկավար դերը մեր հասարակության տնտե-
սական, սոցիալ-քաղաքական ու հոգևոր կյանքում, սովետական պետության
արտաքին քաղաքական կուրսի իրականացման գործում։

Ակնառու տեղ են գրավում կուսակցական աշխատանքի առաջավոր փորձն
ընդհանրացնող և պրոպագանդող հոդվածները։ Դրանցից շատերում պատմվում
է այն մասին, թե ինչպես են կուսակցական կոմիտեները բարձրացնում հան-
րային արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի արտադրողա-
կանությունը, արագացնում գիտատեխնիկական առաջադիմությունը, գործելով
կազմակերպչական և դաստիարակչական աշխատանքի իրենց հատուկ մեթոդ-
ներով, թույլ չտալով սովետական և տնտեսական օրգանների փոխարինում և
մանր խնամակալություն։ Մեծ ուշադրություն է նվիրվում կուսակցական կազ-
մակերպությունների քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի մա-
կարդակի բարձրացմանը, նրանց գործունեության ոճի ու մեթոդների կատա-
րելագործմանը, կուսակցական կյանքի լենինյան նորմերի և ղեկավարման
սկզբունքների, ամենից առաջ դեմոկրատական ցենտրալիզմի հետևողական
պահպանմանը, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության
բարելավմանը, ընդունված որոշումների կատարման ստուգմանը, բոլոր կո-
մունիստներին թերությունների նկատմամբ բոլշևիկյան անհաշտության ոգով
դաստիարակելուն, կուսակցական ու պետական կարգապահության ամրա-
պնդմանը։

Առանձնապես անհրաժեշտ է նշել, որ ամսագիրը պարբերաբար հոդված-
ներ է հրապարակում կուսակցության հիմքը կազմող սկզբնական կուսակցա-
կան կազմակերպությունների գործունեության վերաբերյալ։ Դրանք արդյունա-
բերական ձեռնարկության, կառույցի, կոլտնտեսության, սովխոզի, գիտահե-
տազոտական ինստիտուտի, բարձրագույն ուսումնական հաստատության, մի-
նիստրության, դպրոցի, բուժհիմնարկության, առևտրական ձեռնարկության

սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին վերջին տարիներս տպագրված հոդվածներն են։ Դրանցում բացահայտվում, տեսականորեն իմաստավորվում է տնտեսական ու կուլտուրական շինարարության տարբեր տեղամասերի սկզբնական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի առաջավոր փորձը, ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու իրավունքն իրականացնելու, կոնկրետ պայմաններից ելնելով՝ ՍՄԿԿ XXIV համագումարի, կուսակցության Կենտկոմի պլենումների կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու փորձը։

Սիստեմատիկաբար հրապարակվում են հոդվածներ պատմության և պատմագրության մեթոդոլոգիայի մասին։ Դրանցում բացահայտվում են պատմագիտության մարքս-լենինյան մեթոդոլոգիայի այնպիսի արմատական ու հրատապ պրոբլեմներ, ինչպես՝ սոցիալ-տնտեսական ֆորմացիաների տեսությունը, կուսակցականության, պատմականության սկզբունքները, քննադատվում են բուրժուական պատմագրության հակագիտական, սուբյեկտիվիստական, ռեակցիոն կոնցեպցիաները։

Ղեկավարվելով ՍՄԿԿ XXIV համագումարի այն դրույթներով, որ նոր մարդու ձևավորումը կուսակցության գլխավոր խնդիրներից մեկն է կոմունիստական շինարարության մեջ, ամսագիրը տպագրում է հոդվածներ՝ նվիրված զարգացած սոցիալիստական հասարակության հոգևոր կուլտուրայի հետագա աճի, դրա գիտական կառավարման, զարգացող գիտատեխնիկական հեղափոխության և կոմունիզմ կառուցող համակողմանիորեն զարգացած անհատի ձևավորման նպատակով մասնագետներ պատրաստելու գործում հանրակրթական, պրոֆեսիոնալ-տեխնիկական և բարձրագույն դպրոցի դերի բարձրացման պրոբլեմներին։

ՍՄԿԿ XXIV համագումարից հետո հրապարակվել են նյութեր, որոնք բացահայտում են համագումարի փաստաթղթերում, ինչպես և «Գրական-գեղարվեստական քննադատության մասին», «Սովետական կինեմատոգրաֆիայի հետագա զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներում առաջ քաշված դրույթները սովետական մարդու, նրա բարոյական համոզմունքների ու հոգևոր կուլտուրայի ձևավորման գործում գրականության ու արվեստի հարաճուն դերի մասին։ Քննարկվում են սոցիալիստական ռեալիզմի տեսության, մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի գրականության ու արվեստի ձևավորման ու հետագա զարգացման, սովետական բազմազգ գրականության ու արվեստի գաղափարական միասնության, սոցիալիստական ռեալիզմի գրականությունների փոխհարստացման ու փոխազդեցության հրատապ պրոբլեմները։

Ամսագրում լայնորեն արտացոլվում են ՍՄԿԿ արտաքին քաղաքական գործունեությունը, միջազգային հարաբերությունների, համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման պրոբլեմները։ Մշակվում և լուսաբանվում են համաշխարհային սոցիալիստական համագործակցության զարգացման, մարդկության սոցիալական առաջադիմության համար դրա վճռական գործոն դառնալու պրոբլեմները։ Այդ առնչությամբ քննարկվում են սոցիալիստական պետությունների տնտեսական, քաղաքական ու գաղափարախոսական ներքին կյանքի հարցերը, ինչպես և արտաքին քաղաքական գործունեությունը։

Նկատի ունենալով, որ սոցիալիզմի երկրների տնտեսական համագործակցությունը նրանց միասնության ամրապնդման ու հզորության աճման հիմքն է, ամսագիրն ուշադրությունը բևեռում է ամենից առաջ տեսական ու գործնական այն պրոբլեմների մշակման վրա, որոնք բխում են ՏՓԽ-ի XXV նստաշրջանում ընդունված սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագրից։ Դրանցից են՝ կոմպլեքսային ծրագրի իրականացման միջազգային նշանակության, դրա կենսագործման պրոցեսում ազգայինի ու ինտերնացիոնալիստականի դիալեկտիկայի և այլ հարցեր։ Մշակվում են նաև պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա սոցիալիստական համագործակցության միասնությունն ամրապնդելու, առանձին երկրներում սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունների դրսևորման յուրա-



հատկության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի շարժիչ ուժերի վրա համաշխարհային սոցիալիզմի ազդեցության ուժեղացման պրոբլեմները։ Լայնորեն լուսաբանվում է ՍՄԿԿ, սոցիալիզմի երկրների եղբայրական կուսակցությունների պայքարը՝ տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները որպես միջազգային կյանքի նորմ հաստատելու համար։

Բացահայտելով ՍՄԿԿ XXIV համագումարի առաջ քաշած խաղաղության ծրագրի բովանդակությունը և ցույց տալով դրա իրականացման համար մղվող պայքարի ընթացքը, ամսագիրը ձգտում է, արտաքին քաղաքական կարևորագույն իրադարձությունները (առաջին հերթին՝ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումները և եղբայրական կուսակցությունների ու երկրների ղեկավարների հանդիպումները) լուսաբանելու հետ մեկտեղ, տալ ՍՄԿԿ արտաքին քաղաքական գործունեության հիմնական ուղղությունների, սկզբունքների և բնորոշ գծերի, ինչպես նաև միջազգային հարաբերությունների արդի զարգացման գլխավոր տենդենցների տեսական խոր գնահատականը։ Այդ արտահայտվեց ամենից առաջ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների լույս ընծայմանը, արտասահմանյան երկրներ կատարած նրա այցերին նվիրված հոդվածներում։

Հրապարակվում են հոդվածներ, որոնք պարզաբանում են կոմունիստական շարժման տեսական ու քաղաքական դիրքերը ազգային հարցում և նրա տեղը համաշխարհային հեղափոխական պրոցեսում, ինչպես նաև ազգային հարցի լուծման փորձը ՍՍՀՄ-ում։ Նման նյութերից են նաև ազգային-ազատագրական շարժման պրոբլեմներին նվիրված ելույթները։

Բնութագրելով ժամանակակից դասակարգային պայքարի առանձնահատկությունները, ամսագիրը շարունակ նյութեր է տպագրում մեր ժամանակի գլխավոր սոցիալական ուժի՝ բանվոր դասակարգի, ինչպես և նրա պայքարի պրակտիկայի և բանվոր դասակարգի հետազոտման տեսական ասպեկտների մասին։

Մշակվում են բանվոր դասակարգի և հեղափոխական բոլոր ուժերի գլխավոր հակառակորդի՝ իմպերիալիզմի բնութագրման հետ կապված հարցեր, ամենից առաջ երկու սիստեմների մրցության պատմական նոր իրադրությանը հարմարվելու՝ ժամանակակից իմպերիալիստական ստրատեգիայի ճգնաժամի մասին, հեղափոխական պրոցեսի զարգացման հիմնական օբյեկտիվ նախադրյալների մասին։

Ամսագիրը անդուլ ուշադրություն է նվիրում միջազգային կոմունիստական շարժման առջև ծառացող տեսական պրոբլեմներին, կոմկուսակցությունների գաղափարական-տեսական աշխատանքին, հակակոմունիզմի, բուրժուական գաղափարախոսության հիմնական հոսանքների և ժամանակակից հեղափոխական պրոցեսի ռևիզիոնիստական խեղաթյուրումների մերկացմանը, մաոիզմի քննադատությունը, Պեկինի ղեկավարների ներքին ու արտաքին քաղաքականության հակասովետական, հակաժողովրդական էության բնութագրմանը։ Ամսագրի նյութերը կրում են մարտական, հարձակողական բնույթ, աչքի են ընկնում բարձր կուսակցականությամբ, անհաշտությամբ՝ մարքս-լենինյան տեսության ամեն տեսակ աղավաղումների նկատմամբ։

Սովետական ամբողջ մամուլի զարգացման, նրա գաղափարական ու քաղաքական ներգործության աճի հետ մեկտեղ մեծացել է նաև «Կոմունիստ»-ի ազդեցությունը, հեղինակությունն ու ժողովրդականությունը։ Եթե ամսագրի առաջին համարը լույս է տեսել 15 հազար օրինակ տպաքանակով, ապա այժմ նրա տպաքանակը հասնում է 940 հազարի։ «Կոմունիստ»-ը կուսակցական, սովետական ու տնտեսական ակտիվի, գիտական աշխատողների, բարձրագույն ուսումնական հաստատությունների դասախոսների, ասպիրանտների և ուսանողների, սովետական ինտելիգենցիայի լայն շրջանների սիրած ամսագիրն է։ Այն քաջ հայտնի է և արտասահմանում։

«Կոմունիստ» ամսագիրը եղել և մնում է կուսակցության հավատարիմ, մարտական օգնականը՝ նրա լենինյան գլխավոր գծի իրականացման գործում, կոմունիզմի վեհ իդեալների հաղթանակի համար մղվող պայքարում։

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴԻ ԿԱՆԽԱԳԾՈՒՄՆԵՐՈՎ

**Ս. Ց. ԶՈՒՐԱԲՅԱՆ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Սովետական Միության տնտեսական հզորությունը, նրա քաղաքական, սոցիալ-տնտեսական կարգը Վ. Ի. Լենինի հանճարեղ գաղափարների, գիտական խոր կանխագուշակումների իրական մարմնավորումն են։*

*Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը, ելնելով երկրի էլեկտրիֆիկացման լենինյան ծրագրից, հետևողականորեն վարել և վարում են դրա իրագործման քաղաքականություն։ Ինչ ձեռք է բերվել հետո էլեկտրաէներգիայի արտադրության ասպարեզում, գերազանցում է ԳՈԷԼՌՈ-ի պլանի կանխագծումները։ 1972 թ. ՍՍՀՄ արդյունաբերության արտադրանքը, 1913 թվականի համեմատությամբ, աճեց 105 անգամ, այդ թվում՝ «Ա» խմբինը՝ 246, իսկ «Բ»-ինը՝ 35 անգամ։ Ավելի ցայտուն են էլեկտրաէներգիայի արտադրության աճի տվյալները։ Եթե 1913 թ. ցարական Ռուսաստանում արտադրվել է (ՍՍՀՄ ժամանակակից սահմաններում) 2039 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, ապա ՍՍՀՄ-ում 1972-ին՝ 853 մլրդ, 1973-ին՝ 915, այսինքն՝ 1972 թ. համեմատությամբ, աճել է 62 մլրդ կվտ-ժամով։*

*Ահա թե էլեկտրիֆիկացման ասպարեզում ինչպիսի հսկայական թռիչք է կատարել մեր երկիրը։ Այժմ մեր խոշորագույն հիդրո և ջերմաէլեկտրակայանները շատ և շատ ետ են թողել այն, ինչ ունեինք 20—30-ական թվականներին։ Նույնիսկ Դնեպրոգէսը, որն իր ժամանակ էլեկտրիֆիկացման ասպարեզում դիտվում էր որպես խոշորագույն կառույց, ներկայիս Բրատսկի, Կրասնոյարսկի և մյուս հսկա էլեկտրակայանների համեմատությամբ, շատ համեստ է երևում։*

*Էլեկտրաէներգիան լայնորեն կիրառվում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում (արդյունաբերություն, գյուղատնտեսություն, տրանսպորտ և այլն), բնակչության կենցաղային կարիքների համար։ Աշխատանքի էլեկտրազինվածությունը, որը տեխնիկական առաջընթացի կարևորագույն ցուցանիշներից մեկն է, զգալիորեն բարձրացել է։ Եթե 1913 թ. ընդունենք որպես 1, ապա 1971 թ. ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի էլեկտրազինվածությունը կազմել է 27։*

*Էլեկտրիֆիկացիայի զարգացումը Վ. Ի. Լենինը անխզելիորեն կապում էր երկրի ինդուստրացման, արդյունաբերության զարգացման հետ։ Իրագործելով երկրի ինդուստրացման լենինյան պլանը, Սովետական Միությունը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ պատմական կարճ ժամանակամի-*



*ջոցում՝ առաջին և երկրորդ հնգամյակների ընթացքում, վիթխարի թռիչք կատարեց և կիսաագրարայինից վերածվեց ինդուստրիալ հզոր տերության։ Դեռ մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը Սովետական Միությունն իր արդյունաբերական արտադրանքի ծավալով Եվրոպայում գրավեց առաջին, իսկ աշխարհում երկրորդ տեղը (ԱՄՆ-ից հետո)՝ 1913 թ. համապատասխանաբար չորրորդ և հինգերորդ տեղերի փոխարեն։*

*Արտադրամիջոցների հասարակական սեփականության, տնտեսության պլանաչափ անցիկլային զարգացման, տնտեսության նկատմամբ աշխատավորների նոր, գիտակցական վերաբերմունքի շնորհիվ աճել են սոցիալիստական արդյունաբերության տեմպերը՝ կապիտալիստական երկրների արդյունաբերության աճի համեմատ։ 1951—1971 թթ. ՍՍՀՄ արդյունաբերության արտադրանքի աճի միջին տարեկան տեմպերը կազմել են 10, իսկ ԱՄՆ-ինը՝ 4,2, ազգային եկամտինը՝ համապատասխանաբար 8,5 և 3,4 տոկոս և այլն։*

*Սոցիալիստական ինդուստրիայի զարգացումը, մանավանդ ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, զուգորդվում է ժողովրդական տնտեսության, հատկապես, նրա առաջատար ճյուղի՝ արդյունաբերության մեջ էական կառուցվածքային փոփոխությունների հետ։ Խոսքը վերաբերում է ո՛չ միայն արդյունաբերության տեսակարար կշռի առավել բարձրացմանը, այլև արդյունաբերության ճյուղերի միջև կառուցվածքային փոփոխություններին, երբ ավելի բարձր տեմպերով են աճում առավել վճռական ճյուղերը, այն ճյուղերը, որոնք անմիջականորեն կապված են ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների ներդրման հետ (մեքենաշինություն, սարքաշինություն, ռադիոէլեկտրոնիկա, քիմիական արդյունաբերություն և այլն)։*

*Արդյունաբերական կառուցվածքային փոփոխությունները վերաբերում են նաև դրա կարևոր ճյուղերից մեկին՝ վառելիքի արդյունաբերությանը, որում առավել արագ տեմպերով է աճում նավթի ու գազի, և հակառակը, նվազում քարածխի և վառելիքի այլ տեսակների տեսակարար կշիռը։ Այսպես, եթե նավթի և գազի տեսակարար կշիռը երկրի վառելիքի ռեսուրսներում 1960 թ. կազմում էր 39,1, իսկ 1970 թ.՝ 60,4 տոկոս, ապա ընթացիկ հնգամյակի վերջին՝ 1975 թ. նավթի և գազի տեսակարար կշիռը հասնելու է 67,4 տոկոսի (որից նավթինը՝ 44,1, իսկ գազինը՝ 23,3 տոկոս)։ Վառելիքային ռեսուրսներում նավթի և գազի տեսակարար կշռի բարձրացումը կապված է այն բանի հետ, որ նավթը և գազը վառելիքի ավելի հարմարավետ և արդյունավետ տեսակներն են և երկրորդ, դրանց արտադրածախքերն զգալիորեն ցածր են, քան քարածխի և վառելիքի մյուս տեսակների արտադրածախքերը։ Այժմ զարգացած կապիտալիստական երկրներում, այդ թվում նաև ԱՄՆ-ում, ծավալվում է «էներգետիկ» ճգնաժամը։ Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները ոչ «էներգետիկ» և այլ ճգնաժամ չեն ապրում, այլ սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի հիման վրա նորմալ բավարարում են նավթի, գազի, էլեկտրաէներգիայի իրենց կարիքները։ Սովետական Միությունը նավթի, գազի այնպիսի հսկայական պաշարներ ունի, որոնք բավարարում են ո՛չ միայն մեր երկրի պահանջները, այլ արտահանվում են նաև ՏՓԽ-ի, ինչպես նաև մի շարք կապիտալիստական երկրներ։*

*ՍՍՀՄ տնտեսության մյուս կարևոր կառուցվածքային փոփոխությունը վերաբերում է ինչպես ողջ ժողովրդատնտեսության առաջին և երկրորդ ստորաբա-*

ժանումներին, այնպես էլ արդյունաբերության մեջ «Ա» և «Բ» խմբերին, այսինքն՝ արտադրամիջոցների արտադրության և անձնական սպառման առարկաների աճի տեմպերի հարաբերակցությանը։ Վ. Ի. Լենինը դեռ 1893 թ. գրած Այսպես կոչված շուկաների հարցի առթիվ աշխատությունում, զարգացնելով վերարտադրության մասին Մարքսի ուսմունքը, հատկապես վերարտադրության նրա հռչակավոր սխեմաները, հանգեց այն եզրակացության, որ «...ամենից արագ աճում է արտադրամիջոցների համար արտադրամիջոցների արտադրությունը, ապա սպառման միջոցների համար արտադրամիջոցների արտադրությունը և ամենից ավելի դանդաղ՝ սպառման միջոցների արտադրությունը» (Երկեր, հ. 1, էջ 91)։

Այսպիսով, Վ. Ի. Լենինը նշել է արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքի գոյությունը, որը վերաբերում է ո՛չ միայն կապիտալիստական, այլև սոցիալիստական տնտեսությանը։ ՍՍՀՄ ութերորդ (1966—1970 թթ.) հնգամյակում արդյունաբերության «Բ» խմբի աճի տեմպերը համարյա հավասարվեցին «Ա» խմբի աճի տեմպերին (8,4 և 8,6 տոկոս), իսկ ընթացիկ (1971—1975 թթ.) հնգամյակում նախատեսված է «Բ» խմբի աճի ավելի բարձր տեմպ, քան «Ա»-ին (8,3 և 7,9 տոկոս)։ Մասնավորապես, 1974 թ. պլանով նախատեսվում է արդյունաբերության մեջ արտադրամիջոցների արտադրության աճը 6,6, իսկ սպառման առարկաների արտադրությանը՝ 7,5 տոկոս։

Այս փաստերից սովետական առանձին տնտեսագետներ այն թեզն առաջադրեցին, որ արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքը գործում էր մեր տնտեսության ցածր մակարդակի, դրա տեխնիկա-տնտեսական հետամնացության պայմաններում, իսկ մեր երկրի ներկայիս անօրինակ հզորության, զարգացած սոցիալիզմի պայմաններում այդ տնտեսական օրենքը դադարում է գործելուց, դրա փոխարեն սկսում է գործել սպառման միջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքը։ Սակայն ժողովրդական տնտեսության մասշտաբով առաջին ստորաբաժանման աճի տեմպերը շարունակում են գերազանցել երկրորդին։ Այսպես, ընթացիկ հնգամյակում արտադրամիջոցների արտադրության աճը կազմելու է 141, իսկ սպառման միջոցների արտադրությանը՝ 137 տոկոս։

Ինչ վերաբերում է արդյունաբերության մեջ «Բ» խմբի աճի առավելությանը, «Ա»-ի համեմատությամբ, ապա, մեր կարծիքով, այդ չի կարելի դիտել որպես հետագայում և մշտապես գործող օրինաչափություն, որովհետև «Ա» խմբի ընդհանրապես առավել աճն անհրաժեշտ է ընդլայնված վերարտադրության իրագործման համար։ Վերը նշել ենք, որ 1972 թ., 1913 թ. համեմատությամբ, եթե ՍՍՀՄ արդյունաբերության «Ա» խմբի աճը կազմել է 105, ապա «Բ»-ինը՝ 35 անգամ։ Աճի տեմպերի այդ մեծ տարբերությունը որևէ սխալի հետևանք չէր, այլ օբյեկտիվ անհրաժեշտություն նախկինում մեր երկրի տեխնիկա-տնտեսական հետամնացության վերացման համար։ Այժմ երբ մեր երկրի էկոնոմիկան աննախընթաց հզորության է հասել, օբյեկտիվ հնարավորություն և անհրաժեշտություն է առաջացել արդյունաբերության «Բ» խմբի աճի տեմպերը մոտեցնելու և նույնիսկ գերազանցելու «Ա»-ի աճի տեմպերից, որպես ընթացիկ հնգամյակի հիմնական խնդրի լուծման կարևոր գրավականներից մեկը։ Իսկ իններորդ հնգամյակի հիմնական խնդիրը, ինչպես հայտնի է, կուսակցության XXIV համագումարը սահմանել է այսպես. «...ապահովել



ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելք սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետությունը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության աճն արագացնելու հիման վրա» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 318)։

Այստեղ, ըստ էության, խոսքը վերաբերում է սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջների իրականացմանը, մի օրենք, որի հիմունքները նշել է Վ. Ի. Լենինը՝ քննադատելով Գ. Պլեխանովի ձևակերպումը ապագա հասարակության նպատակի վերաբերյալ։ Լենինը նշում է տնտեսության պլանաչափ զարգացման դերը «...հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացումն ապահովելու համար» (Երկեր, հ. 6, էջ 53)։ Հետևաբար, հասարակական արտադրության առաջին և երկրորդ ստորաբաժանումների, ինչպես նաև արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի աճի տեմպերի հարաբերակցությունը, մանավանդ զարգացած սոցիալիզմի պայմաններում, հանգեցնում է սոցիալիզմի այն հիմնական խնդրի լուծմանը, որը շատ վաղուց նշել էր Վ. Ի. Լենինը։

Վ. Ի. Լենինը առանձնակի նշանակություն էր տալիս աշխատանքի արտադրողականության բարձրացմանը նոր հասարակարգի հաղթանակի համար, ասելով. «Աշխատանքի արտադրողականությունը, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար... Կապիտալիզմը կարող է վերջնականապես պարտվել և կպարտվի, որովհետև սոցիալիզմն ստեղծում է նոր, աշխատանքի շատ ավելի բարձր արտադրողականություն» (Երկեր, հ. 29, էջ 523)։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման հիմնական գործոնը տեխնիկական առաջընթացն է։ Եվ պատահական չէ, որ ՍՄԿԿ մեծ նշանակություն է տալիս տեխնիկական առաջընթացի հետ կապված հարցերին։ Կուսակցության XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ընդգծեց. «Մեր առջև ծառացած է պատմական կարևորություն ունեցող խնդիր՝ գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները օրգանապես միացնել տնտեսության սոցիալիստական սիստեմի առավելություններին, ավելի լայնորեն զարգացնել արտադրության հետ գիտության միացման սեփական, սոցիալիզմին հատուկ ձևերը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 75—76)։

Տեխնիկական առաջընթացն իր կոնկրետ արտահայտությունն է գտնում նաև ընթացիկ հնգամյակի պլանում. նախատեսված է մեքենաշինության մեջ յուրացնել 19 հազար նոր բանվածքներ, նորացնել արդյունաբերական արտադրանքի մոտ 20 հազար ստանդարտներ։ Հնգամյակի անցած երկու տարվա և ինն ամսվա ընթացքում յուրացվել է ավելի քան 9 հազար տեսակի բանվածքի սերիական արտադրությունը։ Միայն 1974 թ. պլանով նախատեսվում է յուրացնել ավելի քան 4 հազար նոր տեսակի մեքենաների, սարքավորումների արտադրությունը, կիրառել առաջավոր տեխնոլոգիայի արտադրապրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման 540 առաջադրանք և այլն։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում տեխնիկական առաջընթացի, աշխատանքի սոցիալիստական կազմակերպման ու կարգապահության հետ միասին, Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս աշխատավորների սոցիալիստական մրցությանը, որպես նրանց նոր, գիտակցա-

կան վերաբերմունքի արտահայտություն աշխատանքի նկատմամբ: Հայտնի է այն բարձր գնահատականը, որ Վ. Ի. Լենինը տվել է առաջին շաբաթօրյակներին և այդ առթիվ գրել մի շարք կարևոր հոդվածներ՝ Մեծ նախաձեռնություն, Ինչպես կազմակերպել մրցությունը, Դարավոր կացութաձևի խորտակումից դեպի նորի ստեղծումը և այլն: Ներկայումս սոցիալիստական մրցությունը հսկայական չափերի է հասել թե՛ իր ծավալով և թե խորությամբ, դարձել մի համահասարակական շարժում, բարձրանալով նոր աստիճանի, ինչպիսին է կոմունիստական աշխատանքի համար շարժումը:

Սոցիալիստական մրցությունը, ռացիոնալիզատորական շարժումը, գյուտարարությունը դարձել են մեր երկրի էկոնոմիկայի զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության կարևորագույն գործոններից մեկը: Իսկ թե ի՞նչ է տալիս աշխատանքի արտադրողականության բարձրացումը սոցիալիստական տնտեսության զարգացմանը, դա երևում է նրանից, որ իններորդ հնգամյակում նախատեսված է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ստանալ ազգային եկամտի աճի՝ 80—85, արդյունաբերական արտադրանքի՝ 87—90 տոկոսը:

Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճի տեմպերով Սովետական Միությունը վաղուց է առաջ անցել զարգացած կապիտալիստական երկրներից, իսկ աշխատանքի արտադրողականության մակարդակով անցել Եվրոպայի զարգացած կապիտալիստական երկրներից. սակայն դեռ զգալիորեն, հատկապես գյուղատնտեսության մեջ, ետ է մնում ԱՄՆ-ից: Կարող ենք վստահորեն ասել, որ ոչ հեռավոր պատմական ժամանակաշրջանում Սովետական Միությունն աշխատանքի արտադրողականության մակարդակով ևս կանցնի ԱՄՆ-ից, և լիովին կիրագործվի Վ. Ի. Լենինի այն կանխագուշակումը, որ սոցիալիզմը կստեղծի «աշխատանքի շատ ավելի բարձր արտադրողականություն», քան կապիտալիստական երկրները:

Սոցիալիստական տնտեսության զարգացման համար առանձնահատուկ նշանակություն ունի նրա կառավարման և պլանավորման կատարելագործումը, որոնց նույնպես մեծ նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը: Սովետական իշխանության հերթական խնդիրները աշխատությունում նա գրել է. «Մենք, բոլշևիկներիս կուսակցությունը, Ռուսաստանին համոզեցինք: Մենք Ռուսաստանը նվաճեցինք հարուստներից չքավորների համար, շահագործողներից՝ աշխատավորության համար: Մենք այժմ պետք է Ռուսաստանը կառավարենք» (Երկեր, հ. 27, էջ 287):

Վ. Ի. Լենինը պահանջում էր ստեղծել կառավարման ճկուն, էժան, բյուրոկրատիզմից զերծ ապարատ: Կուսակցությունը կիրառում է Լենինի այս պատգամը ևս: Դա մասնավորապես արտահայտվում է նրանով, որ, օրինակ, 1974 թ. պետական բյուջեով երկրի կառավարման ծախսերը սահմանված են 1,8 մլրդ ռուբլի, այսինքն այնքան, որքան նախորդ՝ 1973 թվականին: Թեպետ բացարձակորեն կառավարման ծախսերը այստեղ չեն փոքրացել, սակայն, նկատի ունենալով մեր հասարակության, նրա բնակչության և տնտեսության աճը, այդ ծախսերը փաստորեն պակասել են: Կուսակցության XXIV համագումարը առանձնակի ուշադրություն նվիրեց տնտեսության կառավարման և պլանավորման կատարելագործման հարցերին: Ի կատարումն համագումարի որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1973 թ.



մարտին որոշում ընդունեցին «Արդյունաբերության կառավարման հետագա կատարելագործման մի քանի միջոցառումների մասին»: Դրա իմաստն այն է, որ ավելի պարզեցվի և գործունյա դառնա արդյունաբերության կառավարման ապարատը, վերացվեն ավելորդ օղակները, անցում կատարվի արդյունաբերության կառավարման երկօղակ և եռօղակ սիստեմներին:

Այսպիսով, խոսքը վերաբերում է կառավարումը պետական միավորմանը, ձեռնարկությանն ավելի ու ավելի մերձեցնելուն, որը, անկասկած, դրական արդյունք կտա:

Սոցիալիստական տնտեսավարման հարցում Վ. Ի. Լենինն ամենայն սրությամբ էր դնում հաշվառման և վերահսկողության հարցը, ընդգծելով, որ սոցիալիզմը հաշվառում ու վերահսկողություն է: Սովետական իշխանության հերթական խնդիրները իր հայտնի աշխատությունում նա ասում էր, որ մինչև այժմ առաջին պլանի վրա էին դրված շահագործողների սեփականազրկման հարցերը, իսկ «Այժմ առաջին պլանի վրա է դրվում հաշվառման և վերահսկողության կազմակերպումը...» (Երկեր, հ. 27, էջ 292):

Հաշվառումը և վերահսկողությունը պետք է ընդգրկի սոցիալիստական հասարակության բոլոր բնագավառները, հատկապես տնտեսական բնագավառը՝ արտադրությունը, բաշխումը, փոխանակությունը, սպառումը: Առանց դրա հնարավոր չէ իսկական պլանային տնտեսության վարումը: Հաշվառումը և վերահսկողությունն անհրաժեշտ են նաև սոցիալիստական սեփականությունն ամեն կարգի հափշտակումներից պահպանելու, հակահասարակական անձնավորությունների դեմ պայքարի համար: Ներկայումս, երբ պայքար է ծավալվում, մասնավորապես մեր հանրապետությունում, սոցիալիստական սեփականության հափշտակումների, սպեկուլյացիայի, կաշառակերության և այլ կարգի հակահասարակական երևույթների դեմ, Վ. Ի. Լենինի ցուցումները հաշվառման և վերահսկողության մասին առավել հրատապ և ժամանակակից են դառնում:

Վ. Ի. Լենինը կարևոր նշանակություն էր տալիս Սովետական Միության արտաքին տնտեսական կապերին, մի կողմից, որպես երկրի էկոնոմիկայի զարգացման գործոնի, մյուս կողմից՝ որպես պետությունների միջև խաղաղության ամրապնդման միջոցի:

Սովետների համառուսաստանյան IX համագումարում իր զեկուցման մեջ Վ. Ի. Լենինը ասում էր. «Եվ ահա մենք տեսնում ենք, թե ինչպես է փոխվում ամենաչափավոր, ռեհասարակ սոցիալիզմի վերաբերյալ ամեն մի մտքից վճռականապես և անպայմանորեն հեռու բուրժուազիայի ներկայացուցիչների ձայնը...» (Երկեր, հ. 33, էջ 159):

Լենինը, ողջունելով Ջենովայի կոնֆերանսը, ասել է. «...մենք հիանալի հասկանում էինք և ամենևին չէինք թաքցնում, որ գնում ենք այնտեղ իբրև վաճառականներ, որովհետև մեզ անպայման անհրաժեշտ է առևտուրը կապիտալիստական երկրների հետ...» (Երկեր, հ. 33, էջ 246):

Սակայն, ՍՍՀՄ այն ժամանակվա տնտեսական ցածր մակարդակը դեռ լայն հնարավորություններ չէր ստեղծում արտաքին տնտեսական կապերի զարգացման համար: Դրությունն արմատապես փոխվեց երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, մանավանդ վերջին երկու տասնամյակներում՝ կապված երեք պատմական նշանակություն ունեցող փաստերի հետ. Սովետական Միության տնտեսական հզորության մեծ չափով բարձրացումը. սոցիալիզ-

մի համաշխարհային սիստեմի, հատկապես, ՏՓԽ-ի կազմավորումը. իմպերիալիզմի գաղութային սիստեմի կործանումը և ավելի քան 70 նոր, զարգացող երկրների առաջացումը։ Այսպիսով, ներկայումս Սովետական Միությունն արտաքին տնտեսական կապեր ունի սոցիալիստական, զարգացող և զարգացած կապիտալիստական երկրների հետ։ 1972 թ. ՍՍՀՄ արտաքին ապրանքաշրջանառությունում սոցիալիստական երկրների տեսակարար կշիռը կազմում էր 64,5 (այդ թվում՝ ՏՓԽ-ի երկրների հետ՝ 59,8 տոկոս), զարգացող երկրներինը՝ 12,9, արդյունաբերական զարգացած կապիտալիստական երկրներինը՝ 22,6 տոկոս։

Արդի պայմանները, միջազգային լարվածության թուլացումը, Լ. Ի. Բրեժնևի այցը ԳՖՀ, ԱՄՆ, Ֆրանսիա, Հնդկաստան, Կուբա խոշոր ազդակ հանդիսացան ՍՍՀՄ արտաքին տնտեսական կապերի զարգացման համար, թեպետև կապիտալիստական երկրների ռեակցիոն շրջանները ամեն կերպ ձգտում են խանգարել իրենց երկրների տնտեսական կապերի զարգացումը ՍՍՀՄ հետ։ Այդ տեսակետից բնորոշ է ԱՄՆ-ի ներկայացուցիչների պալատի կոնգրեսմենների մեծամասնության դիրքը, որոնք վերջերս դեմ քվեարկեցին ՍՍՀՄ հետ առևտրի ասպարեզում խտրականության վերացմանը։ Դա ցույց է տալիս, որ միջազգային մթնոլորտի ընդհանուր բարելավման պայմաններում էլ իմպերիալիստական երկրների ռեակցիոն շրջանները ջանք չեն խնայում վերականգնելու «սառը պատերազմի» իրադրությունը։ Բայց և այնպես նրանք չեն կարող կասեցնել այն առաջադեմ շարժումը, որ սկսվել է պետությունների միջև տնտեսական կապերի զարգացման համար։

Սովետական Միության արտաքին տնտեսական կապերը նախկինի համեմատ հսկայական չափով աճել են։ Բավական է միայն նշել, որ ՍՍՀՄ արտաքին ապրանքաշրջանառության ծավալը (արտահանում, ներմուծում), եթե 1940 թ. 1,3 մլրդ ռուբլի էր, ապա 1972 թ.՝ ավելի քան 26 մլրդ ռուբլի։ Բնորոշ է նաև ՍՍՀՄ արտահանման և ներմուծման հարաբերակցությունը, դրանց հաշվեկշիռը։ 1955—1972 թթ. ժամանակաշրջանում, այդ 18 տարուց 15-ում Սովետական Միության արտաքին ապրանքաշրջանառության հաշվեկշիռը եղել է ակտիվ, այսինքն՝ արտահանումը գերազանցել է ներմուծմանը և միայն երեք տարիներին (1958, 1960, 1964) դրանք կամ հավասար են եղել, կամ ներմուծումը ոչ մեծ չափով գերազանցել է արտահանմանը։ Արտաքին առևտրի այդպիսի հաշվեկշիռը սոցիալիստական պլանային տնտեսության խոշոր առավելություններից մեկն է։ Նույնիսկ կապիտալիստական աշխարհի ամենահզոր պետության՝ ԱՄՆ-ի արտաքին առևտրի հաշվեկշիռը վերջին ժամանակներս խիստ բացասական էր. միայն 1972 թ. ԱՄՆ-ի ներմուծումը գերակշռեց արտահանմանը 6,3 մլրդ դոլարով, որից 4123 մլն-ը Ճապոնիայի հետ ունեցած արտաքին առևտրում։ Անգլիայի արտաքին առևտրի դեֆիցիտը 1973 թ. նոյեմբերին կազմել է 270 մլն ֆ. ստ և այլն։

ՍՍՀՄ արտաքին ապրանքաշրջանառության հարցը արծարծելիս՝ հարկավոր է հաշվի առնել դրա կառուցվածքում տեղի ունեցած փոփոխությունները, որոնք մի կողմից՝ արտահայտում են մեր երկրի էկոնոմիկայում, հատկապես, արդյունաբերության մեջ տեղի ունեցած կառուցվածքային փոփոխությունները՝ կապված գլխավորապես ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների, մյուս կողմից՝ ՍՍՀՄ արտաքին առևտրի աշխարհագրական



փոփոխությունների, ՍՍՀՄ, սոցիալիստական, ինչպես նաև զարգացող երկրների արտաքին տնտեսական կապերի հաստատման հետ։

ՍՍՀՄ արտաքին առևտրում կառուցվածքային հիմնական փոփոխությունն այն է, որ մեծ չափով բարձրացել է մեքենաների, սարքավորումների, տրանսպորտային միջոցների տեսակարար կշիռը։ Այսպես, եթե 1940 թ. ՍՍՀՄ արտահանման մեջ դրանց տեսակարար կշիռը կազմում էր միայն 2, ապա երկրորդ համաշխարհային պատերազմից հետո՝ 1960 թ.՝ 20,5, իսկ 1972-ին՝ 23,6 տոկոս (տե՛ս Внешняя торговля СССР, 1918—1965 г.г., стр. 15. Внешняя торговля СССР за 1972, стр. 19)։ Արտահանման մեջ իր տե-
սակարար կշռով երկրորդ տեղն են գրավում հանքաքարերը, կոնցենտրատնե-
րը, մետաղները և դրանց արույքները, որոնց տեսակարար կշիռը նույնպես
բարձրանում է և 1972 թ. կազմել է 19 տոկոս, երրորդ տեղը գրավում են վառե-
լիքը և էլեկտրաէներգիան, որոնց տեսակարար կշիռն ընդհանուր առմամբ
նույնպես բարձրանում է, 1972 թ. կազմելով 17,7 տոկոս։ Արտահանման մեջ
նշվում են նաև անտառանյութերի և ցելյուլոզա-թղթե արույքների (6,1 տո-
կոս), սննդամթերքների և դրանց արտադրության համար հումքի ժողովրդա-
կան սպառման արդյունաբերական ապրանքների (3,1 տոկոս) տեսակարար
կշիռը (տես նույն տեղը)։

Ներմուծման կառուցվածքում ևս տեղի են ունեցել էական փոփոխություն-
ներ։ Առաջին հերթին դա վերաբերում է մեքենաների, սարքավորումների և
տրանսպորտային միջոցների տեսակարար կշռի բարձրացմանը (1960 թ.
29,8-ից 34,6 տոկոս՝ 1972 թ.)։ Երկրորդ տեղն են գրավում ժողովրդական
սպառման արդյունաբերական ապրանքները, որոնց տեսակարար կշիռը 1960
թ. 17,2-ից բարձրանալով՝ 1972 թ. կազմել է 18,6 տոկոս (1971 թ. 20,1 տո-
կոս)։ Ներմուծման մեջ արդյունաբերական սպառման ապրանքների այդպիսի
բարձր տեսակարար կշիռը պետք է բացատրել նրանով, որ ՍՍՀՄ արտաքին
տնտեսական կապերի ծավալումը զարգացող երկրների հետ հանգեցնում է
նրան, որ Սովետական Միությունից այդ երկրներն արտահանվող մեքենաների
և սարքավորումների դիմաց նրանցից ստացվում են գլխավորապես գյուղա-
տնտեսական մթերքներ, սննդարդյունաբերության և թեթև արդյունաբերու-
թյան սպառման արագիցիոն արտահանման ապրանքներ։ Զգալի չափով ար-
դյունաբերական սպառման ապրանքներ են ստացվում նաև սոցիալիստական,
ինչպես նաև զարգացած կապիտալիստական երկրներից։ Ներմուծման մեջ
վերը նշված պատճառով բարձր է նաև սննդամթերքների և դրանց արտադրու-
թյան համար անհրաժեշտ հումքի տեսակարար կշիռը, որը 1960 թ. 12,1-ից
1972 թ. հասել է 18 տոկոսի։ Ապա գալիս են հանքաքարերը, կոնցենտրատները,
մետաղները և դրանց բանվածքները (1972 թ. 8,9 տոկոս), քիմիական նյութե-
րը, պարարտանյութերը, կաուչուկը (4,9 տոկոս), տեքստիլ հումքը և կիսաֆաբ-
րիկատները (3,3 տոկոս՝ 1960 թ. 6,5 տոկոսի դիմաց) և այլն։ Այսպիսով, տե-
սակարար կշիռը, արտաքին առևտրի կառուցվածքի փոփոխություններն ուղղա-
կիորեն արտահայտում են ՍՍՀՄ ինդուստրիալ հզորության բարձրացումը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում մեծապես ավելացել է Սովետա-
կան Միության առևտրական մրցակիցների թիվը։ 1946 թ. դրանց թիվը 39 էր,
1960-ին՝ 79, 1972-ին՝ 98, այսինքն՝ ՍՍՀՄ գործնականում տնտեսական կա-
պերի մեջ է աշխարհի համարյա բոլոր երկրների հետ՝ Եվրոպայում, Ասիա-

յում, Աֆրիկայում, Հյուսիսային և Հարավային Ամերիկայում, Ավստրալիայում և Օվկիանիայում։

Սովետական Միության արտաքին տնտեսական կապերին մասնակցում են սովետական հանրապետությունները։ Լենինյան ազգային քաղաքականության կիրառման շնորհիվ ցարական Ռուսաստանի հետամնաց ծայրամասերը, հատկապես ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական փոխադարձ օգնությամբ, դարձան ինդուստրիալ, սոցիալիստական խոշոր գյուղատնտեսություն, բարձր կուլտուրա ունեցող հանրապետություններ։ Դրանց թվին է պատկանում նաև Հայաստանը, որն իր զգալի դերն ունի ՍՍՀՄ արտաքին տնտեսական կապերում՝ արդյունաբերական մի շարք արտադրանքների ասպարեզում։ Սովետական Հայաստանում միայն ութերորդ հնգամյակում արտահանվող ապրանքների թողարկումը ավելացավ 2,2 անգամ։ Այժմ Սովետական Հայաստանից մոտ 200 տեսակի արտադրանք է առաքվում աշխարհի ավելի քան 90, այդ թվում նաև մի շարք զարգացած կապիտալիստական երկրներ։

Վերը նշված փաստերը ցույց են տալիս Սովետական Միության ինդուստրիալ հզորությունը, նրա տնտեսական հսկայական աճը, որը կանխատեսել էր մեծ Լենինը։ Դրա ապացույցն են նաև 1974 թ. ՍՍՀՄ տնտեսության զարգացման պլանի ցուցանիշները՝ հաստատված 1973 թ. դեկտեմբերին ՍՍՀՄ Գերագույն սովետի յոթերորդ սեսիայում։ 1974 թ. պլանի ցուցանիշները վկայում են ՍՍՀՄ տնտեսական նոր, զգալի աճը, դրա արդյունավետության բարձրացումը և արդյունաբերական արտադրանքի աճի տեմպերի արագացումը։ Այսպես, ազգային եկամտի աճը կկազմի 6,5 տոկոս՝ 1971—1973 թթ. միջինի 5,2 տոկոսի դիմաց, արդյունաբերության արտադրանքինը՝ 6,8 տոկոս, բնակչության ռեալ եկամուտներինը՝ 4,3 տոկոս, միջինի փոխարեն կավելանա 5 տոկոսով և այլն։ Սեսիայում ընդունված ՍՍՀՄ պետական բյուջեի մասին «Օրենքում» հաստատված են 1974 թ. պետական բյուջեի եկամուտները 194.300.866 հազար և ծախսերը՝ 194.088.010 հազար ռուբլի։ Հաստատված են նաև միութենական հանրապետությունների բյուջեները, այդ թվում նաև Հայկական ՍՍՀ՝ 1.118.616 հազար ռուբլի, որը 1973 թ. համեմատությամբ աճել է 84 մլն 569 հազարով և այլն։

Ընթանալով լենինյան կուրսով, սովետական ժողովուրդը հաջողությամբ է իրագործում ՍՄԿԿ XXIV համագումարի կանխագծած ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյա պլանը։ Դրա վառ վկայությունն է հնգամյակի անցած երեք տարիների արտադրանքը։ Այսպես, այդ տարիներին Սովետական Միության ազգային եկամուտը բացարձակ թվերով աճեց 44 մլրդ ռուբլով, իսկ արդյունաբերական արտադրանքի ծավալը մեծացավ 24,1 տոկոսով։ Անցյալ տարի մեծ հաղթանակներով պսակվեցին գյուղատնտեսական աշխատողների հերոսական գործերը։ Երկրում հացահատիկի համախառն բերքը կազմեց 222,5 մլն տոննա, մթերվեց ավելի քան 7,6 մլն տոննա բամբակ։

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1974 թ. պետական պլանը, որն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի անցած տարվա դեկտեմբերյան պլենումի հավանությանը և ընդունվեց ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի յոթերորդ սեսիայում, նախատեսում է առաջընթացի ավելի արագ թափ, որը որոշիչ կլինի ողջ հնգամյակի առաջադրանքների կատարման համար։

Այս տարվա հենց սկզբներին ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, դիմելով կուսակցությանը, սովետական ժողովրդին, կոչ արեց մեր երկրի աշխատավորներին՝ հնգամյակի չորրորդ տարին նշանավորել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման նոր հաջողություններով։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեի դիմումը բուռն խանդավառությամբ ընդունեցին բանվորներն ու բանվորուհիները, կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները, մտավորականությունը։ Արձագանքելով այդ կոչին, արդյունաբերական ձեռնարկությունների գյուղատնտեսական օբյեկտների ու այլ հաստատությունների կոլեկտիվներն ընդունեցին իրենց հանդիպական պլանները՝ հնգամյակի որոշիչ տարվա առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։

Ընդառաջելով աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնությանը, ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ն ու ՀամԼԿԵՄ Կենտկոմը որոշեցին՝ 1974 թ. ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար՝ արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների, հողագործական ու անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին։

Կուսակցական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ լենինյան սկզբունքներով ծավալել ու գլխավորել սոցիալիստական մրցությունը, աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական նախաձեռնությունն ուղղել ժողովրդական տնտեսության զարգացման առաջադրանքները հաջողությամբ կատարելու նպատակին։

# ՄԻՇՏ ԱՌԱՋԻՆ ՇԱՐՔԵՐՈՒՄ

**Ռ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ**
ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար

Մեր օրերի երիտասարդի նպատակը մեկն է՝ հնարավորին չափ օգտակար լինել մարդկանց, հասարակությանը: Եվ, եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ երիտասարդությունը միշտ առաջինն է նետվում անձնուրաց պայքարի, որ նա վճռական ուժ է արտադրության ժամանակակից բոլոր ճյուղերում, տեխնիկապես հասուն է և տիրապետում է բազմաթիվ մասնագիտությունների, ապա լիովին պարզ կլինի հասարակական կյանքում նրա որոշիչ դերը:

Սովետական երիտասարդության համար սխրալից էին հնգամյակի անցած տարիները: Ամբողջ երկրում միլիոնավոր պատանիներ ու աղջիկներ խանդավառությամբ են կենսագործում ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները և լավագույն աշխատանքով հաստատում հայրենիքին, ժողովրդին բոլորանվեր ծառայելու պատրաստակամությունը: Սովետական երկրի երիտասարդներն ունեն լուսավոր, պայծառ նպատակներ. նրանք ապրում, պայքարում են գալիքի խոհերով: Եվ, իբրև այդ ամենի վավերագիր, իբրև երիտասարդության հայրենանվեր գործերի ստուգատես՝ բնորոշ եղավ իններորդ հնգամյակի վճռական տարին, որը պատմության գիրկն անցավ՝ որպես սովետական ժողովրդի բացառիկ նվաճումների տարի:

Ամեն մի սերնդի գնահատման չափանիշը նրա գործերն են: Մեր ժամանակների երիտասարդությունը, սովետական երիտասարդության նախորդ սերունդների նման, անսահման նվիրված է սոցիալիստական հայրենիքին և իր ողջ ուժերը, եռանդն ու կարողությունը, ստեղծագործական միտքը ներդնում է նրա բարգավաճման ու հզորացման գործում: Հավատարիմ լենինյան կենսահաստատ ուսմունքին՝ նա ձգտում է զինվել մարքս-լենինյան գաղափարներով, խորապես ըմբռնել կուսակցության ծրագրային փաստաթղթերն ու որոշումները, դառնալ գաղափարապես կայուն ու համոզված մարտիկ:

Երիտասարդների բոլշևիկյան կամքի ու պատրաստակամության, լենինաբար ապրելու ու պայքարելու ունակության դաստիարակությունը եղել և մնում է կոմերիտմիության գլխավոր խնդիրը, գործունեության հիմնական առանցքը:

Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը, որն իր շարքերում այսօր համախմբում է մոտ 350 հազար երիտասարդներ, Միության իր սերնդակիցների հետ սրբորեն իրականացնում է մեծ առաջնորդի պատգամը, սովորում, աշխատում ու պայքարում է լենինաբար, խոր ու ստեղծագործաբար տիրապետում գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի նորագույն նվաճումներին, գիտակից ու կարգապահ աշխատանքով կոփում իր կամքն ու բնավորությունը:

Սովետական Հայաստանի ձեռներեց, նախաձեռնող ու պատվախնդիր երի-



տասարդության ջանքերով հանրապետությունում ծնվեցին ու ծավալվեցին հիանալի շատ նախաձեռնություններ ու շարժումներ, գործնական հիմքերի վրա դրվեց սոցիալիստական մրցությունը: Ընթացիկ հնգամյակի տարիներին, հանրապետության կոմերիտական կազմակերպությունները նոր խնդիրների համեմատ վերակառուցելով իրենց գործունեությունը, ընտրեցին առաջադրված պրոբլեմների լուծման նոր մեթոդներ և ուղիներ:

Ջերմորեն արձագանքելով կոմունիստական կուսակցության կոչին՝ Հայաստանի երիտասարդությունը կանգնեց հնգամյա պլանի կատարման համար մղվող պայքարի առաջին շարքերում: Կոմերիտական կազմակերպությունները հանդես եկան հետաքրքրական բազում գործերով, մտահղացումներով, ցույց տվին աշխատանքային խիզախության բազմաթիվ օրինակներ: Երևանի և Կիրովականի երիտասարդ քիմիագործները, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, կաբելի և տասնյակ այլ գործարանների ու ֆաբրիկաների երիտասարդ բանվորներ լարված աշխատանք կատարեցին արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, նոր տեխնիկայի յուրացման, գիտա-տեխնիկական առաջընթացի արագացման ասպարեզում:

Հնգամյակի վճռական տարում հանրապետության կոմերիտականների շրջանում ծնունդ առան «Հնգամյակի վճռական տարին՝ 10 ամսում», «Հնգամյակը՝ 3,5 տարում», «Արտադրանքի որակը կոմերիտականների պատվի գործն է», «Ոչ մի ետ մնացող քո կողքին», «Հնգամյակը՝ ինձ, ես՝ հնգամյակին», «Մեկ հողակտորից՝ երկու բերք» և հայրենասիրական բազմաթիվ այլ նախաձեռնություններ, որոնք հերոսական ջանքերով կյանքի են կոչվել, մարմնավորվել նյութական ու հոգևոր արժեքներում:

Լավ ավանդույթ են դարձել շրջանային, հանրապետական մրցույթները՝ ըստ մասնագիտությունների, ստեղծագործական շաբաթներն ու փառատոնները: Լայն թափ ստացավ «Տիրապետել երկու և ավելի մասնագիտության» շարժումը: Ավելի քան 46 հազար երիտասարդ բանվորներ մասնագիտորեն կատարելագործվում են որակավորման բարձրացման և առաջավոր փորձի տարածման 828 դպրոցներում ու խմբակներում: Մոտ 20 հազարը տիրապետում են երկրորդ, երրորդ մասնագիտությունների: Այժմ հանրապետությունում ստեղծված 3.760 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվների միջև ծավալվել է սոցիալիստական մրցություն: Շուրջ 180 հազար պատանիներ ու աղջիկներ ընդգրկվել են անհատական սոցիալիստական մրցության մեջ: 870 կոմերիտական-երիտասարդական բրիգադներ, 90 հազար կոմերիտականներ և երիտասարդներ ժամկետից շուտ կատարեցին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, իսկ 200 կոմերիտականներ արդեն կատարել են հնգամյա պլանը և այժմ աշխատում են 1976 թվականի հաշվին:

Սոցիալիստական մրցության առաջամարտիկների համբավ է վայելում Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի բաց հանքի երիտասարդ բուլդոզերավար, ՀամԼԿԵՄ Կենտկոմի «Պատվո նշանի» ասպետ, ՀԼԿԵՄ Կենտկոմի անդամ Արքիմեդ Արշակյանը. օրվա արտադրական պլանները նա կատարում է 160—164 տոկոսով: ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի պատվին Արքիմեդ Արշակյանը գերակատարեց ստանձնած պարտավորությունը և այսօր աշխատում է 1976 թվականի հաշվին: Հատկանշական է, որ կոմբինատում, ինչպես և բոլոր լեռնագործների շրջանում, Արքիմեդն ունի շատ հետևորդներ:

Դեռևս անցյալ տարի կոմերիտմիության Կենտրոնական կոմիտեի բյուրոն

հավանություն ավեց համամիութենական կոմերիտական հարվածային կառուցում՝ Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատում աշխատող խաչատրյանների ընտանիքի հայրենասիրական նախաձեռնությանը: Խաչատրյանները դիմել էին հանրապետության աշխատանքային դինաստիաներին՝ կոչ անելով 1973 թ. պլանները կատարել նոյեմբերի 7-ին: Հայրենասիրական այս շարժումն ունեցավ բազմաթիվ հետևորդներ և, պետք է ուրախությամբ նշել, որ նրանք պատվով կատարեցին ստանձնած առաջադրանքները: Բայց և այնպես, որոշ սկզբնական կազմակերպություններ դեռևս պատշաճ ուշադրություն չեն նվիրում սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերին: Շրջանային մի շարք կոմիտեներ զբաղվում են աղմկարարությամբ, մոռանալով, որ մրցության կազմակերպումը միայն թղթի վրա բարձրագոչ պարտավորություններ թվարկելը չէ: Այսպես, չխորանալով մրցության կազմակերպման բուն էության մեջ, ՀԼԿԵՄ 26 կոմիսարների անվան շրջանային կոմիտեն մի քանի օրում «ավարտեց» մրցության կազմակերպումը... բնականաբար, լոկ թղթի վրա:

Անհանգստացուցիչ է նաև այն հանգամանքը, որ բազմաթիվ կոմերիտական կազմակերպություններ պատշաճ հոգածություն չեն ցուցաբերում երիտասարդ բանվորների որակավորման բարձրացման, նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման, արտադրություն եկած երիտասարդ բանվորների շրջանում տարվող աշխատանքների նկատմամբ: Երիտասարդների աշխատանքային ու կենցաղային անհրաժեշտ պայմանների բացակայությունը հաճախ պատճառ է դառնում բանվորական ուժի հոսունության:

Այդպիսին է վիճակը Երևանի ավտոդողերի գործարանում, որտեղ 1973 թվականին աշխատանքի են ընդունվել 921, ազատվել 856 մարդ: Գործարանից գործարան «չվող» բանվորների մեծ մասը երիտասարդներ են, կոմերիտականներ: Ինքնին հասկանալի է, որ նման իրավիճակը միայն պայմաններով պատճառաբանելը դեռևս քիչ է: Հանգամանալի ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ տնտեսական օրգանները, կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունները ոչ միշտ են գործում բանիմաց, նպատակասլաց ու արդյունավետ, որի հետևանքով շատ տեղերում հաշվի չեն առնվում երիտասարդների կրթական մակարդակն ու մասնագիտությունը, նախասիրություններն ու հակումները: Մինչդեռ նման հարցերին պետք է անդրադառնալ համակողմանիորեն, հիմնականում ուշադրությունը բևեռելով պրոֆտեխնիկական ուսումնարանների գործունեությանը, որտեղ և պատրաստվում են բանվորական ու գյուղական կադրերի փոխարինողները: Ուրախալի է, որ ուսումնարանների կոմերիտականներն անում են ամեն ինչ՝ արժանի հերթափոխ պատրաստելու համար: Այսօր հանրապետության պրոֆտեխնիկական կրթության սիստեմում ուսանում են 30 հազար բանվորներ (սովորեցնում են 170 մասնագիտություն), իսկ հնգամյակում նախատեսվում է տալ 104 հազար շրջանավարտներ: Միայն 1973 թվականին կոմերիտական ուղեգրերով անասնապահական ֆերմաներն են գործուղվել ավելի քան 1.000 պատանի ու աղջիկ: Սակայն դեռևս գյուղական մասնագետների լուրջ կարիք է զգացվում, որը բավարարելու նպատակով ՀԼԿԵՄ Կենտկոմը գործնական միջոցներ է ձեռնարկել: ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմներին կից ստեղծվելիք մասնագիտացված դասընթացները մեծ չափով կօգնեն լրացնելու գյուղական մասնագետների պակասը:

Հնգամյակի, հատկապես, երրորդ տարում ակներև էին գյուղական երիտասարդության նվաճումները: Գյուղատնտեսության տարբեր ճյուղերի 1.300 կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվներում ընդգրկված ավելի քան 47



հազար պատանիներ ու աղջիկներ, հաջողությամբ իրականացրին գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների պետական պլաններն ու արտապլանային առաջադրանքները, պատվով կատարեցին իրենց խոստումը:

Թող այն տպավորությունը չստեղծվի, թե այստեղ ամեն ինչ հարթ է: Այս բնագավառում ևս տեղ են գտել լուրջ թերություններ, որոնց վերացմանը ձեռնամուխ են եղել հանրապետության գյուղական շրջանների կոմերիտական կազմակերպությունները:

Ամասիայի, Ղուկասյանի, Գուգարքի, Ապարանի, Ազիզբեկովի շրջանների կոմերիտական կազմակերպություններում սոցիալիստական մրցությունը հաճախ ձևական բնույթ է կրում, չի ապահովվում երիտասարդության ավանգարդային դերը գյուղատնտեսական մթերքների արտադրության գործում: Այդ էր պատճառը, որ այս շրջանները 1973 թվականին չկատարեցին գյուղատնտեսական որոշ մթերքների արտադրության ու մթերումների պետական պլանները: Տարիներ շարունակ նրանք ինչպես հարկն է չեն զբաղվել անասնապահական ֆերմաները կոմերիտականներ գործուղելով, մեքենայացման աշխատանքի կազմակերպման, առաջավոր մեթոդների ներդրման խնդիրներով:

Մտահոգիչ է այն փաստը, որ տնտեսություններում աշխատող բրիգադավարների ու ֆերմաների վարիչների միայն 7,7 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն, իսկ 56-ը սոսկ պրակտիկներ են:

Գյուղատնտեսության վարման արդի պահանջների թելադրանքով անհրաժեշտ է արտադրության ղեկավար կազմում ավելի համարձակ երաշխավորել լավագույն ունակություններով օժտված, բարձրագույն կրթությամբ երիտասարդների: Այժմ հանրապետության տնտեսություններում կան բարձրագույն կրթությամբ միայն 223 գյուղատնտեսներ, 246 անասնաբույծներ, 626 անասնաբույժներ, 648 ինժեներ-մեխանիկներ: Բնականաբար հարց է ծագում որտե՞ղ են, հապա, բարձրագույն կրթություն ստացած մեր երիտասարդ գյուղատնտեսները, անասնաբույժները. չէ՞ որ միայն վերջին 10 տարում Երևանի գյուղատնտեսական, անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտները, միջնակարգ-մասնագիտական ուսումնարանները պատրաստել են մոտ 23 հազար բարձրորակ մասնագետներ:

Նրանցից շատերն այժմ էլ չեն մեկնում գյուղերը՝ աշխատանքի, «տաքուկ», եկամտաբեր անկյուններ են փնտրում քաղաքներում՝ փոխելով իրենց մասնագիտությունը: Գյուղը երիտասարդ մասնագետներով ապահովելու նպատակով հարկ է անհապաղ գործադրել անհրաժեշտ միջոցառումներ: Հատկապես վերջին տարիներին նկատելիորեն ավելացող այս արտահոսքը խիստ մտահոգիչ է: Այս խնդրին էր նվիրված ՀԼԿԵՄ Կենտկոմի պլենումը, որ սկսված ծավալուն խոսակցությունը շարունակվեց և ՀԼԿԵՄ XXVII համագումարում: Մի բան պարզ է՝ տեղական կազմակերպությունները դեռևս լրջորեն չեն զբաղվում գյուղական մասնագետներին հուզող հարցերով. չեն ապահովում նրանց կուլտ-կենցաղային բարվոք պայմանները, չեն ստեղծում գիտահետազոտական աշխատանքների հնարավորություններ և այլն. այդ ամենի հետևանքով իսկ ավելանում է երիտասարդության արտահոսքը գյուղից քաղաք:

Մեր օրերի երիտասարդի առջև ծառացած են ժամանակակից բազմաթիվ պրոբլեմներ: Նրա անհանգիստ, պրպտող, որոնող միտքը փորձում է ինքնուրույն պատասխանել այդ հարցերին: Որպեսզի պատանին կամ աղջիկը կարողանա գլուխ հանել կյանքի բարդություններից, գտնել ճիշտ ճանապարհ, ան-

հրաժեշտ է սովորեցնել նրան ճշմարիտը զատել կեղծիքից, կողմնորոշվել հասարակական կյանքի բոլոր իրադարձություններում։ Իսկ դրա համար անհրաժեշտ են երիտասարդության գաղափարական կոփվածություն, աշխատանքային ակտիվության բարձր մակարդակ։

Հանրապետության կոմերիտմիությունը, կուսակցական կազմակերպությունների ամենօրյա հոգատարության ու ղեկավարության շնորհիվ, զգալի գործ է կատարել կոմերիտականների ու երիտասարդների գաղափարական դաստիարակության բարելավման ասպարեզում։ Այժմ կոմերիտական-քաղաքական ուսուցման սիստեմի 4.047 քաղխմբակներում ու սեմինարներում ընդգրկված են 109 հազար կոմերիտականներ։ Այդ վկայում է, որ երիտասարդների քաղաքական ուսուցման, նրանց ակտիվության բարձրացման գործը ամուր հիմքերի վրա է։ Դրան մեծ չափով նպաստում են երիտասարդական հավաքներն ու քաղաքական թեմաներին նվիրված բազում միջոցառումները, ագիտարշավները, փառատոներն ու սուրգատեսները, որոնց մեծ մասն արդեն ավանդական են դարձել, հարստանալով նոր, առավել խոր բովանդակությամբ։

Հանրապետության երիտասարդության աշխատանքային, քաղաքական ակտիվության բարձրացման արդյունավետ միջոց են լենինյան ստուգարքները, որի փուլերից մեկն անցնում է «Կենսագործենք ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները» նշանաբանով։ Շուտով, կոմերիտմիությունը Վ. Ի. Լենինի անունով կոչելու 50-ամյակի օրը, մեր երիտասարդությունը կամփոփի ստուգարքի երրորդ փուլի արդյունքները։ Անշուշտ, ուրախալի կլինեն այդ արդյունքները, քանի որ հանրապետության երիտասարդությունը, կանգնելով հոբելյանական աշխատանքային հերթափոխի, ձգտում է միայն լավ գործերով նշանավորել փառավոր տարելիցը։

Կոմերիտմիությունը աշխատանքային սխրանքների օրինակներ է տալիս ամենուր— գործարաններում ու ֆաբրիկաներում, հանքերում ու գիտահետազոտական հաստատություններում, շինարարական հրապարակներում։ Կոմերիտականների ու երիտասարդների խանդավառ ավյունն է մարմնավորվում հայաստանյան ատոմակայանում, Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի արտադրամասերում, Արփա—Սևան համաժողովրդական կառույցում, որտեղ հայ ժողովրդի հայրենաշեն ջանքերին իրենց ստեղծագործ ուժերն ու եռանդն են միացնում Սովետական Միության բոլոր ազգերի ներկայացուցիչները։ Երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության ամենագործուն, ամենաարդյունավետ միջավայրը աշխատանքային բազմազգ կոլեկտիվներն են, որտեղ կոփվում է իսկական բարեկամությունը։

Գնալով ամրապնդվում, առավել սերտանում են Հայաստանի երիտասարդության կապերը Ադրբեջանի, Վրաստանի, Ուկրաինայի, ՌՍՖՍՀ-ի և մեր երկրի եղբայրական մյուս հանրապետությունների, մարզերի կոմերիտականների ու երիտասարդների հետ։ Փոխօգնության և բարեկամության դրսևորման լավագույն օրինակ են ուսանողական շինարարական ջոկատները։ Հայաստանի ուսանող-շինարարներն անցյալ տարիներին մեծ աշխատանք են կատարել եղբայրական Ղազախստանում, Օրենբուրգի մարզում և այլուր։

Առավել սերտացել են նաև եղբայրական հանրապետությունների ստեղծագործ երիտասարդների կապերը։ Դրա վկայությունն են երիտասարդ երաժիշտ կատարողների Անդրկովկասյան մրցույթները, երիտասարդ նկարիչների համատեղ ցուցահանդեսները և բազմաթիվ այլ հետաքրքրական միջոցառումներ։ Հանրապետությունում գործող երիտասարդական բարեկամության տասնյակ ակումբներում Հայաստանի կոմերիտականներն ու երիտասարդները ծանոթանում են եղբայր ժողովուրդների կյանքին, պատմությանը, հաջողություններին, հեղափոխական, մարտական, աշխատանքային ավանդույթներին։ Երիտասարդ սերնդի համար հեղափոխական տարիների հերոսների պայծառ անուններն ու սխրանքները ո՛չ միայն անցինչ հիշողություններ են, այլ ամենից առաջ՝ կենդանի պատգամ։ Երիտասարդ լենինյանները պատվով են շարունակում ավագ սերունդների գործը։ Առաջին հնգամյակների աշխատանքային հերոսներն այսօր էլ մեր շարքերում են, քանի որ նրանց պատգամներն իրենց որդիների գործունեության ուղենիշն են։



Այսօր երիտասարդության առջև դրված են բոլորովին նոր խնդիրներ։ Ամենօրյա ջանքերով նրանք կյանքի են կոչում հնգամյակի որոշիչ տարվա կանխագծումները։ Նրանց համար ստեղծված են աշխատելու, ստեղծագործելու, խիզախելու բոլոր պայմանները։ Խիզախումներն անդուլ և ավելի համարձակ կլինեն, եթե մշտապես, առավել չափով հոգ տարվի նոր սերնդի մասին, համակողմանի ու բազմապիսի օգնություն ցույց տրվի կոմերիտմիության աշխատանքներին, նրա հեղինակության բարձրացմանը։ Ցավոք, հանրապետության ոչ բոլոր վերադաս կազմակերպություններն են պատշաճ օգնություն ցույց տալիս կոմերիտական կազմակերպությունների գործունեությանը։ Կուսակցական ու սովետական ապարատների առանձին ղեկավարներ երբեմն անուշադրության են մատնում կոմերիտականների ու երիտասարդների շրջանում տարվող աշխատանքները։

Ամենօրյա հետևողական ջանքերով միայն կարելի է ակնբախ արդյունքի հասնել, նվաճել այն բարձունքները, կենսագործել հեռանկարային այն ծրագրերը, որոնք նոր հորիզոններ են բացում մեր բազմազգ ժողովրդի առջև։

Հանրապետության կոմերիտմիությունը լի է վճռականությամբ ու ավյունով, նա պատրաստ է նոր մեծագործությունների ու սխրանքների՝ հարազատ կոմունիստական կուսակցության առաջադրանքները կատարելու, կանխագծումներն իրականացնելու մեծ նվիրումով ու պատասխանատվությամբ։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿԻ ՀԱՄԱՐ

**Ա. Վ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի սեկտորի վարիչ

*ՍՄԿԿ XXIV համագումարը, շեշտելով կադրերի կոմունիստական դաստիարակության գործում մարքս-լենինյան կրթության կարևոր նշանակությունը, կուսկազմակերպությունների ուշադրությունը բևեռեց քաղաքական կրթության ամբողջ սիստեմի հետագա բարելավման վրա, խնդիր դրեց այն ավելի սերտորեն շաղկապել կոմունիստական շինարարության կոնկրետ առաջադրանքների հետ, վճռականապես հաղթահարել ֆորմալիզմի տարրերը, հասնել այն բանին, որ այն ավելի շատ նպաստի ունկնդիրների գիտակցականության բարձրացմանը, քաղաքական ու աշխատանքային ակտիվության զարգացմանը: Համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Կուսակցությունը շատ կարևոր է համարում, որ կոմունիստները հաստատակամորեն տիրապետեն մարքսիզմ-լենինիզմի տեսությանը, հասարակական զարգացման օրենքների իմացությանը, կարողանան վստահորեն կողմնորոշվել կյանքի նոր երևույթների մեջ, ճիշտ գնահատական տան դրանց և գործնական ճիշտ հետևություններ անեն: Կոմունիստների գաղափարական կոփումը մեր կուսակցության շարքերի մարտունակության բարձրացման անհրաժեշտ պայմանն է» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 138):*

*Ուղենիշ ունենալով համագումարի առաջադրած պահանջները՝ հանրապետության կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները հետհամագումարյան տարիներին նկատելի գործ են կատարել ու կատարում են կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների գաղափարական դաստիարակության ասպարեզում: Տարեցտարի ընդլայնվում են ուսուցման շրջանակները, կատարելագործվում նրա ձևերն ու մեթոդները, բարելավվում է ուսուցման գործը: Կուսակցական լուսավորության ընթացիկ ուսումնական տարում ուսուցման օղակներում սովորում են ավելի քան 140 հազար կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ: Նրանց գաղափարական դաստիարակությամբ զբաղվում են 6.700 պրոպագանդիստներ: Քաղաքական ուսուցման տարբեր օղակներում ունկնդիրները ձեռք են բերում մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասերի վերաբերյալ խոր ու կայուն*



*գիտելիքներ, ուսումնասիրում սովետական հասարակության սոցիալ-քաղաքական ու տնտեսական զարգացման, կուսակցության ու սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության, համաշխարհային հեղափոխական զարգացման պրոբլեմները, նոր մարդու ձևավորման, արտադրության գիտական կառավարման, կոմունիզմի կառուցման համընդհանուր գործում աշխատավորական կոլեկտիվների դերի բարձրացման հարցերը:*

*ՍՄԿԿ XXIV համագումարի և կուսակցության Կենտկոմի վերջին պլենումների որոշումներով ու փաստաթղթերով մարքս-լենինյան ուսուցման հագեցումը զգալիորեն բարձրացնում է նրա տեսական-գաղափարական մակարդակը, ամրապնդում ուսուցման կապը կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ, ավելի է աշխուժացնում ունկնդիրների հետաքրքրասիրությունը քննարկվող հարցերի նկատմամբ, զարգացնում նրանց քաղաքական-աշխատանքային ակտիվությունը:*

*Կադրերի քաղաքական կրթության արդյունավետության բարձրացումը պայմանավորվում է նրանով, թե կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները որքանո՞վ են ճիշտ ղեկավարում այդ կարևոր բնագավառը, ինչպիսի՞ հսկողություն են իրականացնում և հոգատարություն ցուցաբերում ուսուցման որակի բարձրացման նկատմամբ: Փորձով ապացուցված է, որ այնտեղ, ուր կուսկազմակերպությունները մշտապես ուշադրության կենտրոնում են պահում կադրերի ուսուցումը, գործերն ամուր հիմքերի վրա են դրվում և ընթանում հաջողությամբ:*

*Բազմաթիվ փաստեր կարելի է նշել ուսուցումը խելացիորեն կազմակերպելու և դրա արդյունավետությունն ապահովելու ասպարեզում կուսկազմակերպությունների ծավալած օրինակելի գործունեությունից: Այս տեսակետից հատկանշական է Կիրովականի քաղաքային կուսկազմակերպության դրական աշխատանքը: Քաղաքային կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները աշխատանքի տարբեր ձևերով ու մեթոդներով ձգտում են բարձրացնել յուրաքանչյուր կոմունիստի անձնական պատասխանատվությունը՝ քաղաքական-տնտեսական գիտելիքներ ձեռք բերելու նկատմամբ: Այդ նպատակով, ինչպես քաղկոմի բյուրոներում և պլենումներում, այնպես էլ սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում հաճախակի են քննարկվում կոմունիստների գաղափարական դաստիարակությանը վերաբերող հարցեր, ինքնահաշվետվություններ, կուսկազմակերպությունների քարտուղարների ու պրոպագանդիստների ինֆորմացիաներ և այլն:*

*Կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների մարքս-լենինյան ուսուցումն արդյունավետ, կազմակերպական ու գաղափարական անհրաժեշտ մակարդակով է անցնում նաև Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, էլեկտրալամպերի, կաբելի, «Էլեկտրոն», Դիլիջանի «Իմպուլս» գործարանների, Լենինականի տեքստիլ, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատների, Սպիտակի, Կամոյի, Հոկտեմբերյանի, Աբովյանի, Ախուրյանի, Իջևանի, Գուգարքի և շատ այլ շրջանների կոլտնտեսային, սովխոզային և արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպություններում:*

*Անժխտելի է, որ ուսուցման բովանդակության ու արդյունավետության բարձրացման նկատմամբ մշտական հոգատարությունն ու ուշադրությունը, կյանքի հետ նրա կապի ամրապնդման և դրան առնչվող բազմազան այլ հարցերի սիստեմատիկ ու հանգամանորեն քննարկումը քաղկոմ-շրջկոմների բյու-*

րոների նիստերում, պլենումներում, ակտիվի ժողովներում ու խորհրդակցություններում, դրականորեն են անդրադառնում կոմունիստների և անկուսակցական ակտիվի գաղափարական կոփման վրա: Սակայն, ցավոք, ամենուրեք չէ, որ գործն այդպես է: Որոշ տեղերում կոմունիստների քաղաքական կրթության հարցի քննարկմամբ սահմանափակվում են ուսումնական տարվա կամ սկզբին կամ վերջում: Այդ կարևոր գործի նկատմամբ նման մոտեցումն անթույլատրելի է: Կուսակցական ուսուցման յուրաքանչյուր օղակ ունի իր առարկան ու պարապմունքի վարման առանձնահատկությունը, այդ պատճառով կոմունիստների ուսուցման, այսպես կոչված, «ընդհանրապես ղեկավարումը» երբեք ցանկալի արդյունք չի կարող տալ, առանց այս կամ այն առարկայի պարապմունքների բովանդակության և մեթոդական հարցերի խոր վերլուծության:

Տեսական սեմինարների և քաղդպրոցների պարապմունքների բովանդակությունը, նրանց գաղափարական բարձր մակարդակի ապահովումը, առաջին հերթին, պայմանավորված է կուսակցական կոմիտեների կողմից պրոպագանդիստական կադրերի հետ տարվող արդյունավետ աշխատանքով: Գոյություն ունի լավ պրակտիկա. ամեն տարի քաղկոմ-շրջկոմների բյուրոներում հաստատվում է պրոպագանդիստական կադրերի կազմը: Փորձը ցույց է տալիս, որ դա բարձրացնում է նրանց պատասխանատվությունն իրենց հանձնարարված գործի նկատմամբ, հնարավորություն ընձեռում ընտրել առավել պատրաստված ընկերների: Սակայն քիչ չեն դեպքերը, երբ պրոպագանդիստների հաստատումը կրում է ձևական բնույթ, հաճախ նույնիսկ նրանք չեն հրավիրվում քաղկոմ-շրջկոմի բյուրոների կամ կուսկոմիտեի նիստին, բայց չէ՞ որ, նրանց հետ զրուցելիս, պետք է պարզել, թե ինչպիսի՞ տրամադրությամբ է կոմունիստն ստանձնում կուսակցական այդ պատասխանատու հանձնարարությունը, արդյոք հակում ունի՞ դեպի այդ գործը, պատրա՞ստ է դրան, թե ոչ:

Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը մշտապես պետք է մտահոգի կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեներին: Մի շարք քաղկոմ-շրջկոմների քարտուղարներ ուսումնական տարվա ընթացքում պարբերաբար հանդիպումներ ու զրույցներ են ունենում պրոպագանդիստների հետ, զեկուցմամբ հանդես են գալիս նրանց սեմինարներում, հաղորդումներ տալիս տվյալ քաղաքի, շրջանի առջև ծառացած հրատապ խնդիրների, հնգամյա պլանի կատարման ընթացքի, միջազգային կյանքի կարևորագույն իրադարձությունների շուրջ, պատասխանում նրանց հետաքրքրող հարցերին: Դա, անշուշտ, պրոպագանդիստներին զինում է տեսական և պրակտիկ խնդիրների վերաբերյալ գիտելիքներով, համապատասխան ուղղություն տալիս նրանց: Այդպես են վարվում, օրինակ, Երևանի Սովետականի, Շահումյանի, Մյասնիկյանի, Սպանդարյանի շրջկոմները, Լենինականի, Կիրովականի, Դիլիջանի քաղկոմները և մի շարք գյուղական շրջանային կոմիտեներ: Առանձին տեղերում, սակայն, դեռևս շարունակվում է այն պրակտիկան, երբ պրոպագանդիստների սեմինար-պարապմունքներում կարդացվում են միայն տեսական թեմաներով դասախոսություններ՝ շրջանցելով պրոպագանդիստական առօրյա աշխատանքի, կյանքի հետ սերտ կապի, ժամանակի ոգին արտացոլող հրատապ քաղաքական ու տնտեսական, մեթոդական և այլ հարցեր: Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է հրաժարվեն սեմինարների անցկացման նման պրակտիկայից: Տեսական սեմինարների ու քաղդպրոցների պարապմունքների արդյու-



նավետության, ունկնդիրների գիտակցության ու քաղաքական պատրաստվածության մասին կարելի է դատել, ամենից առաջ, նրանց արտադրական ու աշխատանքային ակտիվությամբ, կազմակերպվածությամբ, հանձնարարված գործի նկատմամբ ունեցած պատասխանատվությամբ, կյանքի այս կամ այն երևույթը, իրադարձությունը ճիշտ գնահատելու ունակությամբ:

Հանրապետությունում աստիճանաբար ավելի է բարելավվում պրոպագանդիստական կադրերի որակական կազմը. նրանց 98 տոկոսն ունի բարձրագույն և թերի բարձրագույն կրթություն: Շատ է իրենց գործը տիրապետող, քաղաքականապես պատրաստ, բարեխիղճ ու պարապմունքները հետաքրքրական ձևով ու բովանդակալից անցկացնող պրոպագանդիստների թիվը: Կուսակցության շրջկոմներն ու քաղկոմները, կուսկոմիտեներն ու սկզբնական կուսկազմակերպությունները պետք է ամեն կերպ խրախուսեն լավագույն պրոպագանդիստներին, ըստ ամենայնի գնահատեն նրանց դժվարին և շատ կարևոր ու պատվավոր գործը: Մամուլը, ռադիոն, հեռուստատեսությունը, պատվո տախտակները, պատվոգրերը, մեծարման երեկոների, էքսկուրսիաների կազմակերպումը և բարոյական խրախուսման բազմազան այլ միջոցները պետք է օգտագործել գաղափարական ճակատի առաջամարտիկներին խրախուսելու համար, դա է՛լ ավելի կպարտավորեցնի և կոգևորի նրանց: Մեր լավագույն պրոպագանդիստներն արժանի են ամենայն ուշադրության, որովհետև կատարում են կուսակցական շատ պատասխանատու և կարևոր հանձնարարություն, որը պահանջում է ոչ միայն գիտելիքների անհրաժեշտ պաշար և գործին տիրապետելու ունակություններ, այլև՝ ժամանակ ու հաստատակամություն:

Մեր ուսումնասիրությունները ցույց են տալիս, սակայն, որ դեռևս կան ոչ քիչ թվով պրոպագանդիստներ, որոնք չեն բավարարում իրենց ներկայացվող արդի պահանջները: Առանձին պրոպագանդիստներ չունեն անհրաժեշտ բարեխղճություն ու պատասխանատվություն, գիտելիքների պաշար, պարապմունքի են ներկայանում անպատրաստ, որի հետևանքով նյութը մատուցում են մակերեսորեն, չեն կարողանում խորությամբ վերլուծել հրատապ պրոբլեմները, որոշ տեսական հարցեր շարադրում են պարզունակ, չեն տիրապետում պարապմունք վարելու արվեստին, չեն բավարարում ունկնդիրների հետաքրքրասիրությունը, նրանց աճող հոգևոր պահանջները: Իսկ երբեմն էլ, թույլ պահանջկոտության հետևանքով, ունկնդիրների մի զգալի մասը բարեխղճությամբ չի ուսումնասիրում հանձնարարված նյութը: Որոշ տեղերում դեռևս գոյություն ունի պարապմունքների անցկացման արատավոր պրակտիկա: Մի դեպքում այն կրում է սոսկ լուսավորչական, իսկ մյուս դեպքում՝ նեղ արտադրական խորհրդակցության բնույթ: Հասկանալի է, որ երկու դեպքում էլ ունկնդիրները չեն ստանում խոր ու կայուն գիտելիքներ: Այդ կարգի թերություններ կան Էջմիածնի շրջանի Այգր լճի սովխոզի մարքսիզմ-լենինիզմի հիմունքները (պրոպագանդիստ՝ Գ. Գյուլումյան), Ֆրանգանոցի կոլտնտեսության տեսական գիտելիքների հիմունքները (պրոպագանդիստ՝ Հ. Վարդանյան), սարքաշինական գործարանի արտադրության էկոնոմիկայի և կառավարման հիմունքները (պրոպագանդիստ՝ Գ. Վասիլևով), Նաիրիի շրջանի Պառոշյանի անվան սովխոզի տնտեսական գիտելիքների հիմունքները (պրոպագանդիստ՝ Ռ. Բաբայան) ուսումնասիրող քաղդպրոցներում, Երևանի 26 կոմիսարների շրջանի «Հայհաստոցշին», «Հայկապշին» տրեստների, «Տնայնագործ» կոմբինատի և այլ կուսկազմակերպություններում:

Ուսուցման գաղափարական մակարդակի բարձրացման, պրոպագանդիստական կադրերին օգնություն ցույց տալու մեծ հնարավորություններ ունեն կուսակցության քաղկոմ-շրջկոմների քաղաքական լուսավորության կաբինետները: Դրանցից շատերն ստեղծել են պրոպագանդիստի օգնության անկյուն՝ համապատասխան գրականությամբ, ուսումնական ծրագրերով, մեթոդական ձեռնարկներով, բրոշյուրներով, լրագրերի և ամսագրերի համապատասխան հոդվածների բիբլիոգրաֆիական ցանկով, տվյալ քաղաքի, շրջանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման վերաբերյալ տեղեկատու նյութերով: Գրեթե բոլոր քաղլուսկաբինետներն ապահովված են պրոպագանդայի տեխնիկական միջոցներով, սակայն այդ բոլոր հնարավորությունները լիովին չեն օգտագործվում պրոպագանդիստական կադրերին արդյունավետ օգնություն ցույց տալու համար, դրանք լիարժեք կերպով չեն ծառայում կուսակցական պրոպագանդայի գաղափարական մակարդակի բարձրացմանը: Քաղաքական լուսավորության այդ օջախները կոչված են դառնալու կուսակցական պրոպագանդայի իսկական գիտա-մեթոդական կենտրոններ, մինչդեռ դրանցից շատերը բավականաչափ հեռու են այդ պատվաբեր կոչումը կրելուց:

Գաղափարական աշխատանքի կարևոր օղակներից մեկը կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար կադրերի ուսուցումն է: Ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի «Տաշքենդ քաղաքի կուսակցական կազմակերպության ղեկավար կադրերի մարքս-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության մասին» որոշմամբ՝ կուսակցության քաղկոմ-շրջկոմներն ընթացիկ ուսումնական տարում նկատելիորեն բարելավեցին նրանց քաղաքական և տնտեսագիտական կրթության գործը: Գրեթե բոլոր քաղկոմ-շրջկոմներին կից գործում են կուսակցական ակտիվի դպրոցներ ու տեսական սեմինարներ, ուր ղեկավար կադրերն ուսումնասիրում են ծրագրերով նախատեսված թեմաները, արդի փուլում կուսակցության տնտեսական քաղաքականության պրոբլեմները: Սակայն այս օղակում ևս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ուսուցման որակի, նրա գաղափարական մակարդակի ապահովման վրա: Մի շարք դպրոցներում ձևական կողմը անմիջապես աչքի է զարնում, հաճախ պարապմունքներին, չորս ժամի փոխարեն, տրամադրվում է երկու ժամ: Շատ դեպքերում դրանք վեր են ածվում սոսկ դասախոսությունների ունկնդրումների. գործնական պարապմունքներ չեն անցկացվում. ունկնդիրները հանդես չեն գալիս ռեֆերատներով, նրանց որոշ մասը բոլորովին չի աշխատում հանձնարարված գրականության վրա, չեն կազմակերպվում բանավեճեր ու քննարկումներ տեսական պրոբլեմների շուրջ, իսկ այդ ամենը պասիվություն է մըղում ունկնդիրներին, չի նպաստում նրանց տեսական-գաղափարական աճին, գիտելիքների հարստացմանը:

Եթե նկատի ունենանք, որ կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում գործերի հաջողությունը վճռում են կադրերը, ապա ակներև է դառնում, թե որքան պետք է պահանջկոտ լինել հատկապես նրանց ուսուցման նկատմամբ: Սակայն ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ որոշ կոմունիստ ղեկավար աշխատողներ դեռևս բավարարվում են գիտելիքների հին պաշարով, չեն զբաղվում իրենց տեսական մակարդակի բարձրացմամբ, պասիվ մասնակցություն են ցույց տալիս իրենց իսկ կոլեկտիվների քաղաքական դաստիարակության գործին, առանձին ձգտում չեն դրսևորում տիրապետելու կառավարման ժամանակակից մեթոդներին: Կուսակցությունն այժմ առանձ-



նահատուկ ուշադրություն է նվիրում կադրերի, բոլոր աշխատավորների տընտեսագիտական կրթության կազմակերպմանը, քաղաքական ու բարոյական դաստիարակությանը և ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը: Այժմ կուսակցությունը պահանջում է մարդկանց սովորեցնել, որ երկրի էկոնոմիկայի զարգացման նախատեսված ծրագրի իրականացումը, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացումը վճռականապես պայմանավորված է յուրաքանչյուր մարդու ու կոլեկտիվի անձնվեր աշխատանքով, ներքին ռեզերվների հայտնաբերմամբ, օգտագործմամբ, աշխատանքի արտադրողականության անշեղ աճով: ՍՄԿԿ Կենտկոմի «Աշխատավորների տնտեսագիտական կրթությունը բարելավելու մասին» որոշման համապատասխան՝ համընդհանուր տնտեսագիտական կրթության սիստեմում հանրապետության ղեկավար կադրերը և ժողովրդական տնտեսության մասնագետներն ընթացիկ ուսումնական տարում ուսումնասիրում են տնտեսավարման լենինյան սկզբունքները, զինվում տնտեսական գիտելիքներով: Արդյունավետ են գործում կոմունիստական աշխատանքի դպրոցները, որոնք դառնում են արտադրության առաջավոր փորձի պրոպագանդման, աշխատավորներին սոցիալիստական մրցության մեջ ներգրավելու, նրանց նախաձեռնությունն ու ակտիվությունը զարգացնելու լավագույն ձև:

Տնտեսագիտական ուսուցման վերջին երկու տարվա արդյունքները ցույց են տալիս, որ կուսակցության մի շարք քաղկոմ-շրջկոմներ, մինիստրություններ, գերատեսչություններ և արտադրական կոլեկտիվներ այդ ասպարեզում հասել են որոշակի հաջողությունների: Այս առումով բնորոշ է կուսակցության Լենինականի քաղաքային կոմիտեի, նրա կազմակերպությունների գործունեությունը: Քաղաքի արդյունաբերության զարգացման հնգամյա պլանին համապատասխան՝ կուսքաղկոմը մշակել է աշխատավորների տնտեսագիտական կըրթության հեռանկարային ծրագիր, ըստ որի մինչև 1975 թ. այդ կարգի տարբեր տիպի դպրոցներում, սեմինարներում ու խմբակներում կսովորի 35 հազար մարդ: Այժմ քաղաքում գործում են 95-ից ավելի տնտեսագիտական ուսուցման դասընթացներ՝ 2.702 ունկնդիրներով, 38 սեմինար, 18 լեկտորիում, որտեղ ուսումնասիրվում են արտադրության գիտական կառավարման առաջավոր ձևերն ու եղանակները, տնտեսագիտության պրոբլեմները: Քաղկոմին կից գործում է կուսակցական-տնտեսական ղեկավար ակտիվի դպրոց: Տնտեսագիտական ուսուցման կազմակերպման ուսանելի փորձ ունեն տեքստիլ կոմբինատի, «Լենշին» տրեստի, գուլպայի և Ա. Լուկաշինի անվան մանվածքային ֆաբրիկաների, երկաթուղային հանգույցի, դարբնոցա-մամլիչային սարքավորումների գործարանի սկզբնական կուսկազմակերպությունները:

Գուլպայի ֆաբրիկայում, օրինակ, բազմակողմանիորեն ու խնամքով մշակվում են բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների տնտեսագիտական ուսուցման հարցերը: Այստեղ դպրոցների ունկնդիրները և ղեկավար աշխատողները հանդես են գալիս ռեֆերատներով, ծանոթանում համանման ձեռնարկությունների աշխատանքի փորձին, մասնակցում ձեռնարկության և առանձին արտադրամասերի տնտեսական գործունեության վերլուծությանը, ուսուցումը բարելավելու հանձնարարականների մշակմանը: Կադրերի տնտեսագիտական կրթության հաջող կազմակերպումը, բնականաբար, դրականորեն նպաստում է արտադրության արդյունավետության բարձրացմանը: Անցյալ տարի ֆաբրիկան իր պլանները կատարեց 101,9 տոկոսով, պլանից

ավելի ավելց 453 հազար ռուբլու արտադրանք, գերակատարեց նաև այս տարվա անցած ամիսների առաջադրանքները:

Տնտեսագիտական ուսուցման լավ օրինակներ կան Երևանի Լենինյան, 26 կոմիսարների անվան, Օրջոնիկիձեի, ինչպես նաև Գուգարքի, Ղափանի, Հրազդանի, Աշտարակի, Իջևանի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ շրջաններում:

Տնտեսագիտական կրթության կազմակերպման գործում զգալի աշխատանք են կատարում ավտոմոբիլային տրանսպորտի, խճուղային ճանապարհների շինարարության և շահագործման ու կապի մինիստրությունների կուսկազմակերպությունները: Սակայն մի շարք մինիստրությունների և գերատեսչությունների, այդ թվում՝ գյուղատնտեսության, ֆինանսների արդյունաբերության, արդյունաբերական շինարարության մինիստրությունների ղեկավարները և կուսկազմակերպությունները խորամուխ չեն լինում այդ խնդրի մեջ, անհրաժեշտ չափով չեն զբաղվում ուսուցման պլանավորման հարցերով, սերտ կապեր չեն հաստատում կուսակցության շրջկոմների հետ, որի հետևանքով նրանց ենթակայության բազմաթիվ օբյեկտներում ուսուցումը կամ չի կազմակերպվում, կամ էլ կրում է ձևական բնույթ, չի ապահովվում դրա տնտեսական-գաղափարական բարձր մակարդակը:

Կուսակցական ու տնտեսագիտական կրթության գործի դրական տեղաշարժերը դեռևս լիովին չեն բավարարում ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջները: Այս ասպարեզում խնդիրները մեծ են, անելիքները՝ շատ: Ուստի, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, մինիստրություններն ու գերատեսչությունները, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներն ու կուսկազմակերպությունները պետք է ուժեղացնեն գործնական օգնությունը քաղաքական ու տնտեսագիտական կրթությանը, բարձրացնեն ուսուցման ղեկավարման ու պարապմունքների գաղափարական մակարդակը: Կուսակցության քաղկոմ-շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների պարտքն է կուսակցական պրոպագանդայի միջոցով գաղափարապես զինել մեր կադրերին, բոլոր աշխատավորներին, ձևավորել նրանց կոմունիստական աշխարհայացքը, բարձրացնել մասնագիտական ու տնտեսագիտական պատրաստությունը, զարգացնել նրանց աշխատանքային, հասարակական և քաղաքական ակտիվությունը, քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը ծառայեցնել իններորդ հնգամյակի վիթխարի կանխագծումների իրականացման նպատակին:

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ԽՆԴԻՐՆԵՐԻ ԼՈՒԾՄԱՆ ԱՎԱՆԳԱՐԴՈՒՄ

Ս. Ի. ԳԱԼՍՏՅԱՆ

Կուսակցական խմբերը կուսկազմակերպությունների ներքին օղակներն են և ստեղծվում են բրիգադաներում, ֆերմաներում ու արտադրական մյուս ճյուղերում: Դրանք հսկայական չափով նպաստում են սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության աշխուժացմանն ու արդյունավետության բարձրացմանը, կուսժողովների և բյուրոների նիստերի որոշումների իրագործմանը: Վերջին տարիներին Գորիսի շրջանում ավելացել է կուսխմբերի քանակը և հասել 70-ի: Դրանք գործում են անասնապահության, դաշտավարության ու այգեգործության բնագավառներում, մեքենատրակտորային պարկերում և արդյունաբերական ձեռնարկություններում: Կուսխմբերի ցանցի ընդլայնումը հնարավորություն է ընձեռում զարգացնել կոմունիստների ակտիվությունն ու նախաձեռնությունը, կուսակցական ազդեցության տակ ներգրավել աշխատավորությանը, մշտապես ներազդել կոլեկտիվների գործերի վիճակի վրա, անհատական, արդյունավետ քաղաքական-մասսայական աշխատանք տանել յուրաքանչյուր մարդու հետ:

Պրակտիկան ցույց է տալիս, որ այն կուսկազմակերպությունների կոմիտեներն ու բյուրոները, որոնք կարողանում են հմտորեն նպատակամղել կուսխմբերի գործունեությունը, հաջողությամբ են լուծում արտադրության և մարդկանց գաղափարա-քաղաքական դաստիարակության խնդիրները:

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները միշտ իրենց ուշադրության կենտրոնում են պահում կուսակցական խմբերի հետ տարվող աշխատանքը: Շրջկոմի բյուրոյի նիստերում ու կուսժողովներում պարբերաբար քննարկվում են այնպիսի հարցեր, որոնք վերաբերում են կուսխմբերին ցույց տրվող օգնությանն ու ղեկավարությանը: Հրավիրվում են նաև կուսխմբերի ղեկավարների շրջանային ու ենթաշրջանային սեմինար-խորհրդակցություններ, որոնք ևս նպաստում են նրանց գործունեության բարելավմանը:

Անցած տարվա սեպտեմբերին շրջանի կուսակցական խմբերում անցկացվեցին հաշվետու-ընտրական ժողովներ: Դրանց մասնակցեցին կուսկազմակերպությունների քարտուղարները և կուսշրջկոմի հրահանգիչները: Շրջկոմն առանձնակի ուշադրություն է նվիրում խմբերի ղեկավարների ընտրությանը: Ղեկավարներ են ընտրվել կազմակերպչական ունակություններով օժտված և քաղաքականապես գրագետ կոմունիստներ: Նրանցից չորսն ունեն բարձրագույն և թերի-բարձրագույն, 45-ը՝ միջնակարգ, իսկ 21-ը՝ թերի-միջնակարգ կրթություն:

Կուսակցական խմբերի գործունեությունը ճիշտ ղեկավարելու լավ փորձ ունի Վերիշենի սովխոզ-տեխնիկումի սկզբնական կուսկազմակերպության կոմիտեն (քարտուղար՝ Գ. Ավագյան): Այստեղ, արտադրական ճյուղերում (կաթնապրանքային ֆերմա, դաշտավարություն, մեքենատրակտորային պարկ, այգեգործություն) ստեղծվել են 6 կուսխմբեր: Դրանցում ընդգրկված կոմունիստներն անմիջականորեն աշխատում են արտադրության վճռական տեղամասերում և ապահովում են իրենց ավանգարդային դերը: Կուսխմբերի ղեկավարներն ունեն կուսակցական կանոնավոր տնտեսություն. կուսանդամների հաշվառման գրքեր, եռամսյա աշխատանքային պլաններ, կատարած աշխատանքի և անցկացված միջոցառումների հաշվառման օրագրեր: Նրանք ժամանակին հրավիրում են ժողովներ, քննարկում իրենց արտադրական օղակներին վերաբերող բազմաբնույթ հարցեր, օգնում նրանց ղեկավարներին՝ այս կամ այն խնդիրը լուծելու գործում: Այսպես, սովխոզ-տեխնիկումը 1971 թ. ստացել էր էլեկտրակթի ագրեգատներ, որոնք դիրեկցիայի ու կուսկոմիտեի որոշմամբ պետք է տեղադրվեին կովանոցներում: Մինչդեռ այդ գործում դիրեկցիան հանդիպեց որոշակի դժվարությունների. առանձին անասնապահներ դժվարությամբ էին ընդունում նորամուծությունը և դիմադրում էին նրա ներդրմանը: Եվ ահա այստեղ դիրեկցիային օգնության հասավ սովխոզի Վերիշենի տեղամասի կաթնապրանքային բրիգադի կուսխումբը: Նրա կազմակերպիչ, կոմունիստ կթվորուհի Փառանձեմ Սարգսյանի նախաձեռնությամբ մեքենայական կիթն արմատավորվեց բրիգադում: Կարճ ժամկետում ակներև դարձավ դրա առավելությունը: Չանցած մի քանի ամիս, մյուս բրիգադների կթվորները դիրեկցիայի առջև հարց բարձրացրին՝ իրենց մոտ ևս արմատավորել մեքենայական կիթը:

Արդյունավետ գործունեություն է ծավալում նաև սովխոզ-տեխնիկումի Բռունի տեղամասի կաթնապրանքային բրիգադի կուսխումբը: Նրա ղեկավար Ս. Վանեսյանը անասնապահների ուշադրությունը հրավիրում է արտադրական խնդիրների լուծման վրա, նրանց ակտիվորեն ընդգրկում սոցիալիստական մրցության մեջ, բարձրացնում ոչ միայն կոմունիստների, այլև անկուսակցական անասնապահների պատասխանատվությունը: Այդ ամենի շնորհիվ բրիգադան ժամկետից երկու ամիս շուտ կատարեց կաթի արտադրության ոչ միայն տարեկան պլանը, այլև սոցիալիստական պարտավորությունները: Ընդ որում, բրիգադայի բոլոր անդամները կատարեցին իրենց խոստումը և հնգամյակի վճռական տարում, 1972 թ. համեմատությամբ, ավելի կթեցին 700 ց. կաթ, յուրաքանչյուր կովի կաթնատվությունն ավելացրին 70 կգ-ով: Բարձր ցուցանիշների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում ձեռք բերած հաջողությունների համար բրիգադան արժանացավ Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության դրամական մրցանակին:

Տնտեսության մեքենա-տրակտորային պարկի կուսակցական խումբը (կազմակերպիչ՝ Ժ. Միրումյան) անցած տարի կանոնավոր հրավիրել է խմբի ժողով-խորհրդակցություններ, որոնց մասնակցել են ոչ միայն կոմունիստները, այլև անկուսակցական աշխատողները: Ժողովներում միջոցառումներ են մշակվել խոտհնձի նախապատրաստության ու անցկացման, հանրային հոտի կուշտ ու տաք ձմեռումն ապահովելու վերաբերյալ: Այդ աշխատանքներին ակտիվ մասնակցություն ցույց տվեցին մեխանիզատորներ Կամո և Կարլեն Բաբայանները, Մ. Օրդյանը, Ժ. Մեժլումյանը, Ջ. Բակունցը, Ա. Արզումանյա-



նը, Յու. Մինասյանը, Մ. Սահակյանը և ուրիշներ: Նրանք հանդես եկան մի շարք նախաձեռնություններով, որոնց նպատակն էր՝ թույլ չտալ աշխատանքային տեմպերի դանդաղում, կանխել խզումը խոտհնձի ու տեղափոխման միջև, պայքարել յուրաքանչյուր կիլոգրամ կերի համար: Նրանց պայքարը պսակվեց հաջողությամբ. տնտեսությունում առաջին անգամ հավաքվեց և դիզվեց 2.213 տոննա որակյալ խոտ, որը պլանը գերազանցում է 123 տոննայով:

Սովխոզ-տեխնիկումի կուսակցական մյուս խմբերում ևս հաճախակի են հրավիրվում խորհրդակցություններ, քննարկվում ժամանակի հրատապ հարցերը, որոնց լուծումից հետո զգալիորեն բարելավվում է ներկուսակցական աշխատանքը, ամրապնդվում կուսակցական կարգապահությունը: Այս ամենը մեծապես խթանում է սովխոզի արտադրության բարձրացմանը:

Կուսկոմիտեն, տեղամասային սկզբնական կուսկազմակերպությունները կուսխմբերից պարբերաբար ստանում են ինֆորմացիաներ գործերի վիճակի և առանձին հարցերի լուծման մասին, ժողովներում հաճախակի լսում կուսխմբերի կազմակերպիչների, առանձին կոմունիստների հաշվետվությունները կատարած աշխատանքի, արտադրության մեջ նրանց ավանգարդային դերի և քաղաքական պատրաստականության վերաբերյալ: Կուսկոմիտեի գործունեության արդյունավետության չափանիշը նրանց ակտիվության ու նախաձեռնության զարգացումն է: Այս առումով ուսանելի է «Զանգեզուր» սովխոզի կաթնապրանքային բրիգադայի կուսխմբի աշխատանքի փորձը: Կուսխումբը (կազմակերպիչ՝ Վ. Գրիգորյան) հանդես է գալիս արտադրության արդյունավետության բարձրացմանն ուղղված լավ նախաձեռնություններով, օգնում կուսկազմակերպությանը՝ իր առջև ծառացած խնդիրների լուծման գործում:

Իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա սկզբից կուսխումբը իր գործունեության նպատակը համարեց աշխատանքային ամուր կարգապահության արմատավորումը, սոցիալիստական մրցության ու ագիտ-մասսայական աշխատանքի ծավալումը: Կուսխմբի նախաձեռնությամբ բոլոր կթվոր-[illegible] անասնապահները մտան սոցմրցման մեջ և պայքար ծավալեցին մթերքների արտադրության ավելացման համար: Ավարտվեց առաջին կիսամյակը: Նրանց պայքարը հաջողությամբ պսակվեց: Սովխոզը աշխատանքային մեծ հաղթանակ տարավ, արժանացավ ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության և ճյուղային արհմիության կենտկոմի կարմիր դրոշին: Կոմունիստ կթվոր-անասնապահ, շքանշանակիր Ասյա Վանեսյանը 10 ամսում ամեն մի կովից կթեց 2800 կգ կաթ՝ զգալիորեն գերակատարելով տարեկան առաջադրանքը: Նրա օրինակը եզակի չէ: Ընդ որում, կաթի համախառն արտադրությունը սովխոզում 1972 թ. համեմատությամբ ավելացավ 120 տոննայով, մեկ կովի կաթնատվությունը՝ 370 կգ-ով:

Վաղատուրի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության 18 անդամներ ընդգրկված են 5 կուսխմբերում: Նրանք աշխատում են արտադրության վճռական տեղամասերում: Այստեղ ևս կուսխմբերը գտնվում են իրենց կոչման բարձրության վրա, քննարկում են արտադրության հետ կապված հրատապ հարցեր, անհրաժեշտության դեպքում այս կամ այն խնդիրը բարձրացնում կուսկազմակերպության առջև, հետևում դրա վերջնական լուծմանը: Այսպես, 1973 թ. ապրիլ ամսում ֆերմայում կաթի արտադրության պլանի կատարման մեջ առաջացավ 90 ցենտներ ճեղքվածք: Ֆերմայի կուսխումբը (կազմակերպիչ՝ Հ. Բարսեղյան) անդրադարձավ այդ հարցին, լսեց

ֆերմայի վարիչի ինֆորմացիան և մշակեց միջոցառումներ կաթի պլանը կատարելու համար։ Առաջին հերթին շեշտը դրվեց կովերի խնամքի ու կերակրման բարելավման, աշխատողների կարգապահության բարձրացման վրա։ Փոփոխություններ մտցվեցին անասունների կերաբաժնում, սահմանվեց կայուն աշխատավարձ։ Այդ ամենի շնորհիվ նկատելիորեն ավելացավ կովերի կաթնատվությունը, կարճ ժամկետում փակվեց ճեղքվածքը, գերակատարվեցին կաթի արտադրության ու վաճառքի կիսամյակի պարտավորությունները։ Հետագայում նույնպես կուսխումբը չթուլացրեց մթերքների արտադրության համար ծավալած իր պայքարը։ Եվ ահա արդյունքը. ֆերման կաթի արտադրության տարեկան պլանը կատարեց 115, վաճառքինը՝ 122 տոկոսով։ Ընդ որում, նախորդ տարվա համեմատությամբ զգալի աճ ապահովվեց։

Նույն տնտեսության ոչխարաբուծական ֆերման 1972 թ. չկատարեց բրդի արտադրության և վաճառքի պլանները։ Այդ հարցը դարձավ ոչխարաբուծական ֆերմայի կուսխմբի հիմնական հոգսերից մեկը։ 1972 թ. նոյեմբեր, 1973 թ. փետրվար և ապրիլ ամիսներին տեղի ունեցած խորհրդակցություններում կուսխումբը քննարկեց գործերի վիճակը, խմբի կազմակերպիչ Գ. Ստեփանյանը բրդի արտադրության պլանի թերակատարումը պատճառաբանեց ցածրորակ կերով, մսուրային շրջանի վատ նախապատրաստմամբ, ծնի կամպանիայի անբավարար անցկացմամբ, արոտավայրերի ոչ ճիշտ օգտագործմամբ։ Կուսխմբի անդամների ջանքերով կանխվեցին այդ թերությունները, հսկողություն սահմանվեց ծնի անցկացման ու արոտի կազմակերպման նկատմամբ։ Արդյունքը եղավ այն, որ 1973 թ. տնտեսությունը 6 ցենտներով գերակատարեց բրդի վաճառքի պարտավորությունը, մեկ ոչխարի բրդատվությունը ավելացրեց 0,3 կգ-ով, իսկ ֆերմայի դրամական եկամուտը՝ 10 հազար ռուբլով։

Խնձորեսկի կոլտնտեսության արտադրության վճռական ճյուղերում գործում է կուսակցական ութ խումբ։ Կաթնապրանքային ֆերմայի կուսխմբում ընդգրկված են ՍՄԿԿ յոթ անդամներ։ Խմբի նախաձեռնությամբ ֆերմայում քննարկվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի «1972—1973 թվականների ձմռանը անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները ավելացնելու համար անասնապահության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին» որոշումը, անասնապահներն ստանձնեցին բարձր պարտավորություններ։ Դրան հետևեց գործնական աշխատանքը։ Կուսխումբը (կազմակերպիչ՝ Մ. Սարգսյան) 1973 թ. հունվարի 10-ին քննարկեց 1973 թվականի սոցպարտավորությունների մշակման, փետրվարի 21-ին՝ մսուրային շրջանի ընթացքի, ապրիլի 12-ին՝ առաջին եռամսյակի արդյունքները և ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքի, մայիսի 3-ին՝ անասունների մսուրային շրջանից արոտային շրջանին անցնելու մասին հարցերը, ապա հետևեց ընդունած որոշումների կատարմանը։ Ինչպես և սպասվում էր, ձեռք բերվեցին գոհացուցիչ արդյունքներ։ 1973 թ. առաջին եռամսյակում կոլտնտեսությունը շահեց ՀԿԿ Գորիսի շրջկոմի և շրջանային սովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը, I կիսամյակում կատարեց կաթի վաճառքի, սեպտեմբերի 1-ին՝ համախառն արտադրության տարեկան պլանները։ Ֆերման (վարիչ՝ կոմունիստ Ռ. Սողոմոնյան) արժանացավ հանրապետության գյուղատնտեսության մինիստրության դրամական մրցանակին, իսկ առաջավոր կթվոր-անասնապահները, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, ՍՄԿԿ անդամ Արամայիս Հայր-



յանը պարգևատրվեց Լենինի շքանշանով, Գրիշա Գյուլամբարյանը՝ «Պատվո
նշան» շքանշանով։ Անասնապահական մթերքների արտադրության վճռական
տարվա պլանները գերակատարելու և 1972 թ. համեմատությամբ զգալի աճ
ապահովելու համար Խնձորեսկի կոլտնտեսությունը շահեց Հայկական ՍՍՀ
Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը և առաջին կարգի
դրամական մրցանակը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1971 թ. «Սոցիալիստական մրցության կազմակերպման
հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշմամբ կուսակցական,
կոմերիտական, արհմիութենական կազմակերպությունների, կոլտնտեսություն-
ների ու սովխոզների, արդյունաբերական, շինարարական և այլ ձեռնարկու-
թյունների հիմնական խնդիրն է համարվում՝ մոբիլիզացնել ողջ աշխատավո-
րության ուժերը՝ աշխատանքի արտադրողականության աճը, արտադրության
արդյունավետության բարձրացումը ապահովելու, աշխատանքի որակը բարե-
լավելու համար։ Անժխտելի է, որ այդ խնդիրների լուծման գործում ակտիվ
դեր են խաղում նաև կուսակցական խմբերը։ «Ավանգարդ» սովխոզի կաթնապ-
րանքային և ոչխարաբուծական ֆերմաների կուսակցական խմբերը ակտիվո-
րեն նպաստում են սոցիալիստական մրցության ծավալմանը, առաջավոր փոր-
ձի արմատավորմանը, անասնապահության վարման կուլտուրայի բարձրաց-
մանը։ Կաթնապրանքային ֆերմայի՝ Մ. Փարսադանյանի ղեկավարած կուսակ-
ցական խումբը 1973 թ. հրավիրել է 10 խորհրդակցություն, ուր լսվել են մատ-
ղաշի ինտենսիվ բտման փորձի կիրառման, նորածին հորթերի խնամքի կազ-
մակերպման, ամառային արոտավայրերի ռացիոնալ օգտագործման, ֆերմա-
յում աշխատանքային կարգապահության ամրապնդման, անասնապահների
շրջանում տարվող քաղաքական-մասսայական աշխատանքի բարելավման և
այլ խնդիրներին վերաբերող հարցեր։

Կուսխմբերը գտնվում են հնգամյակի խնդիրների լուծման ավանգարդում,
ակտիվություն են ցուցաբերում, իրենց անձնական օրինակով ոգևորում անկու-
սակցական աշխատողներին։ «Ավանգարդ» սովխոզի առաջավոր կթվորուհի,
ՍՄԿԿ անդամ, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ Դեզիկ Բաղդագյուլյանը
յուրաքանչյուր կովից տարվա ընթացքում կթել է 3000 կգ կաթ, իսկ ՀԿԿ Կենտ-
կոմի անդամության թեկնածու, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր
Էմմա Շալունցը 18 կովից ստացել ու պահպանել է նույնքան հորթ և ամեն մի
կովի տարեկան կաթնատվությունը հասցրել 2850 կգ-ի։ ՍՄԿԿ անդամ Վա-
ղարշակ Յոլյանը անցած տարի ծավալված համամիութենական սոցիալիստա-
կան մրցությունում բարձր ցուցանիշներ ձեռք բերեց և արժանացավ Աշխա-
տանքային կարմիր դրոշի շքանշանի։

Լավագույն աշխատանքի օրինակներ են ցույց տալիս Գորիս քաղաքի միկ-
րոէլեկտրաշարժիչների գործարանի սկզբնական կուսկազմակերպության կուս-
խմբերը։ Այս գործարանը մեր հանրապետության երիտասարդ ձեռնարկու-
թյուններից է, բայց կարճ ժամանակում նրա կոլեկտիվը հասել է զգալի հա-
ջողությունների, որոնց մեջ իրենց արժանի բաժինն ունեն կուսկազմակերպու-
թյունը և արտադրամասերում ստեղծված կուսխմբերը։ Արդյունավետ է գոր-
ծում գործիքաշինական արտադրամասի կուսակցական խումբը, որը գլխավո-
րում է ֆրեզերագործ Ռ. Շահնազարյանը։ Կուսխմբի անդամները արդեն մի
քանի տարի է, ինչ ընթանում են սոցիալիստական մրցության ավանգարդում,
նպաստում աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, նոր տիպի

սարքերի և գործիքների արտադրության յուրացմանը, օգնում են մնացող ընկերներին։ Ահա մի բնորոշ օրինակ։ Երկար տարիներ գործարանի դրոշմման արտադրամասը ետ էր մնում և արգելակում գործարանի առաջընթացը։

Դրոշմող բանվորներին օգնության եկան գործիքագործները։ Դրոշմման արտադրամասը բարձր արտադրողական գործիքներով և սարքերով ապահովելու, այնտեղ ֆիզիկական աշխատանքը մեքենայացնելու հարցը դարձավ գործիքաշինական արտադրամասի կուսակցական խմբի մտահոգության առարկան։ Կուսակցական խումբը մի շարք առաջարկություններ ներկայացրեց գործարանի ադմինիստրացիային։ Վերջինս պաշտպանեց դրանք և ապահովեց անհրաժեշտ նյութատեխնիկական միջոցներով։ Կարճ ժամանակում գործիքագործները պատրաստեցին հինգ անուն դետալների հերթական դրոշմման տարբեր շտամպներ. դրոշմող բանվորների աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 2—3 անգամ։

Աշխատանքային լավ ավանդույթներ և հարուստ փորձ ունի նաև տեխնիկական վերահսկողության բաժնի կուսակցական խումբը։ Խմբի կոմունիստների գործունեությունն ուղղված է թողարկվող արտադրանքի որակի բարձրացմանը, խոտանից առաջացող վնասի կրճատմանը։ 1972 թ. սկզբներին կուսակցական խմբի մտահոգության առարկան պատվիրատուներից ստացված բողոքների պատճառների ուսումնասիրումն ու դրանց վերացումն էր։ Կուսակցական խումբը պարզեց, որ բողոքների գերակշռող մասը առաջանում է փոխադրման անբավարար դրվածքից. պատրաստի արտադրանքը մինչև սպառողին հասնելը ճանապարհին զգալի վնասվածք էր ստանում և դառնում ոչ պիտանի։ Արտադրանքի փաթեթավորումը և տարաները չէին ապահովում հուսալի փոխադրում։ Կուսակցական խումբը առաջարկեց փոխել արկղերի կառուցվածքը և պատրաստի դետալի փաթեթավորման տեխնոլոգիան։ Գործարանի տեխնիկական բաժինը ընդունեց առաջարկությունը, նախագծեց նոր տեսակի արկղեր և մշակեց փաթեթավորման նոր տեխնոլոգիա։ Արդյունքը գոհացուցիչ էր. բողոքները մի քանի անգամով կրճատվեցին։

Սակայն պետք է նշել, որ ոչ բոլոր կուսկազմակերպություններն են ապահովում կուսակցական խմբերի արդյունավետ գործունեությունը։ Շրջանի Տեղ, Խողնավար, Քարաշեն, Հարժիս, Շինուհայր, Սվարանց, Խնածախ գյուղերի տնտեսություններում № № 1, 2, 919 շինարարական վարչություններում, տրիկոտաժի ֆաբրիկայում և այլ կազմակերպություններում կուսխմբերը հանդես չեն գալիս սեփական նախաձեռնություններով, իրենց գործունեությամբ չեն նպաստում տվյալ տնտեսության ու ձեռնարկության գործերի բարելավմանը։ Դա հետևանք է ամենից առաջ այն բանի, որ սկզբնական կուսկազմակերպությունները, ինչպես հարկն է, կուսխմբերի գործունեության աշխուժացման խնդիրները չեն պահում իրենց ամենօրյա ուշադրության կենտրոնում, կուսժողովներում, կոմիտեների ու բյուրոների նիստերում չեն լսում կուսխմբերի կազմակերպիչների հաշվետվությունները, զեկուցումները, նրանց անդամների ուժերը չեն ուղղում տվյալ տեղամասի առջև դրված խնդիրների լուծմանը։

Կուսշրջկոմը մշակել է միջոցառումների պլան, որպեսզի ամենուրեք բարելավվի կուսխմբերի գործունեությունը և նրանք գտնվեն իններորդ հնգամյակի խնդիրների լուծման ավանգարդում։

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՉԻՆ ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ԳՈՐԾՈՎ

## ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՎՃՌԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԸ

**Պ. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ**
ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը սոցիալիստական շինարարության բոլոր փուլերում հսկայական ուշադրություն են նվիրել սոցիալիստական մրցության կազմակերպմանը, այն համարել միլիոնների մասսայական շարժում, ժողովրդական տնտեսության վերելքի, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը մեծապես նպաստող կարևորագույն լծակ։

Ղեկավարվելով սոցիալիստական մրցության կազմակերպման վերաբերյալ լենինյան ուսմունքով՝ մեր կուսակցությունն այժմ առավել, քան երբեք, իր ուշադրության կենտրոնում է պահում միլիոնների զանգվածային այդ շարժումը։ «Սոցիալիստական մրցության կազմակերպման հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը հզոր ազդակ հանդիսացավ հնգամյակի վճռական տարվա բնագծերի նվաճման համար։ Ինչպես ամենուրեք, այնպես էլ մեր շրջանի կուսկազմակերպությունները, ելնելով այդ որոշման պահանջներից, մշակեցին սոցիալիստական մրցությունը և արտադրության աճը խթանող մի շարք միջոցառումներ։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, ամենից առաջ, հոգ տարան մրցությանը, իրոք, զանգվածային ու գործարար բնույթ հաղորդելու, մի շարք տնտեսություններում ու ձեռնարկություններում մրցության կազմակերպման գործում դրսևորվող ձևականությանը վերջ տալու մասին։ Այդ խնդիրների իրագործումը մենք սկսում ենք սկզբնական օղակներից։ Դեռ տարեսկզբին կոլտնտեսություններում, արդյունաբերական ձեռնարկություններում և սպասարկման ոլորտում քննարկվում և ընդունվում են սոցիալիստական պարտավորությունները, հաստատվում անհատական, միջբրիգադային, միջֆերմային, միջարտադրամասային ու միջտնտեսային մրցության պայմանագրերը, սահմանվում փոխանցիկ դրոշներ, հուշադրոշներ, դրամական մրցանակներ։ Գործի են դրվում բարոյական խթանման այնպիսի միջոցներ, ինչպիսիք են պատվո տախտակները, պատվոգրերը, պատվոգրքերը, պատի թերթերը։

Այդ շնորհակալ գործին անմասն չի մնում ՀԿԿ շրջկոմի և շրջսովետի գործ-

կոմի օրգան «Կոմունիզմի դրոշով» թերթը, որն իր նախաձեռնությամբ մեծապես խթանում է անասնապահների միջև ծավալված մրցությունը: Խմբագրությունն անցած տարի սահմանեց «Առաջավոր կթվորուհուն», «Առաջավոր կաթնապրանքային ֆերմային» և «Առաջավոր ոչխարաբուծական ֆերմային», «Առաջավոր հովվին» փոխանցիկ կարմիր դրոշներ: Ամեն տասնօրյակ ամփոփելով կաթի արտադրության արդյունքները՝ խմբագրությունը փոխանցիկ դրոշը հանդիսավոր պայմաններում հանձնում է ամենաշատ կաթ ստացած կթվորուհուն և այդ մասին գրում թերթում: «Ճանաչեցեք մրցության առաջավորներին», «Աշխատեցեք նրանց օրինակով», «Սոցիալիստական մրցության ավանգարդում», «Վճռական տարում՝ հարվածային տեմպով», «Հնգամյակի մեր առաջավորները» խորագրերի տակ թերթը հանգամանորեն լուսաբանում էր մրցության ընթացքը, բոլորի ճանաչմանն արժանացնում ո՛չ միայն առաջավորներին, այլև ետ մնացողներին:

Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու նպատակով կուսկազմակերպությունները անասնապահների միջև լայն մրցություն ծավալեցին՝ «Անասնապահությունը հարվածային ճակատ է», «Արդյունավետ անցկացնենք մսուրային շրջանը», «Ծինն առանց կորստի» և այլ լոզունգներով: Կաքավաձորի անասնապահական սովխոզի կաթնապրանքային և ոչխարաբուծական ֆերմաների նախաձեռնությամբ սկսվեց «Աշխատենք առաջավորների օրինակով» շարժումը:

Սոցիալիստական մրցության կազմակերպման լավ փորձ է կուտակվել Վերին Բազմաբերդի կոլտնտեսությունում (վարչության նախագահ՝ Մ. Սաֆարյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Հ. Խաչատրյան): Կուսկազմակերպությունը մոտիկից է զբաղվում մրցության հարցերով, մրցության ընթացքն ու արդյունքները քննարկում բյուրոյի նիստերում և կուսժողովներում: Կոլտնտեսության վարչությունն ու կուսբյուրոն վճռական նշանակություն են տալիս մրցողների նյութական ու բարոյական խրախուսմանը, այն համարում որպես արտադրության զարգացման վճռական ազդակ: Նրանք սահմանել են միջֆերմային և միջբրիգադային փոխանցիկ դրոշներ, «Առաջավոր կթվորուհուն» և «Առաջավոր հովվին» հուշադրոշներ, դրամական մրցանակներ, որոնք հանձնվում են ամսվա ընթացքում մրցության հաղթողին: Իսկ դա ցանկալի արդյունք է տալիս: Նախորդ տարիների համեմատությամբ, հնգամյակի վճռական տարում մեծ չափերով աճեցին կովերի կաթնատվությունը, ոչխարների բրդատվությունը: Ոչխարաբուծական ֆերման հաղթող ճանաչվեց հանրապետական մրցությունում և պարգևատրվեց ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության և ՀԱՄԽ-ի պատվոգրով ու դրամական մրցանակով, իսկ կթվորուհի Ա. Խաչատրյանն ու հովիվ Մ. Մարտիրոսյանն արժանացան «1973 թվականի սոցիալիստական մըրցության հաղթողին» կրծքանշանի:

Շրջանի արտադրական կոլեկտիվների աշխատանքային արդյունավետ գործունեության և արտադրության մարդկանց խանդավառության աճի վրա բարերար ազդեցություն է գործում Գուգարքի շրջանի աշխատավորների հետ ծավալած սոցմրցությունը: Ամեն եռամսյակ մրցակիցներս այցելում ենք միմյանց, ամփոփում մեր գործունեության արդյունքները, օգնում իրար, սովորում միմյանցից: Ինչպես պետք էր սպասել, այդ մրցությունը ցանկալի արդյունք տվեց: Իններորդ հնգամյակի վճռական տարում շրջանը հաջողությամբ կատարեց իր ստանձնած բոլոր պարտավորությունները: Առավել բարձր բնա-



գծեր նվաճեցին մեր հողագործները: Դաշտավարները հայրենիքին վաճառեցին 4000 տոննա հացահատիկ, այգեգործները՝ 8560 տոննա խաղող և 4882 տոննա պտուղ: Շրջանի հողագործները հաղթող ճանաչվեցին համամիութենական սոցիալիստական մրցությունում և նվաճեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի կարմիր դրոշն ու դրամական առաջին կարգի մրցանակը: Համամիութենական կարմիր դրոշ նվաճեց նաև Արագածի այգեգործական սովխոզը: Գյուղատնտեսության բնագավառի 60 աշխատողներ պարգևատրվեցին ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով, իսկ Արագածի այգեգործական սովխոզի դիրեկտոր Ս. Խանոյանին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի Հերոսի բարձր կոչումը: Ըստ արժանվույն գնահատվեց նաև այգեգործների գործունեությունը: Նրանց տրվեց ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը:

Այդ պարգևներն աշխատանքային աննախընթաց խանդավառությամբ ու եռանդով են համակել շրջանի բանվորներին ու կոլտնտեսականներին: Կուսակցության կոչով նրանք ձգտում են հնգամյակի չորրորդ տարին, իրոք, դարձնել որոշիչ: Դեռ տարեսկզբից մեր մարդկանց ծավալած սոցիալիստական մրցությունը նոր թափ հաղորդեցին կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումն ու համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումները: Ամենուրեք, կոլտնտեսությունների, սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական և մյուս կազմակերպությունների կոլեկտիվները մեծ գոհունակությամբ ծանոթացան դիմումին ու որոշումներին, կուսկազմակերպությունների և կոլեկտիվների ժողովներում լայնորեն քննարկեցին դրանք և ստանձնեցին բարձր պարտավորություններ: Ի դեպ, պետք է ասել, որ վերջին տարիներին, առանձնապես հնգամյակի վճռական տարում, ձեռք բերած հաջողությունները, ուրախացնելու և ոգևորելու հետ միասին, խոր վստահություն են ներշնչել շրջանի ինչպես գյուղատնտեսության, այնպես էլ արդյունաբերության բնագավառի աշխատողներին: Նրանք հավատով են վերաբերվում իրենց ուժերին, ավելի վստահությամբ են որոնում և գործի դնում արտադրության զարգացման հնարավորություններն ու ռեզերվները: Խորությամբ ըմբռնելով կուսակցության ու կառավարության նոր պահանջները՝ շրջանի կոլտնտեսականներն ու բանվորները այս տարվա համար իրենց ուժերին ու հնարավորություններին համապատասխանող բարձր բնագծեր են նշել:

Մրցության մեջ կարևոր նշանակություն ունի պարտավորությունների հիմնավորվածությունը: Շրջանում գրեթե ամենուրեք վերջ է տրվել դրանց ընդունման և մրցության կազմակերպման գործում մինչև վերջերս գոյություն ունեցող ոչ ճիշտ գործելակերպին: Այժմ, որպես կանոն, սոցմրցության պայմանագրերը տեղերում մշակվում են սկզբնական կուսկազմակերպությունների հըսկողությամբ, կոմունիստների, արտադրության առաջավորների անմիջական ու ակտիվ մասնակցությամբ: Այսպիսի մոտեցումը թույլ է տալիս պարտավորությունները բխեցնել տնտեսության կամ ձեռնարկության ռեալ հնարավորություններից, հաշվի առնել առկա և ենթադրվող ռեզերվները, լավ նախադրյալներ ստեղծել դրանց կատարման համար: Այսպես, երբ Արագածի այգեգործական սովխոզում մշակում էին հնգամյակի որոշիչ տարվա պարտավորությունները, կոմունիստներն ու առաջավոր այգեգործները մի շարք արժեքավոր

առաջարկություններ արեցին։ Նրանք, առաջին հերթին, գտան, որ խաղողի ու պտղի արտադրության ավելացման լավագույն հնարավորություն է բոլոր բրիգադներում հեկտարի բերքատվությունը առաջավորների ձեռք բերած մակարդակին հասցնելը։ Օրինակ, եթե առանձին բրիգադներում 1973 թ. խաղողի միջին բերքատվությունը կազմել էր 49 ցենտներ, սովխոզում՝ 61, ապա Ս. Գաբրիելյանի ղեկավարած № 7 բրիգադայում այն հասավ 81,3 ցենտների։ Կամ Լ. Հարթենյանի ղեկավարած բրիգադան յուրաքանչյուր հեկտարից հավաքեց 191 ցենտներ խնձոր։ Եթե սովխոզի բրիգադները հասնեին այդ մակարդակին, ապա լրացուցիչ կստացվեր 850 տոննա խաղող և 900 տոննա պտուղ։ Այդ հնարավորությունը լրիվ օգտագործելու վճռականությամբ արագածցիները պարտավորվեցին հնգամյակի որոշիչ տարում արտադրել 2870 տոննա խաղող և 2300 տոննա պտուղ, կամ հնգամյա պլանից համապատասխանաբար 570 և 600 տոննայով ավելի։

Լավ օրինակը վարակիչ է, այն ոգևորման աղբյուր է արտադրության մարդկանց համար։ Նրանք ազնիվ մղումով ձգտում են հավասարվել առաջավորներին, նմանվել նրանց։ Այդպիսի օրինակ է ծառայում կթվորուհի Գ. Ներսիսյանը, որն իր խնամած յուրաքանչյուր կովից անցյալ տարի ստացավ 2750 կգ կաթ։ Առաջավորի այդ բնագիծն այս տարի նվաճելու հաստատակամություն է ցուցաբերում կաթնապրանքային ֆերմայի կոլեկտիվի յուրաքանչյուր անդամ։ Կոլեկտիվը պարտավորվել է արտադրել 2200 ցենտներ կաթ, որը հնգամյակի վերջին տարվա համար նախատեսվածից ավելի է 400 ցենտներով։

Ստանձնած պարտավորություններն անթերի կատարելու լավ ավանդույթներ ունեն սովխոզի մարդիկ։ Նրանք այժմվանից արդեն ամուր նախադրյալներ են ստեղծում հետագա առաջընթացի, իրենց խոստումը գործի վերածելու համար. այգեգործներն ավարտել են պտղատու ծառերի էտ-ձևավորումը, պարարտացումը, անասնապահները՝ գերակատարել պետությանը կաթ ու միս վաճառելու առաջին եռամսյակի պլանները։ Արագածի սովխոզի օրինակը եզակի չէ։ Հնգամյակի որոշիչ տարում բարձր պարտավորություններ են ստանձնել նաև Սուսերի, Գառնահովտի, Ակունքի կոլտնտեսությունների, Ալագյազի ոչխարաբուծական սովխոզի անասնապահները, Կաքավաձորի, Վերին Բազմաբերդի, Դավթաշենի, Աշնակի ծխախոտագործները, Արագածի պեռլիտագործները, Դարալիկի խարամագործները, Մաստարայի ժամագործները, պանրագործները, էլեկտրակենցաղային սարքավորումներ արտադրողները, տրիկոտաժագործները։

Առաջավոր տնտեսությունների ու ձեռնարկությունների բարձր բնագծերը ռեալ հնարավորություն ընձեռեցին լարված պարտավորություններ ընդունելու նաև շրջանի համար։ Գյուղատնտեսության բնագավառի աշխատողները պարտավորվել են, արտադրության հնարավորությունների ու ռեզերվների լրիվ օգտագործման ուղիով, մինչև նոյեմբերի 29-ը կատարել պետությանը հացահատիկ, խաղող, պտուղ, ծխախոտ, միս, կաթ, բուրդ և ձու վաճառելու տարեկան առաջադրանքները։ Հնգամյակի այս որոշիչ տարում մեր շրջանը հայրենիքին պետք է տա 1700 տոննա հացահատիկ, 10.000 տոննա խաղող, 4500 տոննա պտուղ, 315 տոննա ծխախոտ, 2150 տոննա միս, 3290 տոննա կաթ, 305 տոննա բուրդ և 1 մլն 50 հազար հատ ձու։ Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները խոստացել են տարվա արտադրական ծրագիրը կատարել մինչև դեկտեմբերի 20-ը։



Ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարումը, առաջին հերթին, պայմանավորված է այն բանով, թե յուրաքանչյուր կոլտնտեսական, բանվոր, մասնագետ ու մտավորական ինչպիսի գիտակցությամբ է վերաբերվում իր գործին, որչափով է անձնական պատասխանատվություն զգում պետական և աշխատանքային կարգապահության ամրապնդման համար։ Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները, արտադրության ռեզերվներն ու հնարավորությունները լրիվ կյանքի կոչելուն զուգընթաց, առանձնակի ուշադրություն են նվիրում հենց այդ հարցին։ Քաղաքական և կազմակերպական ամբողջ աշխատանքի նպատակը մենք համարում ենք, ո՛չ միայն արտադրության առաջավորների խրախուսումը, այլ նաև ետ մնացողների, իրենց ստանձնած պարտավորությունների կատարման գործում թերացողների նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտի ստեղծումը։ Պրոպագանդիստներն ու ագիտատորները զրույցներում պատմում են առաջավորների արտադրական փորձի ու ձեռք բերած հաջողությունների մասին, մյուսներին կոչ անում՝ աշխատել իրենց գործընկերոջ օրինակով։

Խոսելով սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերի մասին՝ իր ժամանակին Վ. Ի. Լենինը խորհուրդ էր տալիս մրցողների համար ստեղծել պարտավորությունները կատարելու լավ պայմաններ։ Այդ արժեքավոր խորհուրդը մեզ համար պետք է գործողության ուղեցույց լինի։ Այսօր կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է օգնել արտադրական կոլեկտիվներին՝ որոնելու և գտնելու նախանշած բնագծերը նվաճելու նոր ուղիներ ու միջոցներ։ Այս համակարգում վճռական նշանակություն ունի եղած հնարավորությունների ու ռեզերվների ճիշտ ու խելացի օգտագործումը։ Ուստի, կուսշրջկոմը, գյուղատնտեսության շրջանային օրգաններն ու սկզբնական կուսկազմակերպություններն այս տարի մի շարք միջոցառումներ են մշակել հնարավորություններն ու ռեզերվները գործի դնելու, առաջավորների փորձն արմատավորելու համար։

Տարիներ ի վեր մեր շրջանի կուսակցական ու տնտեսական օրգաններին ամենից ավելի մտահոգել է սեփական արտադրության կերի բազայի ամրապնդումը, որը անասնապահական մթերքների արտադրության ավելացման ոչ միայն վճռական պայմանն է, այլև ռեզերվների հարուստ աղբյուր։ Ճիշտ է, վերջին տարիներին այդ ասպարեզում զգալի աշխատանք է կատարվել, բայց ձեռք բերված մակարդակը չի բավարարում այսօրվա պահանջը։ Ահա թե ինչու վճռել ենք այս տարի զգալիորեն ընդարձակել բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը, բարձրացնել բերքատվությունը։ Կերաբույսերի արտադրությունն ավելացվելու է ինչպես Թալինի ջրանցքից ոռոգվող, այնպես էլ տնտեսություններում վերջին տարիներին չօգտագործվող հողերում ցանք կատարելու ուղիով։ Մշակվող խոտադաշտերի բերքատվությունը բարձրացնելու համար կոլտնտեսություններն ու սովխոզները որոշեցին սնուցել ու պարարտացնել բոլոր դաշտերը։ Այդ նպատակով փետրվարի 15-ից մինչև մարտի 15-ը հայտարարվեց աշնանացանի ու խոտադաշտերի սնուցման և գարնանացանի ու ծխախոտի համար առանձնացված հողերի պարարտացման հարվածային միամսյակ, որի ընթացքում սնուցվեց 2500 հեկտար ցանքատարածություն և դաշտ փոխադրվեց 16.000 տոննա տեղական պարարտանյութ։

Մսի արտադրությունն ավելացնելու նպատակով Ակունքի, Սուսերի և ուրիշ կոլտնտեսություններ արմատավորել են մատղաշների ինտենսիվ բտման՝ Հրազդանի շրջանի Մեղրաձորի կոլտնտեսության անասնապահների փորձը։

*Արդյունքը դոհացուցիչ է. երկու կոլտնտեսություններն էլ դեռ հունվար ամսում կատարեցին պետությանը միս վաճառելու առաջին կիսամյակի պլանը։ Մսի արտադրության ավելացման հսկայական ռեզերվներ պարունակող այդ մեթոդն այժմ էլ հաջողությամբ կիրառվում է։*

*Այգեգործական տնտեսությունների կոլեկտիվները պարտավորվել են բոլոր այգիները դարձնել լիարժեք, որը խաղողի արտադրության ավելացման մեծ ռեզերվ է։ Այդպիսի նախաձեռնությամբ հանդես են եկել Արագածի, Արտենիի, Քարակերտի և Դարալիկի այգեգործական սովխոզների բրիգադավարներ Մ. Գաբրիելյանը, Մ. Մարդոյանը, Վ. Հարթենյանը, Ի. Մխիթարյանը, Խ. Խաչատրյանը, Ա. Պողոսյանը, Ե. Սարգսյանը և ուրիշներ։*

*Այս տարի 100 ոչխարից 90—100 գառ ստանալու և պահպանելու համար են պայքարում Ալագյազի ոչխարաբուծական սովխոզի հովիվ-բրիգադավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Մ. Առաքելյանը, Գառնահովտի կոլտնտեսության հովիվ, Լենինի շքանշանակիր Ա. Մալխասյանը, Ակունքի, Վերին Բազմաբերդի և մյուս տնտեսությունների ոչխարաբույծները։ Ինչ խոսք, այդ բնագծերը կարելի է նվաճել առկա հնարավորությունների ու ռեզերվների արդյունավետ օգտագործմամբ։*

*Սակայն շրջանում դեռևս կան տնտեսություններ, որոնք տևականորեն ետ են մնում, կուսակցական-կազմակերպական և դաստիարակչական գործունեության ցածր մակարդակի պատճառով արտադրության մարդիկ թերանում են իրենց պարտականությունների կատարման մեջ, չեն մոբիլիզացնում իրենց ուժերն ու եռանդը։ Այդ տնտեսություններում վատ են օգտագործվում արտադրության արդյունավետության բարձրացման հնարավորություններն ու ռեզերվները։ Այդ թերությունները վերացնելու նպատակով վերջերս կուսշրջկոմը կազմակերպական մի շարք միջոցներ ձեռնարկեց Արեգի, Սորիկի և Ցամաքասարի կոլտնտեսությունների ղեկավարության նկատմամբ, որովհետև այդ տնտեսություններում թույլ հիմքերի վրա էր աշխատանքի կազմակերպումը, պատշաճ ուշադրություն չէր նվիրվում սոցիալիստական մրցության գործին։ Կուսշրջկոմը այդ տնտեսությունների վարչությունների և սկզբնական կուսկազմակերպությունների հետ մշակեց գործնական միջոցառումներ, որոնց իրականացմամբ հնարավոր կլինի հաղթահարել նրանց ետ մնալը, ապահովել որոշիչ տարվա առաջադրանքների ու սոցպարտավորությունների կատարումը։*

*Հանրահայտ ճշմարտություն է, որ սոցիալիստական մրցությունը ներգործում է հանրային արտադրության զարգացման և մարդկանց աշխատանքային դաստիարակության վրա միայն այն ժամանակ, երբ կուսկազմակերպությունները մշտապես ու մոտիկից են զբաղվում այդ գործով։ Սակայն այսօր պետք է կշտամբել Հակկոյի, Կաքավաձորի, Ագարակի և Գետափի սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններին ու դիրեկցիաներին, այն բանի համար, որ ձևականորեն են մոտենում սոցիալիստական մրցությանը, վատ են զբաղվում դրա կազմակերպման հարցերով։ Կուսշրջկոմն ուժեղացրել է այդ կազմակերպություններին ցույց տրվող օգնությունը։*

*Մեր շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած համակողմանի աշխատանքը, անշուշտ, ամենուրեք նոր թափ կհաղորդի սոցիալիստական մրցությանը, այն կդառնա ավելի գործարար ու արդյունավետ, իններորդ հնգամյակի որոշիչ տարվա բնագծերի նվաճման, մեր բոլոր հաջողությունների վճռական պայմանը։*

---

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

★

## ՏԱՂԱՆԴԱՎՈՐ ԳԻՏՆԱԿԱՆՆ ՈՒ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՐԵՎԵԼԻ ԳՈՐԾԻՉԸ

★

**(Ակադեմիկ Ա. Ա. Արզումանյանի ծննդյան 70-ամյակի առթիվ)**

I

Եթե դժնի մահը մեր կոհորտայից չկորզեր **Անուշավան Արզումանյանին,** այժմ նա կլիներ 70 տարեկան: Անուշավանն աշխարհ է եկել 1904 թ. փետրվարի 4-ին, Ղափանի ժայռաբլուրին թիկնած Կավարտ գյուղում: Հայրը՝ Աղաթոն Արզումանյանը, քաջ գիտենալով կրթության արժույթը, ոչինչ չէր խնայում զավակների ուսումնառության համար: Ուստի, բնական էր, որ ծնողներն ընդառաջեցին վեցամյա Անուշավանի դպրոց գնալու թախանձանքին: Երազի նման թռած երկու տարիներին թե՛ գյուղի ուսուցիչը և թե պատանու ծնողները համոզվեցին, որ այս մշտաժպիտ պատանին, հակառակ իր տարիքին, անհամեմատ լուրջ է ու խոհուն, սրամիտ և կարծեք՝ վաղահաս: Ուրեմն, պատանուն սիստեմատիկ կրթություն էր հարկավոր, որը կարող էր ստանալ վաղուց համբավ հանած Շուշիի ռեալական դպրոցում:

Մինչև 1918 թվականը ուսանելով այստեղ, Անուշավանը շոշափելի գիտելիքներ ձեռք բերեց աշխարհի լավի ու վատի, ճշմարտության ու մոլորության, կյանքի ու մահվան էական երևույթների վերաբերյալ:

Սովետական կարգերի հաստատմամբ բարենպաստ նախադրյալներ ստեղծվեցին, որպեսզի հին աշխարհը հեղափոխականորեն վերափոխել տենչացող Անուշավանի սերունդն անհապաղ փարեր (1920 թ.) նորաստեղծ կոմերիտմիության բոլշևիկյան դրոշին:

Հիրավի, Ա. Արզումանյանը երիտասարդական անձնազոհությամբ նվիրվելով կոմերիտմիությանը, դարձավ Հայաստանում նրա հիմնադիրներից մեկը: Նկատելով երիտասարդի քաղաքական մտածողության ակներև հակում-

Նա, անշուշտ, քաջ գիտեր ակադեմիկ Ի. Պ. Պավլովի ասույթը, թե՝ գիտությունը մարդուց վերցնում է նրա ողջ կյանքը: Այն պահանջում է բուռն կիրք և վիթխարի լարվածություն: Երկու կյանքն անգամ չի բավի գիտությանը: Այս իմանալով հանդերձ, նա ուժերի գերագույն լարումով և կարճ ժամանակամիջոցում ցուցահանեց վերոհիշյալ գիտական հաստատության հույժ օգտավետությունը կոմունիզմի շինարարության վեհ գործում: Բարձր գնահատելով նրա ջանքերը՝ 1958 թ. նրան ընտրեցին ՍՍՀՄ ԳԱ թղթակից-անդամ, իսկ դրանից հինգ տարի անց՝ ակադեմիկ, տնտեսագիտության բաժանմունքի ակադեմիկ-քարտուղար և ԳԱ նախագահության անդամ:

Անուշավան Աղաթոնի Արզումանյանի գրչին պատկանող ավելի քան հարյուր գիտական աշխատությունների ողն ու ծուծն իր ժամանակի մեծագույն հասարակական պրոբլեմի՝ իմպերիալիզմի ու սոցիալիզմի, երկու սիստեմների ներհակությունների համակողմանի ու խոր վերլուծությունն է: Այդ իսկ ոգով են գրված նրա անմիջական ղեկավարությամբ ու խմբագրությամբ լույս տեսած վերոհիշյալ ինստիտուտի աշխատակիցների բազմաբնույթ ուսումնասիրությունները: Համաշխարհային իմպերիալիզմի խորացող ճգնաժամի նորանոր երևույթները և դրանց յուրահատկությունները, պետական կապիտալիզմի և մոնոպոլիաների սերտաճման ձևերն ու եղանակները, միջազգային բանվոր դասակարգի մղած պայքարի բուն ընթացքը, արդի կապիտալիզմի կառուցվածքի ներքին մեխանիզմի սոցիալական զսպանակները, երկու համակարգերի տնտեսական մրցակցությունը, համաշխարհային հեղափոխական պրոցեսը և մոտալուտ գալիքը, ազգային-ազատագրական շարժումների ուժգնացման և իմպերիալիզմի դիրքերի թուլացման պրոցեսները— ահա այն հպանցիկ թվարկումը հարցերի, որոնք հանդիսացել են գիտնականի և նրա աշխատակիցների բեղմնավոր հետազոտության առարկան:

Անդուլ մասնակցելով կոմունիզմի կառուցման բուն ընթացքին, ակադեմիկ Արզումանյանը հանդես է եկել մամուլի օրգաններում տնտեսական օրենքների արծարծման և բացահայտման իր արժեքավոր ու ճշմարտացի մշակումներով: Ահա թե ինչու նրա քանհինգ ուսումնասիրությունները՝ նվիրված վերոհիշյալ պրոբլեմներին, լույս են տեսել ո՛չ միայն ռուսերեն, այլև արտասահմանյան գիտական մամուլի պարբերականներում (տե՛ս Экономические проблемы общественного развития. Избранные труды, М., изд. «Наука». 1968 г., стр. 7—8):

Մամուլի օրգաններում հանդես գալով կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի թշվառությունը վերաբերող մի հոդվածաշարով, նա լուրջ ավանդ մուծեց մարքսիզմ-լենինիզմի տեսության զարգացման գանձարանը: Ագրարային հարցին, լենինյան կոոպերատիվ պլանի հանգուցային պրոբլեմներին վերաբերող նրա աշխատությունները խիստ ուշագրավ են: Նրա տեսական-տնտեսագիտական ելույթները «Պրավդա»-ում, «Կոմունիստ»-ում և այլ օրգաններում՝ նվիրված սովետական տնտեսության հրատապ պրոբլեմներին, զգալիորեն նպաստեցին սովետական տնտեսագիտության առաջխաղացին:

Ընդարձակ էր ու համապարփակ բեղուն գիտնական, հասարակական ու պետական ականավոր գործիչ, խմբագիր ու հրապարակախոս, մարքսիզմ-լենինիզմի անաղարտության առաջամարտիկ Անուշավան Արզումանյանի գործունեության ոլորտը: Կուսակցական մոտեցում հանդես բերելով գիտահետազոտական բոլոր հարցերում՝ նա իր անձնական գործելակերպով երիտասարդներին ուսուցում էր մարքսիզմ-լենինիզմի խնդիրների մշակումը սերտորեն շաղկապել գործնական կյանքի կենսաբուխ պահանջներին, ժողովրդական տնտեսության զարգացման և ՍՍՀՄ արտաքին քաղաքականության առջև ծառացած կենսաթրթիռ հարցերի քննարկմանը: Գիտության ու պրակտիկայի վիթխարի պրոցեսներից բխող բարդ պրոբլեմների համարձակ հարցադրումամբ ու յուրակերպ լուծմամբ, նա օրինակ էր ծառայում իր բնագավառի շատ հետազոտողների համար:

Բազմաթիվ էջեր են պետք՝ լուսաբանելու նրա հարուստ ու ծավալուն



գործունեությունն ի փառս սովետական հայրենիքի: Բարձր գնահատելով այդ ամենը, կուսակցությունը և սովետական կառավարությունը նրան պարգևատրել են Լենինի, Կարմիր դրոշի, Կարմիր աստղի, Աշխատանքային կարմիր դրոշի, Հայրենական պատերազմի առաջին աստիճանի, «Պատվո նշան» շքանշաններով ու շատ մեդալներով:

## II

Ակադեմիկ Ա. Արզումանյանի հիմնարար հետազոտություններից է՝ **Ագրարային ճգնաժամը Ռուսաստանում XIX դարի 80—90-ական թվականներին:** Հայտնի է, որ լենինյանները Ռուսաստանում տևական ու հետևողական պայքար են մղել նարոդնիկական և լիբերալ-բուրժուական այն հեղինակների դեմ, ովքեր ագրարային հարցում փաստորեն հանդես էին գալիս կալվածատիրական, լատիֆունդիական նախառեֆորմյան գյուղատնտեսության վիճակի անտրոհելիության օգտին: Քննադատելով հին կարգերի ջատագովներին՝ Ա. Արզումանյանը եզրակացնում է. միայն մարքսիստները, ագրարային ճգնաժամերի մարքսիստական-լենինյան տեսությամբ, հատկապես Լենինի աշխատությունների հիման վրա, կարողացան գիտականորեն լուսաբանել ագրարային ճգնաժամի պատմական-կոնկրետ ընթացքը Ռուսաստանում XIX դարի վերջին: 1861 թ. ռեֆորմից հետո էլ պահպանվեցին ճորտատիրական լատիֆունդիաները և գյուղացիության կեղեքման կապալային եղանակները. դրանք XIX դարվերջին միահյուսվեցին գերարտադրության կապիտալիստական ագրարային ճգնաժամի հետ: Սա ապացույց էր, որ հակառակ նարոդնիկ տեսաբանների, այնուամենայնիվ, ռուսական գյուղում կապիտալիզմն արմատավորվում էր: Թեև, ընդգծում է նա, Ռուսաստանում այդ ճգնաժամը կատարվում էր ավելի ծանր պայմաններում և ավերիչ հետևանքներով, քան արևմտաեվրոպական երկրներում:

Լենինն այդ ճգնաժամը բնորոշել է հետևյալ կերպ. «Արդի գյուղատնտեսական ճգնաժամը կապիտալիստական է: Կապիտալիստական բոլոր ճգնաժամերի պես այն սնանկացնում է մի վայրի, մի երկրի, հողագործության մի ճյուղի ֆերմերներին ու տնտեսատերերին, միաժամանակ հսկայական չափերով խթանում է կապիտալիզմի զարգացումն այլ վայրերում, մի այլ երկրում, հողագործության այլ ճյուղերում» (ПСС, т. 3, стр. 224):

Սա էր, որ չէին ըմբռնում նարոդնիկները: Մինչդեռ, ըստ Լենինի, շեշտել է ակադեմիկ Արզումանյանը, ագրարային ճգնաժամը գերարտադրության տնտեսական ճգնաժամ է՝ այդտեղից բխող բոլոր հետևանքներով: Ուստի, ասում է նա, ագրարային ճգնաժամի բնույթը սահմանելիս, հարկավոր է ելնել ոչ թե գյուղատնտեսության զարգացման մակարդակից, այլ նրանում իշխող օրինաչափություններից: Իսկ ո՞վ կարող է ժխտել Ռուսաստանի հետռեֆորմյան գյուղատնտեսության զարգացման կապիտալիստական բնույթը:

Սակայն մարքսիստները չէին կարող սահմանափակվել կապիտալիզմի զարգացման վերոհիշյալ հանգամանքի լոկ ընդհանուր հավաստիագրությամբ,— կարդում ենք նրա աշխատության մեջ: Անհրաժեշտ էր կոնկրետ պատասխանել՝ Ռուսաստանի գյուղատնտեսությունը զարգանալու է պրուսակա՞ն, թե՞ ամերիկյան հունով: Կալվածատերերը կողմնակից էին առաջինին, իսկ գյուղացիները՝ երկրորդին: Սա ապացույց էր, որ 1861 թ. ռեֆորմը Ռուսաստանի գորդյան հանգույցը չհատեց: Անցյալ դարի հետռեֆորմյան Ռուսաստանում հասունացող ճգնաժամը, նշում է հեղինակը, դա ողջ հասարակական սիստեմի թե՛ քաղաքական, թե՛ տնտեսական ճգնաժամ էր, որը պետք է վերաճեր ու իրոք վերաճեց հեղափոխական ճգնաժամի: Ահա թե որտեղ պետք է որոնել 1905 թ. բուրժուա-դեմոկրատական հեղափոխության սոցիալ-տնտեսական շարժառիթները: Ահա թե ինչու Ռուսաստանում ագրարային հարցը վերածվեց «բուրժուական զարգացման **ազգային** հարցի» (В. И. Ленин, ПСС, т. 47, стр. 229):

Պատմական այս կոնկրետ իրողության վերլուծումից հետո, ակադեմիկ Արզումանյանն ամփոփում է. «...այդ երկու ճգնաժամերը պետք է ներհյու-

վեին իրար, և գերարտադրության ճգնաժամը պետք է որ ավելի սրեր ընդհանուր ագրարային ճգնաժամը, Ռուսաստանի հասարակական ողջ սիստեմի ճգնաժամը» (նշվ. աշխ., էջ 18)։ Այնուհետև նա գրում է, որ բոլշևիկները, պաշտպանելով գյուղատնտեսության ամերիկյան առաջավոր ուղին (սակայն բացառելով «ամերիկյան» ագրարային կապիտալիզմը ռուսաստանյան պայմաններում), առաջադրեցին հողի ազգայնացումը, որը հնարավոր էր միայն հեղափոխության հաղթությամբ։ Գյուղացիության դաշինքը պրոլետարիատի հետ համարելով այդ հաղթանակի անհրաժեշտ նախապայմանը՝ լենինյանները պնդում էին, որ հարցի արմատական լուծումը պահանջում է բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը վերածել սոցիալիստականի (տե՛ս նույն տեղը, էջ 18)։

Պատմական արժեքավոր նյութերի համակողմանի ու խոր վերլուծությամբ, առաջնորդվելով լենինյան տեսական դրույթներով՝ ակադեմիկ Ա. Արզումանյանը բացահայտում է հետռեֆորմյան Ռուսաստանի կապիտալիստական գյուղատնտեսությանը ներհատուկ գերարտադրության ճգնաժամի բոլոր շարժառիթներն ու հետևանքները։

III

**Երկու սիստեմների պայքարը և համաշխարհային զարգացումը** խորագրով ծանրակշիռ հետազոտությունն ակադեմիկ Արզումանյանի գրական ժառանգության ստվարածավալ ու հիմնարար երկն է։ Այս աշխատության էջերում, սոցիալ-տնտեսական, քաղաքական ու վիճակագրական-վավերագրական նորագույն հարուստ նյութերի վերլուծությամբ, հեղինակը հետազոտել է հետևյալ հանգուցային պրոբլեմները. Արդի դարաշրջանը և համաշխարհային հեղափոխական ճգնաժամը։ Իմպերիալիզմը որպես մարդկության զարգացման գլխավոր արգելք։ Բանվոր դասակարգը որպես արդիականության վճռող ուժ։ Ազգային-ազատագրական հեղափոխությունը։ Ժողովուրդների պայքարը հանուն խաղաղության և խաղաղ գոյակցության։ Բուրժուական տնտեսագիտական թեորիաների քննադատությունը։

Ահա այն ընդարձակ տեսադաշտը, որտեղ ի մի են ամփոփված ակադեմիկի սթափ մտքի հույժ արժեքավոր սևեռումները։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, կարդում ենք հիշյալ երկում, ողջ մարդկության կյանքում բացեց նոր դարագլուխ՝ կոմունիզմի համաշխարհային հաղթության դարագլուխը։ Այն ազդարարեց, որ սկսվել է համաշխարհային սոցիալիստական հեղափոխության դարաշրջանը, որը մարդկությանը, կապիտալիզմից առավել բարձր հասարակարգին՝ սոցիալիզմին անցնելու անհրաժեշտ օբյեկտիվ ու սուբյեկտիվ նախադրյալներ է ստեղծել։ Սոցիալիստական այս հեղափոխությունը նախորդներից տարբերվում է նրանով, որ մարդկությանն ազատագրում է ամեն կարգի կեղեքումներից։ Կյանքն ապացուցել է, որ համաշխարհային սոցիալիստական հեղափոխության ընթացքն անկասելի օրենք է։ Հետևաբար, կապիտալիզմի ու սոցիալիզմի սիստեմների գոյակցությունն ու պայքարը մեր ժամանակի պատմության առանցքն են։ «Կապիտալիզմի ու նրա հետքերի ոչնչացումը, կոմունիստական հասարակարգի հիմնարարումն այժմ սկսված համաշխարհային պատմության դարաշրջանի բովանդակությունն է» (В. И. Ленин, ПСС, т. 41, стр. 425)։

Վկայակոչելով առաջնորդի սույն դարարկազմիկ թեզը, ակադեմիկ Ա. Արզումանյանը նշում է. բնութագրելով այդ դարաշրջանը, Լենինն արդեն այն կոչում է ոչ թե իմպերիալիզմի, այլ սկսված համաշխարհային սոցիալիստական հեղափոխության դարաշրջան։ Սակայն, անհրաժեշտ է շեշտել, որ մեր օրերում սոցիալիզմն է դառնում համաշխարհային զարգացման որոշիչ գործոնը։

Այսպիսով, համաշխարհային սոցիալիստական սիստեմը միջազգային հեղափոխական պրոլետարիատի հիմնական ու պատմական նվաճումն է։ Դա է սոցիալիստական հեղափոխության հետագա հաղթական առաջընթացի գլխավոր հիմքը (տե՛ս նշվ. աշխ., էջ 205)։ Չնայած այն հանգամանքին, որ



իբրև հասարակարգ, կապիտալիզմը վաղուց է իրեն սպառել, գրում է Ա. Արզումանյանը, այսօր դեռ շարունակում է հենվել բռնության, բուրժուական գաղափարաբանության տիրապետման և սովորույթների ուժի վրա։ Նրա գոյությունը խարսխված է ԱՄՆ-ի ինդուստրիալ հզորության, համաշխարհային արտադրության ոլորտում ունեցած գերակշռության և կապիտալիստական զարգացած որոշ երկրներում աշխատանքի արտադրողականության բարձր մակարդակի առկայության ու բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող բարձր արտադրության ու սպառման իրողության վրա։ Տնտեսական այս գործոններին կոթնած՝ իմպերիալիզմն իր քաղաքագետների ու իդեոլոգների, նըմանապես և ռեֆորմիստ ու ռևիզիոնիստ սպասավորների օգնությամբ, բռնանում է, խաբում աշխատավոր զանգվածներին։

Այժմ անհրաժեշտ է, որ սոցիալիստական սիստեմը գերազանցի կապիտալիզմին արտադրության մարզում, համաշխարհային արտադրության ոլորտում, գերազանցի կապիտալիզմի զարգացած երկրներին աշխատանքի արտադրողականության ոլորտում, ապահովի մեկ շնչին ընկնող բարձր արտադրամակարդակ և սպառում։ Երբ կենսագործվեն մեր այս խնդիրները «իմպերիալիզմը կզրկվի տնտեսական այն հենարաններից, որոնց օգնությամբ բռնության պետական մեքենան տակավին շատ երկրներում պահպանում է կապիտալիստական արտադրահարաբերությունները» (նույն տեղը, էջ 216)։

Այնուհետև Արզումանյանը շեշտում է, որ այժմ Սովետական Միությունն ու ողջ սոցիալիստական սիստեմը հսկայաքայլ առաջ են ընթանում. այստեղ ևս նրա հաջողություններն անկասելի են։ Արտադրության տեխնիկական մակարդակի, աշխատանքի արտադրողականության և աշխատավորության կենսամակարդակի բարձրացման ոլորտներում մեր նվաճումները վերընթաց են։

Սովետական հայրենիքի իններորդ հնգամյակի անցած ավելի քան երեք տարիների հասումներն այդ են ապացուցում։

Ակադեմիկ Արզումանյանը, համակողմանիորեն վերլուծելով կապիտալիզմի արդի պետական-մոնոպոլիստական ոլորտի բարդ կառուցվածքը, նշում է, որ արտադրության համակենտրոնացման և կապիտալի կենտրոնացման օրենքն այժմ զգալի չափով կենսագործվում է պետական-մոնոպոլիստական մեխանիզմի միջոցով։ Բայց այս դեպքում նորն այն է, որ պետությունն անմիջականորեն միջամտում է արտադրության, շրջանառության և բաշխման պրոցեսներին։ Իհարկե, այս դեպքում գործ ունենք միևնույն իմպերիալիզմի հետ, բայց էականորեն փոխվել է դրա տնտեսական մեխանիզմը, որի տնտեսական քաղաքականությունը բխում է ողջ մոնոպոլիստական բուրժուազիայի շահերից։ Այդ քաղաքականությունն այլևս չի ելնում միայն առանձին մոնոպոլիաների նեղ ձգտումներից և մերձավոր շահերից։ Այն գնալով ավելի մեծ չափերով է արտացոլում մոնոպոլիստական կապիտալի տևական շահերը, նրա տնտեսական ու քաղաքական ստրատեգիան, կապիտալիզմի տնտեսական մեխանիզմի փոփոխությունը» (նույն տեղը, էջ 253)։

Ըստ որում, ակադեմիկ Ա. Արզումանյանը, բազմակողմանիորեն զննելով արդի կապիտալիզմի նեխման պրոցեսը, վկայակոչում է ՍՄԿԿ ծրագրի այն հետևությունը, որի համաձայն «Պետական մոնոպոլիստական կապիտալիզմի դիալեկտիկան այնպիսին է, որ կապիտալիստական սիստեմի ամրապնդման փոխարեն, որն ակնկալում է բուրժուազիան, այն ավելի է սրում կապիտալիզմի հակասությունները, նրան խարխլում հիմնովին» (նույն տեղը, էջ 275)։

Հետևաբար, փաստերը վկայում են, որ արդի կապիտալիզմին հատուկ է հակասությունների հետագա սրումը, որը հարուցում է տնտեսական ու քաղաքական խոր ճգնաժամեր, որոնք գնալով ավելի են խարխլում մասնավոր սեփականության կապիտալիստական արտադրաեղանակի բուն հիմքերը։

Անտարակույս, դասակարգային մարտերը թուլացնում են իմպերիալիզմի հիմքերը։ Միջազգային նշանակություն ունեցող քաղաքական ճգնաժամերը կոփում են հեղափոխական պրոլետարիատին և աշխատավորական զանգ-

վածներին՝ հակաիմպերիալիստական ոգով: Գործադուլների, քաղաքական ցույցերի և մասսայական բողոքների ալիքը գնալով բարձրանում է: Իմպերիալիստական ռեակցիայի հարվածներին աշխատավորները պատասխանում են ավելի զորեղ հարվածներով: Անգլիական ածխահատների ընթացիկ տարվա հնկայածավալ գործադուլն ուժգին ցնցեց Մեծ Բրիտանիայի «խաղաղ» գոյավիճակը, մի իրադարձություն, որը որոշիչ դեր խաղաց պահպանողականների կառավարության անկման գործում: Հարյուր հազարների ու միլիոնների անդուլ պայքարը և շատ վայրերում զինված կռիվները հանուն դեմոկրատիայի, սոցիալիզմի, ազգային ինքնորոշման, ընդդեմ ֆաշիզմի ու ռասիզմի, նեոգաղութարարության, ավելի են խարխլում իմպերիալիզմի արդեն սասանված հիմքերը:

Համաշխարհային կոմունիստական շարժումը վաղուց է հաստատել, որ կապիտալիզմը վերացնելու և սոցիալիզմի հաղթությունն ապահովելու համար կա միայն հեղափոխական ուղի, թեև այդ հեղափոխությունը կարող է հաղթել խաղաղ, ոչ խաղաղ, զինված եղանակով, որի համար միշտ պատրաստ պետք է լինի բանվոր դասակարգը (նույն տեղը, էջ 381):

Պատերազմի վտանգը բխում է իմպերիալիզմին հատուկ բնությունից, գրում է ակադեմիկ Ա. Արզումանյանը: Իր մայրամուտին այն ավելի ագրեսիվ է դարձել: Մեր դարաշրջանում մարդկությանն սպառնացող պատերազմական վտանգը գերազանցապես իմպերիալիստական ուժերի սադրանքն է: Իմպերիալիստական շրջաններն են ձգտում միջպետական և միջազգային հարցերը լուծել բռնի ուժով: Այժմ, երբ խաղաղության հզոր գործոնը սոցիալիզմի աշխարհն է, հնարավոր է կանխել այդ վտանգը: «Աշխարհում առաջ են եկել ու գոյացել ուժեր, որոնք հնարավորություն ունեն սանձելու իմպերիալիզմը: Դրա համար անհրաժեշտ է վճռական պայքար պատերազմի վտանգի դեմ... պայքարը հանուն խաղաղության՝ դա ըստ էության պայքար է հանուն սոցիալիզմի: Կոմունիստները չէին արդարացնի իրենց վեհ կոչումը, եթե ամեն կերպ չպաշտպանեին խաղաղությունը, եթե պայքարի ամեն ձև չգործադրեին ջերմամիջուկային պատերազմը կանխելու համար» (նույն տեղը, էջ 448):

Առաջադրելով ու կիրառելով խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքները՝ կոմունիստներն անդուլ մաքառում են իմպերիալիզմի վայրագ դավերի դեմ: Իր բուն էությամբ, գրում է Ա. Արզումանյանը, կոմունիզմը խաղաղատենչ է: Հաղթության համար այն պատերազմի կարիք չունի: Ակներև է, որ խաղաղությունն ավելի է արագացնում մարդկության կոմունիստական առաջընթացը, ինչպես և նրա յուրաքանչյուր հաջողություն ուղի է հարթում հավիտենական խաղաղության համար: Ուստի, ըստ էության, խաղաղության համար մղվող պայքարը՝ դասակարգային պայքարի յուրակերպ դրսևորումն է (տե՛ս նույն տեղը, էջ 449):

## IV

Անգնահատելի ջանքեր է գործադրել Ա. Արզումանյանը սովետական տնտեսագիտական մտքի զարգացման ու կատարելագործման բնագավառում: Այդ է վկայում նրա ընտիր երկերի երրորդ մասում զետեղված **Տնտեսագիտության պրոբլեմները** հարուստ թեմատիկայի լուսաբանությունը:

Կուսակցությունը հետևողականորեն պայքարում է պլանավորման ասպարեզում նկատված դոգմատիզմի, հնացած ֆորմուլների ու կյանքի զարգացումից ետ մնացող պատկերացումների դեմ, գրում է նա: «ՍՄԿԿ Կենտկոմը ժողովրդական տնտեսության պլանավորումը վարում է այնպիսի հունով, որը հնարավորություն է ընձեռում լուծելու առաջ ընթացող կյանքի հարուցած կարևորագույն խնդիրները» (նույն տեղը, էջ 571): Այս առումով նա անդրադառնում է սովետական տնտեսագիտության առջև ծառացած մի շարք հարցերի:

Պլանավորման կարևորագույն պրոբլեմներից է հանրային սպառման, դրա ծավալի ճիշտ ըմբռնումը: Ուստի, չպետք է շփոթել **սպառում** և **սպառողական մոտեցումը** հասկացությունները: Սխալ է այն հայացքը, որով բացառվում է սոցիալիստական արտադրության նպատակը՝ սպառումը: Ոչնչացնելով շահույթի ձգտող բուրժուական արտադրաեղանակը, սոցիալիզմը նպատակ ունի ապահովելու իր քաղաքացիների բարեկեցությունը, նրանց ազատ ու բազմակողմանի զարգացումը: «Ժողովրդի բարօրության աճի մեջ է կուսակցությունը տեսնում իր ողջ գործունեության վեհ իմաստը: Իհարկե, դա բնավ չի նշանակում հրաժարվել կուտակումից, այլ հակառակը, ենթադրում է առավելագույն կուտակում, հանրային հարստության ավելացում և սպառումի աճ» (նույն տեղը, էջ 572):

Բարձր մակարդակով օգտավետ զրույց վարելով գիտնականների հետ, Ա. Արզումանյանը կոնկրետ վերլուծությամբ մատնանշում է կապիտալ շինարարության տնտեսական արդյունավետության բարձրացման ռեզերվները, բացահայտում արտադրության «Ա» և «Բ» խմբերի զարգացման համամասնությունների շուրջ եղած սխալ դոգմաները և ձաղկում «անձնական սպառման՝ իբրև վերարտադրության բաղկացուցիչ մասի, քամահրման» վնասակարությունը մեր առաջընթացի համար, եզրակացնելով, որ «այժմ կյանքը հրամայաբար թելադրում է «Ա» և «Բ» խմբերի տեմպերի հետագա մերձեցման խնդիրը»: Իրականում, սոցիալիստական հասարակության մեջ արտադրամիջոցների զարգացումը, վերջին հաշվով, կոչված է լիովին ապահովելու սպառման առարկաների հասարակական պահանջմունքները, հետևաբար և բարձրացնելու ժողովրդի բարօրությունը:

Մենք գտնվում ենք զարգացման այնպիսի վիճակում, գրում է Ա. Արզումանյանը, երբ հնարավոր է քիչ ծախսումներով շատ արդյունքներ ստանալ, որի համար անհրաժեշտ է նվազեցնել արդյունքի միավորի վրա կատարվող ծախսումը, որը կտա մեզ առավել հատուցում:

«Տնտեսագիտության միջուկը քաղաքատնտեսությունն է: Չկա ու չի կարող լինել տնտեսագիտություն առանց քաղաքատնտեսության: Որևէ այլ մոտեցում պետք է մերժվի»: Ընդ որում, Ա. Արզումանյանը կոչ է անում սովետական տնտեսագետներին սերտորեն դաշնակցել մաթեմատիկների հետ, նման միասնությամբ է միայն հնարավոր այժմ առաջ մղել տնտեսագիտությունը: Տնտեսագիտական հետազոտությունները հաջողությամբ չեն պսակվի, գրում է նա, եթե տնտեսական վերլուծության մեջ չկիրառվեն մաթեմատիկան ու ժամանակակից հաշվիչ տեխնիկան: Տնտեսագետների առջև ծառացած են բավականին բարդ և հետազոտման կարոտ պրոբլեմներ: Գնագոյացման մեթոդներն ու եղանակները, սոցիալիզմի տնտեսական օրենքների ներգործության ոլորտները պահանջում են քանակական և որակական վերլուծումներ: «Անհրաժեշտ է շարունակել ու խորացնել տնտեսական օրինաչափությունների, սոցիալիզմը կոմունիզմի ներաճման հետազոտությունները»,— գրում է Ա. Արզումանյանը: Կյանքն այժմ, հրամայաբար պահանջում է սովետական տնտեսագետներից բացահայտել տնտեսական օրենքների ներգործության մեխանիզմը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մասշտաբով, ցույց տալ այդ օրենքների ազդեցությունը սոցիալիստական պետությունների տնտեսական կապերի վրա և այդպիսով լուսավորել պրակտիկ աշխատողների ուղին, բարձրացնել նրանց տնտեսական աշխատանքի արդյունավետությունը (տե՛ս նույն տեղը, էջ 590):

Մոսկվայում ու Երևանում վերջերս նշված ակադեմիկ Ա. Արզումանյանի ծննդյան 70-ամյակը, սովետական տաղանդավոր գիտնականի հիշատակին մատուցած երախտագիտության արժանի տուրքն էր:

Մի առիթով Կ. Մարքսը գրել է. Եթե գիտնականը չի կամենում իջեցնել իր մակարդակը, երբևէ չպետք է դադարի հասարակական կյանքին ակտիվ մասնակցելուց և պանրի մեջ մտած առնետի պես չպետք է փակվի իր աշխատասենյակում կամ լաբորատորիայում, այլ խառնվի կյանքին, ժամանակիցների հասարակական ու քաղաքական պայքարին:

Տաղանդավոր գիտնական ու հասարակական երևելի գործիչ Անուշավան Արզումանյանը, հիրավի, այն գաղափարական մարտիկն էր, որն իր ողջ կյանքում պայքարեց հանուն լենինիզմի վեհ գաղափարների կենսագործման, ժողովրդի բարօրության ու երջանկության համար:

Ա. Գ. ԱԴՈՅԱՆ

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

# «ԼԱԶԵՐ—74»

**Ն. ԲԱՍՈՎ**
Սոցիալիստական աշխատանքի հերոս, Լենինյան և Նոբելյան մրցանակի դափնեկիր, ակադեմիկոս
**Օ. ԿՐՈԽԻՆ**
Լենինյան մրցանակի դափնեկիր, ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր

Ժամանակակից գիտության ու տեխնիկայի մեջ օպտիկայի լայն ներթափանցումն առընչվում է լազերի հայտնագործության շնորհիվ նշանակալի քանակությամբ էլեկտրամագնիսական էներգիայի կարգավորված ձևերի ստացման հնարավորության հետ: Լազերի բնույթի արագաթափ կատարելագործումն այսօր իսկ հիմք է տալիս ենթադրելու, որ ոչ հեռու ապագայում լուսային ճառագայթման կիրառման մասշտաբները քանակական ու որակական տեսակետից համադրելի կլինեն էներգիայի այլ ձևերի օգտագործման հետ:

Լույսի ալիքների նոր կյանքը կապված է լույսի էական տարբերակման հետ, որն էլեկտրամագնիսական տատանումների է ենթարկվում (գեներացվում) լազերի և սովորական այլ աղբյուրների միջոցով: Սառը լուսարձակիչներում կամ ջերմային լամպերում ատոմներն ամեն պահ լույսի նվազագույն մասնիկներ (քվանտաներ) են ճառագայթում՝ տարբեր ուղղություններով՝ ալիքների տարբեր երկարությամբ: Էլեկտրամագնիսական այդ տատանումները հիշեցնում են ձայնային աղմուկը: Իսկ լազերում ատոմները լույսը ճառագայթում են համաձայնեցված՝ միայն մեկ ուղղությամբ, միաժամանակ, նույն չափի ու ալիքի երկարությամբ (նման ճառագայթումն անվանվում է կոգերենտային): Լազերային ճառագայթման այդ յուրահատկությունն ընձեռեց որակական զարմանալի թռիչքի հնարավորություն:

Օրինակ, որքան էլ փոկուսող օպտիկական համակարգերը բարձր ու կատարելագործված լինեն, սկզբունքորեն անհնար է արևի ճառագայթները փոկուսավորել այնպես, որ լուսավորման դաշտի ջերմությունն անցնի վեց հազար աստիճանից— Արեգակի մակերևույթի ջերմաստիճանից: Լազերի ճառագայթումը սակայն, սկզբունքորեն կարելի է հավաքել մի փոքր մասնիկի վրա, որի տրամագիծը հավասար է լուսային ալիքի երկարությանը (այդ մասնիկի մակերեսը փոքր կլինի մեկ քառակուսի սանտիմետրի միլիոներորդ մասից) և կուտակել ցանկացած չափով էներգիա: Այդ լույսի ներգործմամբ կարող ենք հալեցնել կամ գոլորշիացնել ուզածդ դժվարահալ նյութը, նույնիսկ ջերմամիջուկային ռեակցիաներ առաջացնել, որոնք պահանջում են հարյուր միլիոնների հասնող ջերմաստիճան:

Կոգերենտայնությունը հնարավորություն է ընձեռում լուսային վիթխարի փնջերը գործնականորեն կրկնապատկելու, հետևապես, էներգիան վիթխարի տարածությունների վրա հաղորդելու: Հեռադիտակով դեպի Լուսինն ուղղված սուտակե լազերի ճառագայթը, կտրելով ավելի քան 400 հազար կիլոմետր, կարող է այնտեղ լուսավորել ոչ մեծ տարածություն:

Լազերային ճառագայթի զարմանահրաշ ուղղվածությունը, անշուշտ, վիթխարի դեր կըկատարի տիեզերական կապի ու լոկացիայի բնագավառում, հավանաբար այն կօգտագործվի նաև էներգիան հեռուները «տեղափոխելու» համար:

Լազերային լույսը հեշտ է կառավարել, մասնավորապես, այն կարելի է «սեղմել» ժամանակի մեջ և գերկարճ իմպուլսով հեռուներն ուղարկել մինչև վայրկյանի մեկ հարյուրմիլիարդերորդական մասի տևողությամբ. լույսը, որ սովորաբար պատկերացնում ենք ճառագայթների ձևով, այս դեպքում նման է մեկ միլիմետր հաստություն ունեցող վառ սկավառակի: Նման բռնկումների օգնությամբ մինչև Լուսնի մակերևույթն ընկած տարածությունը որոշվել է մոտ 10 սանտիմետրի ճշգրտությամբ:

Լազերի ճառագայթն իր ֆիզիկական բնույթով համանման է ռադիոալիքներին: Բայց, քանի որ լույսի ալիքում տատանման հաճախականությունը միլիոն անգամ բարձր է, ապա նույնքան անգամ ավելի են նրա հաղորդակցական հնարավորությունները: Այդ մասին շատ է գրվել, բայց լազերային կապի գաղափարը միայն վերջերս սկսեց ստանալ տեխնիկական իրողության գծեր: Այդ տեղի ունեցավ տեխնոլոգիական մի շարք խնդիրների՝ լուսատար նուրբ թելերի ստեղծման շնորհիվ, որոնցով լույսը տարածվում է այնպես, ինչպես էլեկտրական հոսանքը՝ լարերի միջով: Հաղորդվող ինֆորմացիայի ծավալի մեծացմամբ կարելի է, օրինակ, հեռուստատեսային պատկերները հաղորդել «կաբելային» գծով, հեռատեսային հեռախոսների ցանց ստեղծել: Նման կապի սիստեմները կարևոր են հաշվողական տեխնիկայի զարգացման համար:

Լույսի ալիքների լայն տարածականությունը զարմանալի հեռանկարներ է բացում ավտոմատացման և հաշվողական տեխնիկայի, ինֆորմացիայի պահպանման ու կապի, կինոյի ու հեռուստատեսության, նոր տեխնիկական լուծումների և տեխնոլոգիական արմատական վերափոխումների, էներգատար և աշխատատար գործողությունների կրճատման, հիվանդությունների դեմ պայքարի, մոլեկուլային քիմիայի ու կենսաբանության նորովի զարգացման համար:

Այդուհանդերձ, դեռևս լիովին չենք պատկերացնում լազերի ընձեռնելիք հիրավի անտեսանելի հնարավորությունները:

Կցանկանայինք պատմել սոսկ այն առանձին խոշոր խնդիրների մասին, որոնց լուծմամբ զբաղված են քվանտային էլեկտրոնիկայի մասնագետները:

Սկսենք ինֆորմացիայի մշակման օպտիկական մեթոդներից: Կյանքն ստիպում է մտածել առավել արագագործ հաշվողական մեքենաների մասին: Ստեղծված են ունիվերսալ հաշվիչ մեքենաներ՝ վայրկյանում միլիոնից ավելի գործողություն կատարելու ունակությամբ: Տրանզիստորների՝ կիսահաղորդչային ինտեգրալ սխեմաների կատարելագործմամբ, հավանաբար, գործողության արագությունը կմեծացվի հարյուր անգամ, կարող է հասնել նաև ավելի քան միլիոն գործողության: Լազերային սարքերը, ինչ խոսք, հնարավորություն կտան ստեղծելու ամենաարագագործ հաշվողական մեքենաների տարրեր՝ օժտված վայրկյանում ավելի քան միլիարդ գործողություններ կատարելու ունակությամբ:

Բայց գործող ժամանակակից մեքենաների «հիշողությունը» բարդ է, արտակարգ մեծածավալ, իսկ տարողությունը՝ համեմատաբար փոքր: Տակավին անհնար է պատշաճ արագությամբ մեքենային հանձնել և ստանալ տվյալները, հաշվելու ընթացքում գրառել արդյունքները, «հիշողությանը» հանձնել ծրագրված գործողություն: Եվ այստեղ օգնության է հասնում օպտիկան:

Ալիքների խիստ կարճության շնորհիվ լույսի օգնությամբ կարելի է գրառել բազմաքանակ ինֆորմացիա և ստեղծել վիթխարի տարողությամբ մշտական հիշողության կոտ սարքավորում: Օրինակ, օգտագործելով գոլոգրաֆիական մեթոդը, 10×10 սմ² չափեր ունեցող թիթեղի վրա հնարավոր է արձանագրել ավելի քան հարյուր միլիոն միավոր ինֆորմացիա— գրեթե միլիոն էջի չափով տպագրական տեքստ:

Ֆոտոթիթեղի վրա օպտիկական հատուկ սարքավորումների օգնությամբ կարելի է ավտոմատ կերպով գրառել ինֆորմացիան: Մենք ի վիճակի ենք յուրաքանչյուր էջ հաշվարկել վայրկյանի մեկ հարյուրհազարերորդական մասի արագությամբ: Եվ ջանադիր աշխատում ենք այդ ժամանակը հասցնել վայրկյանի մեկ տասմիլիոներորդական մասի: Շատ կարևոր է մեքենայի օպերատիվ հիշողությունը— ինֆորմացիան կարճ ժամկետում գրառելու ունակությունը: Դրա համար անհրաժեշտ են լուսազգաց այնպիսի նյութեր, որոնք այլ մշակման և երևակման կարիք չեն զգա: Ներկայումս մշակվում են նյութեր, որոնց շնորհիվ կարելի է արագ գրառել, ապա բազմիցս ջնջել ինֆորմացիան, ինչպես մագնիտոֆոնի ժապավենը:

Մինչև այժմ խոսքը վերաբերում էր օպտիկական հիշողության օգտագործմանը սովորական էլեկտրոնային մեքենաներում, որոնցում թվերը մշակվում են հաջորդաբար: Սակայն օպտիկան հնարավորություն է ընձեռում միանգամից կատարելու բազում թվերի գործողություններ: Այդ արվում է, այսպես կոչված՝ բազմականալ մեքենաներում: Այդ ուղղության զարգացումը հանգեցնում է հաշվողական տեխնիկայի արմատական կատարելագործման, բարձրարտադրողական օպտիկական հաշվողական մեքենաների ստեղծման. արդեն նախագծեր են մշակվում ստեղծելու վայրկյանում միլիարդավոր գործողություններ կատարող մեքենաներ:

Քվանտային էլեկտրոնիկայի մյուս բնագավառը՝ լազերային քիմիան, գտնվում է ամենանախնական զարգացման փուլում: Առաջին քայլերն այդ մարզում արվեցին ընդամենը երկու տարի առաջ, ֆիզիկական ինստիտուտի և

քիմիական ճյուղային ինստիտուտներից մեկի համատեղ աշխատանքի ընթացքում:

Դրանց հիմքում ընկած է քիմիական նյութերի ակտիվության խթանման գաղափարը, առանց դասական մեթոդների՝ սովորական տաքացման կամ արդեն հայտնի կատալիզատորների կիրառման, այլ լազերի օգնությամբ ատոմների կապերը թուլացնելու կամ ճեղքելու միջոցով: Բարդ մոլեկուլի յուրաքանչյուր ատոմ կամ ատոմների խումբ տատանողական մի բարդ համակարգ է՝ իրեն բնորոշ տատանման հաճախականությամբ: Եթե լազերի ճառագայթի հաճախականությունը համընկնում է այդ տատանումներից մեկի «ռեզոնանսին», ապա այն կարող է «ճոճել» կամ ճեղքել ատոմային որոշակի կապը, նույնիսկ ամենակայունը, ստեղծելով մոլեկուլների քիմիական ակտիվ «բեկորներ»: Նույնն է կատարվում նաև քիմիական նյութերի սովորական տաքացման ժամանակ: Սակայն մոլեկուլներում առաջին հերթին քայքայվում են առավել թույլ կապերը, մինչդեռ լազերը հնարավորություն է ընձեռում մոլեկուլները ճեղքելու նախապես ծրագրված տեղում: Այդ դեպքում ակտիվանում են ատոմների այն խմբերը, որոնք սովորական տաքացման ժամանակ երբեք չեն մտնում փոխազդեցության մեջ: Այսպիսով, լազերային կատալիզը կարելի է կիրառել համաձայն նախատեսված պլանի, շրջանցելով նյութերի քիմիական ակտիվության բնական սահմանները և ստանալ ատոմների նախատեսված համակցություն: Նման մեթոդով կարելի է քիմիական այնպիսի ռեակցիաներ կատարել, որոնք ոչ հեռու անցյալում անմիտ էին թվում: Իսկ գիտության առջև բացվում են զարմանահրաշ հորիզոններ— գործողությունները ատոմա-մոլեկուլային մակարդակով կառավարելու, քիմիաբիոլոգիական երևույթներին ակտիվ միջամտելու հնարավորություններ:

**ՍՍՀՄ ԳԱ** սպեկտրոսկոպիայի ինստիտուտի աշխատանքները ցույց են տալիս, որ լազերային քիմիան բացում է բոլորովին նոր հեռանկարներ, մասնավորապես, իզոտոպները քիմիական եղանակով տրոհելու հնարավորություն է ընձեռում, քանի որ նույն տարրի տարբեր իզոտոպները «մայր» մոլեկուլում ունեն տատանման տարբեր հաճախականություն:

Ինչ վերաբերում է «քվանտային» տեխնոլոգիային, ապա այն հույժ համապարփակ է. լազերի օգնությամբ կարելի է մետաղը հատել, զոդել, կոփել:

Ներկայումս մեր երկրում էլեկտրոնային արդյունաբերության ձեռնարկությունները տեխնոլոգիական նպատակներով պատրաստում են մի շարք հաստոցներ ու ավտոմատներ: Ժամացույցների արդյունաբերության մեջ լայնորեն օգտագործվում են սուտակե առանցքակալներ մշակող հաստոցները և պատրաստվում են մետաղալար պրկող ադամանդե ֆիլերներ: Այդ հաստոցների կիրառումը արդյունաբերության մեջ տնտեսական որոշակի էֆեկտ է տալիս, իսկ դետալների պատրաստման ճշգրտությունը զգալիորեն բարձրանում է: Արդյունաբերության ոլորտում ներդրվում են ածխաթթվային գազի մեջ լազեր կիրարկող հաստոցներ՝ կվարցային և ապակյա խողովակների զոդման, բյուրեղապակյա և ապակյա իրերի փորագրության համար: Լազերը կիրառվում է նաև պոլիգրաֆիական արդյունաբերության բնագավառում՝ տպագրական կլիշեներ պատրաստելու համար:

Նուրբ էլեկտրաշարժիչների և այլ արտադրանքի մեջ եռակցման լարեր ու դետալներ պատրաստելու համար մշակվել ու թողարկվում են ավտոմատներ: Լազերի կատարելագործմանը՝ հզորության և հուսալիության, օգտակար գործողության գործակցի մեծացմանը համեմատ արագ ընդլայնվում են դրանց կիրառման մասշտաբները, առաջադրվում խոշոր արտադրատեսակների արդյունաբերական վերամշակման, մետաղագործության հետ կապված խնդիրներ:

Լազերի օգտագործման հնարավորությունները, հիրավի, անսահմանափակ են տեխնոլոգիական այն գործողություններում, ուր պահանջվում է տեսողական հսկողություն: Նուրբ լոկատորի դեր կատարող լույսի ալիքն այստեղ զգալի արագությամբ ու ճշգրտությամբ հայտնաբերում է արտադրանքի թերությունը:

Անհրաժեշտ է հիշատակել նաև բժշկության մեջ լազերի կիրառման մասին: Մամուլում արդեն լայնորեն լուսաբանվել են աչքի ցանցի վիրահատումները: Սովետական բժիշկները, էլեկտրոնային արդյունաբերության աշխատողների ընկերակցությամբ, մշակում են գլաուկոմայի բուժման մեթոդները: Այժմ ինտենսիվորեն ծավալվում են կենդանի հյուսվածքների վրա լազերի ճառագայթման հզոր հոսանքով բիոքիմիական ներազդման ուսումնասիրությունները: Դրանք հիմք են ծառայում լազերի օգտագործումը բժշկության և կենսաբանության մեջ լայնորեն տարածելու, հիվանդությունների բուժման նոր մեթոդների հայտնաբերման համար: Լազերի կիրառման արդյունավետությունն ակնհայտ է ուժեղ արյունաթոր օրգանների վիրահատման գործում: Այժմ հետազոտություններ են սկսվում ներքին օրգանների «նուրբ» վիրահատությունների ժամանակ դրանք կիրառելու նպատակով:

«Известия», 1974, № 36.

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

*ՀԱՐԳԵԼԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

*Երևանի պետական համալսարանի հրատարակչությամբ 1972 թ. վերջերին լույս է տեսել* Հայ ժողովրդի պատմություն *(հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը) միհատորյակը (595 էջ):*

*Հայ ժողովրդի պատմության վերաբերյալ հրատարակվել և հրատարակվում են բազմաթիվ ուսումնասիրություններ, ձեռնարկներ, դասագրքեր, սակայն վաղուց հասունացել էր մեր ժողովրդի ամփոփ ու ամբողջական պատմությունը մեկ գրքով տալու անհրաժեշտությունը: Ներկա հատորը, ինչպես ասված է նախաբանում, նպատակ ունի բավարարելու ընթերցող լայն շրջանների՝ բանվորների, գյուղացիների, մտավորականների պահանջը: Հանրապետության մամուլի մի շարք օրգաններ գրվատական գրախոսականներ տպագրեցին նշված գրքի վերաբերյալ: Սակայն, ցավոք, դրանցում հարկ եղած չափով չեն բացահայտվել գրքի այն թերությունները ու սխալները, որոնք վերաբերում են III, IV բաժիններին (հեղինակներ՝ պրոֆեսորներ Մ. Ներսիսյան, Կ. Խուդավերդյան): Ընթերցողներին ճիշտ կողմնորոշելու նպատակով հարկ ենք համարում անել մի շարք դիտողություններ վերոհիշյալ բաժինների վերաբերյալ:*

*Մեր առաջին դիտողությունը գրքի կառուցվածքի և դրա առանձին բաժինների վերնագրերի մասին է: Սխալ է վերնագրված, օրինակ, երրորդ բաժինը՝* Հայաստանը կապիտալիզմի դարաշրջանում: *Այդ բաժնի պատմությունն ընդգրկվում է XIX դարի սկզբից, այսինքն՝ այն ժամանակից, երբ Հայաստանը դեռևս չէր թևակոխել կապիտալիզմի դարաշրջանը: Ինչպես հայտնի է, այն տեղի ունեցավ ավելի ուշ՝ դարի երկրորդ կեսին: Չէ՞ որ XIX դարի առաջին քառորդում Արևելյան Հայաստանն ընկած էր Պարսկաստանի, իսկ Արևմտյանը՝ Թուրքիայի ռազմաֆեոդալական տիրապետության տակ, որոնք շատ ուշ բռնեցին կապիտալիզմի զարգացման ուղին: Այդ բաժինը, թերևս, կարելի էր վերնագրել այսպես.* Հայաստանը ֆեոդալական հարաբերությունների քայքայման և կապիտալիստական հարաբերությունների զարգացման ժամանակաշրջանում:

*Այնուհետև, որքան էլ տարօրինակ թվա, դաշնակների տիրապետության ժամանակաշրջանը (1918—1920 թթ.) շարադրված է* Հայաստանը Սովետական Սոցիալիստական Հանրապետություն *վերնագրի տակ: Սա, իհարկե, ակներև թյուրիմացություն է, որից խուսափելու համար 1917—1920 թթ. պատմությունը պետք է շարադրվեր առանձին բաժնում՝* Հոկտեմբերյան հեղափոխությունը և սովետական իշխանության հաստատումը Հայաստանում *վերնագրով, 1920 թ. նոյեմբերից հետո եկած ժամանակաշրջանի համար թողնելով չորրորդ բաժնի վերնագիրը: Համոզիչ չէ նաև հատորի վերջին գլխի վերնագիրը՝* Սովետական Հայաստանն այսօր, *քանի որ այն սկսվում է 1946 թվականից:*

*Գրքում չկա միասնական պարբերացում. հայ ժողովրդի պատմությունը մինչև XIX դարը վերնագրված է* Հին դարեր, Միջին դարեր, *փոխանակ բաժանելու նախնադարյան, ստրկատիրական և ֆեոդալական հասարակական-տնտեսական ֆորմացիաների. մի բան, որը մարքս-լենինյան պատմագիտության մեթոդոլոգիական հանրահայտ պահանջն է:*

*Ճիշտ մոտեցում հանդես չի բերվել XIX դարի ամբողջ պատմությունը արհեստականորեն բաժանելով երկու մասի՝ արևմտյան և արևելյան, ընդ որում՝ դարի առաջին կեսը տրված է արևելահայության, իսկ երկրորդը՝ արևմտահայության: Այսպես, օրինակ, XIX դարի երկրորդ կեսի պատմությունը շարադրված է մի գլխում՝* Արևմտահայության վիճակը XIX դարի երկրորդ կեսին: *Այդ բաժնի նման սխալ կառուցվածքի պատճառով փաստորեն անտեսվել է արևելահայության (և ամբողջ հայ ժողովրդի) XIX դարի երկրորդ կեսի չափազանց հարուստ ու բովանդակալից պատմությունը:*

*Բազմաթիվ կարևոր թեմաների, ինչպես՝ Արևելյան Հայաստանում ցարիզմի ազգային-գաղութային քաղաքականության, XIX դարի գյուղացիական շարժումների, Ղրիմի պատերազմի Կովկասյան ռազմաճակատի և հայերի մասնակցության, 1870 թ. գյուղացիական ռեֆորմի ու Արևելյան Հայաստանում կապիտալիզմի զարգացման, արևելահայ ազատագրական խմբակ-*

անկենդան, աղքատիկ լեզվով: Առհասարակ, գրքի այդ բաժինը չի փայլում վերլուծությամբ և տոգորված է նկարագրական ու էմպիրիկ ոճով:

Գրքում սպրդել են նաև լեզվական սխալներ և անփութություններ: Օրինակ, 539 էջում կարդում ենք. «Սովետական Հայաստանը սկսեց երկրին և արտասահմանյան շատ պետությունների մատակարարել քիմիական կարևոր մթերքներ (ընդգծ.— Խմբ.)՝ սինթետիկ կաուչուկ, քիմիական մանրաթել, սինթետիկ խեժ, ավտոդողեր, ռետինատեխնիկական առարկաներ, ազոտային պարարտանյութեր և այլն»: Առաջին անգամ ենք կարդում, որ վերոհիշյալ արտադրանքները կոչվում են նաև մթերքներ:

Հեղինակը գրում է. «Շարք մտավ Գյումուշի հիդրոէլեկտրակայանը» (էջ 530), «...շարք մտան մոտ 300 արդյունաբերական նոր ձեռնարկություններ ու արտադրական խոշոր տեղամասեր» (536—537): «Այդ կառույցների շարք մտնելը...» (541): Հնարավոր չէ՞ այդ անհարիր «շարք մտան»-ի փոխարեն գրել՝ գործարկվեցին ու վերջ: 532 էջում ասված է, թե՝ «Կառավարության որոշմամբ բարձրացվեցին գյուղատնտեսական մթերքների գները»: Մինչդեռ, պետք է լինի՝ մթերքների գնման գները: Ծայրահեղ և լեզվական սխալ է՝ ասել. «...հայ ժողովուրդը հավանություն տվեց և պաշտպանեց սովետական կառավարության արտաքին քաղաքականությունը, որի հիմքում ընկած է... ազատագրական պայքարին աջակցելու քաղաքականությունը» 543—544): Ճիշտը կլիներ՝ հավանություն տվեց՝ քաղաքականությանը, պաշտպանեց քաղաքականությունը: Մի՞թե տրամաբանական է ասել, թե քաղաքականության հիմքում ընկած է քաղաքականությունը: Նման խճողված լեզվի նմուշ է և հետևյալ պարբերությունը. «...բուհերում կազմակերպվեց նոր մասնագիտությունների գծով բարձրորակ մասնագետներ պատրաստելու գործը: 1950—60-ական թթ. ստեղծվեցին նոր ֆակուլտետներ... որոնք մասնագետներ են պատրաստում ավելի քան 50 մասնագիտությունների գծով...» (546): Եվ այս ամենը հինգ տողում, որը վատ է հնչում:

Խմբագրությանն ուղղված նամակում ճիշտ է նշված, որ եթե գրքի հեղինակային կոլեկտիվը չարհամարհեր համալսարանի հայ ժողովրդի պատմության ամբիոնի կարծիքը, ամենայն հավանականությամբ հնարավոր կլիներ զերծ մնալ վկայակոչված թերացումների մեծ մասից:

Ի դեպ, նշենք, որ մամուլի մի շարք օրգաններում հրապարակված գրախոսություններում կան դիտողություններ, որոնք համընկնում են սույն նամակի հեղինակի նշածներին (տե՛ս Վ. Դիլոյան, Հայ ժողովրդի պատմություն, «Բանբեր Երևանի համալսարանի», 1973 թ., № 2, Հ. Ղազարյան, Մասսայական ընթերցողի համար, «Գրական թերթ», 1973 թ., 6 հուլիսի):

---



# ՂԵԿԱՎԱՐ ԿԱԴՐԵՐԻ ՄԱՐՔՍԻՍՏԱԿԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՈՒՑՈՒՄԸ

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն վերջերս քննարկեց հանրապետության ղեկավար կադրերի մարքսիստական-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության հարցը: Նշվեց, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները, կենսագործելով կուսակցության XXIV համագումարի և «Տաշքենդի քաղաքային կուսակցական կազմակերպությունում ղեկավար կադրերի մարքսիստական-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումները, զգալի աշխատանք են կատարում ղեկավար կադրերի մարքս-լենինյան ուսուցումը և տնտեսագիտական կրթությունը բարելավելու համար: Դրա շնորհիվ աճել է ղեկավար աշխատողների հետաքրքրասիրությունը մարքս-լենինյան տեսության, տնտեսական հրատապ պրոբլեմների և ՍՄԿԿ քաղաքականության նկատմամբ: Նրանք հնարավորություն ունեն հարստացնելու իրենց տեսական ու տնտեսական գիտելիքները հանրապետության մարքսիզմ-լենինիզմի երկու համալսարաններում, կուսակցական-տնտեսական և սովետական ակտիվի 45 դպրոցներում ու 12 սեմինարներում, տնտեսական գիտելիքների 81 ժողովրդական համալսարաններում: Հաճախակի ու լավ են անցկացվում տեսական, գիտա-պրակտիկ և տնտեսագիտական կոնֆերանսները:

Կենտկոմի բյուրոն միաժամանակ նշեց, որ կադրերի մարքս-լենինյան ուսուցման և տնտեսագիտական կրթության մակարդակը դեռևս լիովին չի համապատասխանում ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին: Մի շարք կուսկազմակերպություններ մակերեսային մոտեցում են ցուցաբերում ղեկավար կադրերի ուսուցման նկատմամբ, այն չեն շաղկապում կոմունիստական շինարարության խնդիրների և պրակտիկայի հետ: Շատ դեպքերում քաղաքական ուսուցումը կրում է նեղ լուսավորչական բնույթ և անբավարար է ազդում ղեկավարների գաղափարական աճի, նրանց մեջ քաղաքական ու բարոյական վեհ հատկանիշների ձևավորման ընթացքի վրա: Առանձին քաղաքային ու շրջանային կոմիտեներում չկա գիտական կոմպլեքսային մոտեցում կադրերի գաղափարական-քաղաքական դաստիարակության պրոբլեմների հանդեպ:

Մինիստրությունների ու գերատեսչությունների ոչ քիչ աշխատողներ անհրաժեշտ լրջություն չեն ցուցաբերում ուսուցման հանդեպ ղեկավարման առաջավոր մեթոդների ու փորձի յուրացմանը, վատ են զբաղվում ինքնակրթությամբ, մակերեսորեն են ուսումնասիրում մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումները:

Անբավարար է ղեկավար կադրերի ուսուցումը ՀԿԿ Երևանի քաղկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանում: Հանրապետության մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավար աշխատողներից ոչ մեկը չկա նրա ունկնդիրների թվում: Ղեկավար աշխատողների որոշ մասը, թաքնվելով անհատական պլանով ինքնուրույն ուսուցման քողի տակ, օգտվելով կուսկազմակերպությունների թույլ հսկողությունից, փաստորեն ինքնակամ կտրվել է քաղաքական կրթությունից:

Լուրջ թերություններ կան լուսավորության, գիտության, գրականության և արվեստի աշխատողների քաղաքական ուսուցման կազմակերպման գործում:

Մի շարք քաղկոմ-շրջկոմներ իրենց գործունեության մեջ անբավարար են հաշվի առնում կադրերի նկատմամբ ժամանակակից պահանջները կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականության կիրառման, գիտատեխնիկական առաջընթացի, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման ասպարեզում, կոնկրետ չեն զբաղվում կադրերի տնտեսագիտական կրթության կազմակերպմամբ:

Շատ ղեկավարների կողմից տնտեսության ոչ գրագետ վարումը բացատրվում է նաև նրանով, որ նրանք չունեն տնտեսագիտական անհրաժեշտ պատրաստություն և չեն կարողանում վերլուծել արտադրության գործերի վիճակը, ընդունել այն բարելավելու հիմնավորված որոշումներ:

Կենտկոմի բյուրոն դատապարտեց ղեկավար կադրերի բարոյական և ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում տարվող անբավարար աշխատանքը: Զբաղվելով իրենց գաղափարական-տեսական մակարդակի բարձրացմամբ, չունենալով քաղաքական անհրաժեշտ համոզվածություն և բարոյական կայունություն, առանձին ղեկավարներ խախտում են կուսակցական կյանքի նորմերը, բռնում են չարաշահումների և հափշտակումների ուղին:

ՀԿԿ Կենտկոմը թվարկած թերությունները բացատրեց նրանով, որ ղեկավար կադրերի քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման հարցերը չեն դարձել քաղկոմների, շրջկոմների և սկզբնական կուսկազմակերպությունների մշտական հոգածության առարկա: Նրանցից շատերը գործնական միջոցառումներ չեն իրականացնում ղեկավար աշխատողների մարքսիստական-լենինյան ուսուցման, տնտեսագիտական կրթության, բարոյական ու ինտերնացիոնալ դաստիարակության հետագա բարելավման համար:

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն գործնական միջոցառումներ մշակեց բացահայտված թերությունները վերացնելու, ղեկավար կադրերի մարքսիստական-լենինյան ուսուցումը և տնտեսագիտական կրթությունը արմատապես բարելավելու համար: Բյուրոն պահանջեց քաղկոմներից, շրջկոմներից և սկզբնական կուսկազմակերպություններից կադրերի հետ տարվող աշխատանքը ենթարկել կուսակցության քաղաքական գծի, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կենսագործման շահերին, մոբիլիզացնել աշխատավորների ուժերը իններորդ հնգամյակի պլանը հաջողությամբ կատարելու համար: Կադրերի մարքսիստական-լենինյան կրթության մեջ կուսկազմակերպությունների գլխավոր խնդիրը համարվեց նրա տեսական-գաղափարական մակարդակի բարձրացումը, կուսակցության մշակած տեսական ընդհանրացումների, արդի ժամանակաշրջանի, կուսակցության քաղաքականության հիմնական պրոբլեմների և դրանց պրակտիկ իրականացման ուղիների ուսումնասիրության կազմակերպումը:

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Կ. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):

Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 03894 Պատվեր 581 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 14.200 Գինը 25 կ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 5/IV-1974 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*



# ՁԵԶ ՀԱՄԱՐ, ԸՆԹԵՐՑՈՂՆԵ՛Ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Ընտիր երկեր: *Երեք հատորով: Հատոր 2: «Հայաստան» հրատ., 1973:*

ՄԱՐՔՍ Կ. և ԷՆԳԵԼՍ Ֆ.— Կոմունիստական կուսակցության մանիֆեստը: *«Հայաստան» հրատ., 1973:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Աշխատանքի գիտական կազմակերպման մասին: *«Հայաստան» հրատ., 1973:*

*Ներկա ժողովածուում զետեղված աշխատություններում կամ քաղվածքներում բացահայտվում են աշխատանքի գիտական կազմակերպման հիմնական խնդիրները և դրա կատարելագործման հիմնական ուղղությունները:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Լև Տոլստոյը որպես ռուսական հեղափոխության հայելի: *Մ., «Քաղհրատ», 1973, 24 էջ (ռուսերեն):*

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումը կուսակցությանը, սովետական ժողովրդին: *Եր., ՀԿԿ Կենտկոմի հրատ., 1974, 12 էջ:*

«Պրավդա»-ն Հայաստանի մասին *(ժողովածու): «Հայաստան» հրատ., 1973 (ռուսերեն):*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմին առընթեր կուսպատմության ինստիտուտի և ՍՄԿԿ -ԿԿ առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի մասնաճյուղի հրատարակությամբ տպագրված ներկա ժողովածուն ընդգրկում է 1913—1973 թթ. նյութերը. գիրքը սկսվում է Վ. Ի. Լենինի «Պրավդայի» տասնամյա տարեդարձի առթիվ հոդվածով:*

ԳՈՐՈԴԵՑԿԻՅ Ե. Ն. և ՇԱՐԱՊՈՎ ՅՈՒ. Պ.— Յակով Միխայլովիչ Սվերդլով: *Ակնարկներ կյանքի և գործունեության վերաբերյալ: Սվերդլովսկ, 1973:*

ՍՄԿԿ պատմության քրեստոմատիա: *Մասն 3-րդ: Պրակ 1-ին: 1926—1958 թթ.: Դասագիրք բուհերի ուսանողների համար: Մ.,* «Высшая школа» *հրատ., 1973:*

Գործողություն «Իսկրա»—Լենինգրադը 1941—1945 թթ.: *(Լենհրատ) 1973: Կազմողներ՝ Բայցով Ս. Մ. և Բորշչև Ս. Ն.:*

*Ժողովածուում զետեղված են՝ Լենինգրադի շրջափակումը ճեղքելու մասնակիցների հուշերը, ակնարկները, բանաստեղծությունները, քաղվածքներ օրագրերից, փաստաթղթեր և այլ նյութեր:*

ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ Վ. Հ.— Տիեզերագիտության փիլիսոփայական հարցերը: *Զեկուցումների, ելույթների և հոդվածների հավաքածու: Եր., ԳԱ հրատ., 1973 (ռուսերեն):*

ԼԵՈ— Երկերի ժողովածու: *Տասը հատորով: Երրորդ հատոր. գիրք երկրորդ: Եր., «Հայաստան» հրատ., 1973: 640 էջ:*

*Այս հատորն ընդգրկում է XVII դարի հայ ազատագրական շարժումները՝ ուղղված թուրք-պարսկական լծի դեմ:*

ԱՃԱՌՅԱՆ ՀՐ.— Հայերեն արմատական բառարան: *Բ հատոր: Ե—Կ, Եր., Պետհամալս. հրատ., 1973:*

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ.— Լ. Ա. Օրբելի— կյանքը և գիտական-մանկավարժական գործունեությունը: *Եր., ԳԱ հրատ., 1973:*

*Գրքույկում ներկայացված է կենսաբանական գիտությունների ամենակարկառուն դեմքերից մեկի՝ ակադեմիկոս Լևոն Աբգարի Օրբելու (1882—1958) կյանքն ու գիտական գործունեությունը:*

ԽԱՉԵՐՅԱՆ Լ. Գ.— Գլաձորի համալսարանը հայ մանկավարժական մտքի զարգացման մեջ: *(ԺԳ—ԺԴ դարերում): Եր., «Լույս» հրատ., 1973:*

*Մենագրության մեջ պատմագիտական աշխատությունների, ձեռագրերի, արխիվային նյութերի հիման վրա հեղինակը բացահայտել է Գլաձորի համալսարանի խոշոր դերը հայ մանկավարժության զարգացման մարզում:*

Գինը՝ 25 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՎՏՈՄԱՏ ԶՈԴՈՒՄ

Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի կոլեկտիվը Կիևի Ե. Օ. Պատոնի անվան ինստիտուտի էլեկտրազոդման մասնագետների հետ միասին մշակել է խոշոր էլեկտրաշարժիչների, ռոտորի կըմախքի ավտոմատ զոդման նոր եղանակ։ Մշակվել է տրանսֆորմատորների յուղային ռադիատորների նոր կոնստրուկցիա ու դրանց պատրաստման նոր տեխնոլոգիա, որի շնորհիվ այժմ զգալիորեն կըբարձրանա աշխատանքի արտադրողականությունը։ Նորույթի տարեկան տնտեսական արդյունավետությունը մոտ 800 հազար ռուբլի է։

## ՌԵԱԿՏԻՎ ԲԻՊԼԱՆ

Լեհական և սովետական գիտնականներն ստեղծել են «M—15» գյուղատնտեսական ինքնաթիռը, որը փորձարկվում է Լեհաստանի Մելեցկի ավիագործարանում։ Այս ռեակտիվ բիպլանը առաջինն է աշխարհում, որն իր տեխնիկական հատկանիշներով գերազանցում է ժամանակակից համարյա բոլոր գյուղատնտեսական ինքնաթիռները։ Ինքնաթիռի արագությունը ժամում 90—300 կմ է, կշիռն առանց բեռի՝ 2400 կգ։ Պարարտանյութը տարածելիս, մշակվող հողակտորի լայնությունը հասնում է 60 մետրի։ «AH—2» ինքնաթիռին փոխարինելու համար պատրաստված առաջին սերիայի 300 ինքնաթիռների մեծ մասը կհատկացվի Սովետական Միությանը։

## ՎՏԱՆԳԱԶԴԱՐԱՐ

Չեխական «Կովո» միավորումն ստեղծել է շմոլ գազի գրպանի ինքնատիպ ինդիկատոր, որը ո՛չ միայն հետևում է շրջապատի մթնոլորտի ածխածնի օքսիդի դոզային, այլև ձայնային ազդանշան տալիս, երբ շմոլ գազի պարունակությունն սկսում է անցնել մարդու համար անվտանգ նորման։ Որպես վտանգի անձնական ազդարար, այդ դոզիմետրը նախատեսված է այն մարդկանց համար, ովքեր աշխատում են հանքահորերում, մետալուրգիական և գազային գործարանների ցեխերում, գարաժներում ու կաթսայատներում, ուր կարող է առաջանալ ածխածնի օքսիդի վտանգավոր կենտրոնացում։

## ՖԻԶԻԿԱՆ ԽՈՀԱՆՈՑՈՒՄ

Էլեկտրամագնիսային ինդուկցիայի մեթոդով ԱՄՆ-ում թողարկվել է խոհանոցային նոր էլեկտրասալիկ։ Սալիկի անցքագլխիկները փոխարինված են կոճերով, որոնց լարագալարներով բաց է թողնվում 1800 հերց հաճախականությամբ փոփոխական հոսանք։ Ստեղծված փոփոխական մագնիսական դաշտը կաթսայի պատերին մակարբերում է էլեկտրական հոսանք, որը տաքացնում է կաթսան ու դրա պարունակությունը։ Ինդուկցիոն սալիկը ծախսում է ավելի քիչ էներգիա, քան սովորական էլեկտրասալիկը։ Ուտելիքն ավելի արագ է պատրաստվում։

## ԿԱՂՆՈՒՑ 10 ԱՆԳԱՄ ԱՄՈՒՐ

Շվեդիայում ստեղծել են նոր շինանյութ՝ «փայտեպլաստ», որը զուգակցում է փայտի և պլաստմասսայի հատկությունները։ Դրա ստացման համար փայտանյութը և պոլիքլորվինիլային մասսան փոշիացնում են, խնամքով խառնում և խառնուրդը դնում փայտեպլաստ պատրաստող մեքենայի մեջ։ «Փայտեպլաստն» իր ամրությամբ տասն անգամ գերազանցում է կաղնուն, ջրադիմացկուն է և հեշտ մշակելի։ Փայտեպլաստից կպատրաստվեն պարկետ, աթոռներ և այլ իրեր։

## ՏԱՎԱՐԻ ՄԻՍ... ՁԿՆԻՑ

Ձկնեղենով հարուստ, բայց մսով աղքատ Պերուի կառավարության պատվերով ԳՖՀ-ում մշակվել է ձկնից միս ստանալու տեխնոլոգիան։ Այն համով ու գույնով չի տարբերվում տավարի մսից։ Պերուի քիմիական կոլեջի ղեկավարը գտնում է, որ տավարի մսի նոր փոխարինիչը պարունակում է ավելի շատ սպիտակուց, քան բնական միսը։